Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 ՍԵՊՏԵՄԲԵՐ · 1964
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Лениняи угиов» теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն



---

# Содержание





# ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Կոմունիստական պարտիան ու սովետական կառավարությունը միշտ էլ իրենց վեհ նպատակն են համարել ըստ ամենայնի զարգացնել սոցիալիստական էկոնոմիկան, որի հիման վրա բարձրացնել աշխատավորների կենսամակարդակն ու կուլտուրան, բավարարել նրանց հոգևոր պահանջմունքները:

Դեռևս 1918 թվականին, Ժողովրդական տնտեսության խորհուրդների առաջին համագումարում արտասանած իր ճառում Վ. Ի. Լենինը նշում էր, որ **միայն սոցիալիզմը հնարավորություն կտա պրոդուկտների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն արմատավորել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել բոլոր աշխատավորների կյանքն առավել հեշտ դարձնելու նպատակին, այնպես անել, որ այն լիովին նպաստի աշխատավորության բարեկեցությանը:** Իլյիչի այս միտքը սեղմ, բայց խորիմաստ շարադրված է մեր պարտիայի ծրագրում, որտեղ գրված է. «ՍՄԿՊ-ն դնում է համաշխարհային պատմական նշանակություն ունեցող խնդիր՝ **Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ**», հայրենիքի բոլոր հարստություններն ու միջոցները ի սպաս դնել՝ «ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության» պարտիայի լոզունգի իրագործմանը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարից անցել է մի քանի տարի, բայց արդեն մեծ գործեր են կատարված պարտիայի ծրագրի իրագործման ուղղությամբ: Ուստի և միանգամայն օրինաչափ էր, երբ ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիան լսեց և քննարկեց ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի՝ «Ժողովրդի բարեկեցության բարձրացման բնագավառում ՍՄԿՊ ծրագրի իրագործման միջոցառումների մասին» հանգամանալից զեկուցումը:

Իր զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ յոթնամյակի անցած հինգ տարում մեր երկրի արդյունաբերական արտադրանքը աճել է 58 տոկոսով, պլանով նախատեսված 51 տոկոսի փոխարեն: Որքան էլ չարախոսեն բուրժուական քաղաքագետները մեր տնտեսական պլանների անիրագործելիության մասին, այնուամենայնիվ, կյանքը ցույց է տալիս, որ սովետական մարդիկ իրենց ավյունով ու հերոսական գործերով, բարձր տեմպով զարգացնում են երկրի էկոնոմիկան: Այսպես, վերջին վեց տարիներին Սովետական Միությունում արդյունաբերական արտադրանքի աճի տարեկան միջին տեմպը կազմել է 9,7 տոկոս, իսկ Ամերի-

կայի Միացյալ Նահանգներում՝ 3,6 տոկոս: ՍՍՌՄ-ում առավել արագ տեմպերով են զարգանում մետաղամշակությունն ու մեքենաշինությունը, պողպատի ձուլումը, նավթի ու գազի արդյունահանումը: Յոթնամյակի անցած հինգ ու կես տարում ՍՍՌՄ-ում արտադրվել է մոտ քառասուն միլիարդ ռուբլու արտապլանային արդյունաբերական արտադրանք: Սովետական մարդկանց մեծ ուրախություն պատճառեց ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունն այն մասին, որ Սովետական Միությունում արդյունաբերական արտադրանքի 1964 թվականի առաջին կիսամյակի առաջադրանքը գերակատարված է. այն անցյալ տարվա համեմատությամբ աճել է յոթ ու կես տոկոսով: Ընդսմին քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելացել է 14, էլեկտրաէներգիայինը՝ 11, սև ու գունավոր մետալուրգիայինը՝ 8, շինանյութերի արտադրությունը՝ 10 տոկոսով:

Մեր երկրի ինդուստրիան ներկայումս մեկ շաբաթում տալիս է այնքան արտադրանք, որքան արտադրվում էր նախառևոլյուցիոն Ռուսաստանում ամբողջ տարում: Տասը տարի առաջ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը կազմում էր ԱՄՆ-ի արտադրանքի միայն 33 տոկոսը, 1957 թվականին՝ 47 տոկոսը, իսկ անցյալ տարի մոտ 65 տոկոսը:

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության գործադրած միջոցառումների շնորհիվ որոշակի հաջողություններ կան գյուղատնտեսության զարգացման և գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում: Ճիշտ է, անցյալ տարի անբարենպաստ եղանակները որոշ հոգսեր պատճառեցին մեզ, բայց մի քանի տարիների համեմատական տվյալներն ասում են այն մասին, որ վերելքի ուղիով է գնում նաև մեր երկրի գյուղատնտեսությունը: Այսպես, վերջին երկու հնգամյակներում ՍՍՌՄ-ում հացահատիկի արտադրությունն աճել է 77 տոկոսով, մսինը՝ ավելի քան երկու անգամ, կաթինը՝ 76, յուղինը՝ 82 տոկոսով, շաքարինը՝ մոտ 2,3 անգամ: Բայց այսօրվա վիճակով մեր երկրի գյուղատնտեսությունը դեռևս լիովի չի բավարարում արդյունաբերության հումքի և բնակչության գյուղատնտեսական մթերքների պահանջմունքը: Դրա համար էլ պարտիան վերցրեց գյուղատնտեսության ինտենսիվացման կուրս, ձեռնարկեց մի շարք միջոցառումներ, որոնք հնարավորություն կտան ստանալ կայուն բերք և կգալիորեն ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրանքը:

Ընթանալով Վ. Ի. Լենինի նշած ուղիով, սովետական ժողովուրդը հարազատ պարտիայի ղեկավարությամբ կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում հաջողությամբ է լուծում իր առաջ կանգնած խնդիրները: Այդ միայն ու միայն Սովետական Միության բանվորների, գյուղացիների և մտավորականության աշխատանքային սխրանքների շնորհիվ է, որ հաջողությամբ են կատարվում յոթնամյակի առաջադրանքները:

Յոթնամյակի հաղթական երթում Միութենական եղբայրական ռեսպուբլիկաների հետ համընթաց է քայլում նաև Սովետական Հայաստանը: Վերջին հինգ տարում ռեսպուբլիկայում կառուցվել են մոտ հարյուր ութսուն արդյունաբերական ձեռնարկություններ և արտադրամասեր: Ռեսպուբլիկայի արդյունաբերական համախառն արտադրանքը 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 1,6 անգամ, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ 2,8 անգամ: Ավելի արագ թափով են զարգանում ծանր ինդուստրիայի հիմնական ճյուղերը: Հինգ տարում մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքն



ավելացել է 2,7 անգամ, քիմիական արդյունաբերության արտադրանքը՝ 2,1 անգամ: Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի աճի հետ մեծ փոփոխություն է տեղի ունեցել նրա ասորտիմենտում և որակական կազմում: Միայն վերջին հինգ տարում յուրացվել ու հայրենիքին տրվում է մոտ հինգ հարյուր տեսակի նոր արտադրանք:

Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքով ստեղծված հզոր ու բազմակողմանիորեն զարգացած էկոնոմիկան, գիտության ու կուլտուրայի աճը հնարավորություն են տալիս բարձրացնելու ամբողջ բնակչության՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկեցությունը: Չէ՛ որ որքան հարուստ և հզոր է երկիրը, այնքան բարեկեցիկ ու կուլտուրական կլինի նրա ժողովրդի կյանքը:

Սոցիալիզմի ժամանակաշրջանում ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հիմնական բազան ու պայմանը հանդիսանում է ազգային եկամտի աճը: Միայն վերջին տասը տարում ՍՍՌՄ-ի ազգային եկամուտը աճել է 2,3 անգամ: Կապիտալիստական հասարակարգում ազգային եկամտի առյուծի բաժինը հասնում է մի խումբ շահագործողների, պորտաբույծ դասակարգին, իսկ մեզ մոտ՝ այդ եկամտի իսկական ստեղծողներին, ազնիվ ու բարեխիղճ աշխատանքով երկրի հարստությունը բազմապատկողներին: Սովետական Միության ազգային եկամտի աճի հիման վրա աշխատավորների ռեալ եկամուտները (մեկ աշխատողի հաշվով) տասնամյակում ավելացել են 61 տոկոսով: Երկրի աշխատավորների եկամտի աճի շնորհիվ անշեղորեն բարձրանում է բնակչության գնողունակությունը:

Սոցիալիզմի առավելություններից մեկն էլ այն է, որ ժողովրդի բարեկեցության էական ցուցանիշները հանդիսանում են սպառման հանրային ֆոնդերը: Մեր երկրում այդ ֆոնդերի հաշվին ապահովվում են սովետական մարդկանց ձրի ուսուցումն ու առողջապահությունը, ավելի քան 26 միլիոն մարդ ստանում են կենսաթոշակ, բոլոր բանվորներին ու ծառայողներին վճարվում է արձակուրդային և ժամանակավոր անաշխատունակության նպաստներ, 12 միլիոն մարդ հանգստանում ու բուժվում են սանատորիաներում, հանգստյան տներում ու պիոներական ճամբարներում: Երկրի ժողովրդական տնտեսության մեջ յուրաքանչյուր աշխատողի վրա անցյալ տարի (աշխատավարձից և կոլտնտեսությունից ստացած եկամուտներից դուրս) հանրային ֆոնդից ծախսվել է միջին հաշվով 357 ռուբլի:

Ժողովրդի բարեկեցության բարձրացման մյուս կարևորագույն ցուցանիշը աշխատավորական լայն զանգվածներին բնակարանով ապահովելն է: Բավական է նշել, որ միայն վերջին տասը տարում բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների տնաշինարարության համար ծախսվել է **վաթսունհինգ** միլիարդ ռուբլի: Այդ նույն ժամանակաշրջանում 108 միլիոն սովետական քաղաքացիներ տեղավորվել են նորակառույց տներում, կամ բարելավել իրենց բնակարանային պայմանները:

Կոմունիստական հասարակարգի կառուցման ներկա փուլում պարտիան իր ծրագրային խնդիրներից մեկն է համարում՝ սիստեմատիկ և հետևողականորեն կարգավորել ու բարձրացնել բանվորների և ծառայողների աշխատավարձը, որը վճռական դեր է խաղում աշխատավորների կենսամակարդակը բարձրացնելու գործում: Այդ նկատառումով էլ կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը վերջին տարիներս մի շարք միջոցառումներ իրականացրին ա-

ռաջին հերթին կարգավորելու և բարձրացնելու արտադրության ոլորտում զբաղվածների աշխատավարձը: Արդեն աշխատանքի վարձատրության նոր պայմանների են փոխադրված արդյունաբերության ու շինարարության մեջ, տրանսպորտում, գյուղատնտեսության պետական ձեռնարկություններում աշխատող բանվորները, ինժեներա-տեխնիկական անձնակազմն ու ծառայողները: Դրա շնորհիվ ժողովրդական տնտեսության այդ ճյուղերում վերջին հնգամյակում միջին աշխատավարձը աճել է 13—25 տոկոսով, անցյալում եղած 27—35 ռուբլի նվազագույն աշխատավարձը հասել է 40—45 ռուբլու:

Այժմ, երբ մեր երկրի էկոնոմիկան, անցյալի համեմատությամբ շատ առաջ է անցել ու շարունակում է կարգանալ բարձր թափով, հնարավորություն է ստեղծված բարձրացնելու նաև սպառման ոլորտի աշխատողների վարձատրությունը: ՍՍՌՄ Գերագույն սովետի չորրորդ սեսիան որոշեց՝ ՍՄԿՊ ծրագրի առաջադրած խնդիրները իրականացնելու նպատակով բարձրացնել լուսավորության, առողջապահության, բնակարանային-կոմունալ տնտեսության, առևտրի ու հասարակական սննդի և բնակչությանը անմիջականորեն սպասարկող ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողների աշխատավարձը: Ընդհանուր առմամբ սպասարկման ոլորտում աշխատողների աշխատավարձը կավելանա միջին հաշվով 21 տոկոսով:

Նոր օրենքի համաձայն ՍՍՌՄ-ում լուսավորության բնագավառում աշխատողների աշխատավարձը միջին հաշվով բարձրանալու է 25 տոկոսով, իսկ առանձին կատեգորիաներինը՝ (նախադպրոցական հիմնարկների դաստիարակներինը) 40 տոկոսով: Առևտրի բնագավառի աշխատողների աշխատավարձը կբարձրանա 15 տոկոսով, հասարակական սննդի բնագավառի աշխատողներինը՝ 25 տոկոսով: Նկատելիորեն բարձրանում է առողջապահության, ֆիզկուլտուրայի ու սպորտի, սոցիալական ապահովության բնագավառում աշխատողների աշխատավարձը՝ միջինը 25 տոկոսով: Աշխատանքի վարձատրման նոր պայմանների են փոխադրվում ավելի քան տասնութ միլիոն մարդ: Միայն լուսավորության և կուլտուրայի հիմնարկների աշխատողների աշխատավարձի հավելման ընդհանուր գումարը ամբողջ երկրում տարեկան կկազմի ավելի քան մեկ միլիարդ ռուբլի, որը մոտավորապես այնքան է, որքան աշխատավարձ է վճարվել 1940 թվականին լուսավորության բնագավառի բոլոր աշխատողներին: Առողջապահության, ֆիզկուլտուրայի ու սոցիալական ապահովության բնագավառում աշխատողների աշխատավարձի հավելումը տարեկան կկազմի 650 միլիոն ռուբլի, իսկ առևտրի և հասարակական սննդի աշխատողներինը՝ 550 միլիոն ռուբլի:

Այսպիսով, մեր երկրում անշեղորեն կենսագործվում է աշխատավարձի և առաջին հերթին, ցածր աշխատավարձ ստացող բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացման կուրսը:

Կոմունիստական պարտիան իր սրբազան պարտականություններից մեկը
համարում է գյուղում արտադրողական ուժերի կարգացման հիման վրա կատա-
րելագործել ներկոլտնտեսային հարաբերությունները՝ աշխատանքի նորմավո-
րումը, կազմակերպումն ու վարձատրությունը մոտեցնել պետական ձեռնարկու-
թյուններում գոյություն ունեցող ձևերին ու մակարդակին: Դրա շնորհիվ «կոլ-
տնտեսականների աշխատանքի վարձատրությունը կլինի այնպես,— ասված է
պարտիայի ծրագրում,— ինչպես համաժողովրդական ձեռնարկություններում,
նրանք կօգտվեն սոցիալական ապահովության բոլոր տեսակներից (կենսաթո-



շակներ, արձակուրդներ և այլն) կոլտնտեսային ու պետական միջոցների հաշվին»:

Սոցիալ-քաղաքական հսկայական նշանակություն ունի ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիայում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ բարձրացված կոլտնտեսականներին կենսաթոշակներ տալու և նպաստով ապահովելու հարցը: Մինչև այժմ կոլտնտեսականներին կենսաթոշակներ և նպաստներ տրվում էին առանձին, առավելապես տնտեսապես ուժեղ կոլտնտեսություններում տարբեր ձևով ու չափով: Այսուհետև այդ կատարվելու է համապետական մասշտաբով, միասնական ձևով: Այդ նպատակով կոլտնտեսությունների կողմից կատարված հատկացումներից և պետական միջոցներից ստեղծված ֆոնդերից կենսաթոշակներ և նպաստներ են տրվելու կոլտնտեսականներին՝ ծերության ու հաշմանդամության դեպքում, երեխաներին՝ կերակրողին կորցնելու դեպքում, ինչպես նաև կոլտնտեսուհիներին՝ հղիության և ծննդաբերության դեպքում: Ըստ մոտավոր հաշիվների Սովետական Միությունում կոլտնտեսականներին կենսաթոշակներ և նպաստներ վճարելու ծախսերը տարեկան մոտավորապես կկազմի 1,3 միլիարդից 1,4 միլիարդ ռուբլի: Կենսաթոշակներ կստանան շուրջ 6,5 միլիոն մարդ:

Սակայն ՍՍՌՄ Գերագույն սովետի վերջին սեսիան իր ընդունած օրենքում
նշեց, որ «կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովման հարցում չպետք
է հավասարարական մոտեցում լինի: Որքան ավելի բարձր է կոլտնտեսական-
ների աշխատանքի արտադրողականությունը, որքան կոլտնտեսությունը մեկ
հեկտար վարելահողի դիմաց ավելի շատ արտադրանք է արտադրում և վաճա-
ռում պետությանը, որքան ավելի բարձր է նրա եկամուտը և կենսաթոշակային
ֆոնդին կատարած մասհանումների մակարդակը, այնքան ավելի մեծ պետք է
լինեն կոլտնտեսականների կենսաթոշակները, այնքան ավելի լավ պետք է ա-
պահովվեն այն կոլտնտեսականները, որոնք լավ են աշխատում և ավելի մեծ
ավանդ են մուծում հանրային արտադրության մեջ»: Այսպիսով, հասարակա-
կան բարիքներից կօգտվեն միայն ազնիվ, բարեխիղճ աշխատողները, իսկ ծու-
լերն ու պորտաբույծները զուրկ կլինեն դրանից:

Թոշակ, նյութական ապահովություն ծերության ժամանակ. արդյոք կարո՞ղ
է այս մասին երազել աշխատավոր գյուղացին կապիտալիստական աշխարհում,
ուր տնտեսության քայքայման աճն անընդհատ թակում է մանր գյուղացիության
դուռը: Միայն 1954—1964 թվականներին Ֆրանսիայում քայքայվել են 242 հա-
զար մանր գյուղացիական տնտեսություններ: Կապիտալիստական տնտեսական
դաժան մրցության օրենքի հետևանքով ամեն տարի Ամերիկայի Միացյալ Նա-
հանգներում անհետանում են մոտ 150 հազար մանր ֆերմերներ ու մտնում
ընչազուրկ պրոլետարների շարքերը:

Գերագույն սովետի չորրորդ սեսիայում քննարկված հարցերը իրենց սոցիալ
և քաղաքական նշանակությամբ՝ միջազգային կարևոր նշանակություն ունեն:

ՌԿ(բ)Պ համառուսաստանյան X կոնֆերանսում արտասանած իր եզրա-
փակիչ ճառում Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Այժմ միջազգային ռևոլյուցիայի վրա
մենք մեր գլխավոր ներգործությունն անում ենք մեր տնտեսական քաղաքակա-
նությամբ: Սովետական Ռուսաստանի ռեսպուբլիկային են նայում բոլորը, աշ-
խարհի բոլոր երկրների բոլոր աշխատավորները, առանց որևէ բացառության և
առանց որևէ չափազանցության»: Այո՛, ՍՍՌՄ-ին են հառել իրենց հայացքները
երկրագնդի աշխատանքի մարդիկ: Սովետական Միության տնտեսական զար-
գացման հաջողությունները, գիտության ու կուլտուրայի նվաճումները, երկրի

աշխատավորության կենսամակարդակի բարձրացումը ուրախացնում է մեր բարեկամներին ու նրանց պայքարի ոգեշնչում ընդդեմ շահագործողների: Ֆինլանդիայի Կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղար ընկեր Վ. Պեսսին գրում է. «Սոցիալիստական երկրների արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի բնագավառում ձեռք բերած ամեն մի հաջողություն, աշխատավորների կյանքի ամեն մի բարելավում, սոցիալիստական դեմոկրատիայի ճանապարհի ամեն մի նոր քայլ լավագույն ագիտացիա է սոցիալիզմի և կոմունիզմի օգտին»:

Սովետական Միության Կոմունիստական պարտիան հետևողական ու հաստատակամորեն կենսագործում է ՍՄԿՊ ծրագիրը, երջանիկ հասարակարգի կառուցման հոյակապ պլանը:

Չհանգստանալով ձեռք բերած նվաճումներով, սովետական ժողովուրդը ջանում է, որպեսզի անընդհատ զարգանան երկրի արտադրողական ուժերը և հանրային հարստության բոլոր աղբյուրները հորդեն գետի նման: «Բայց դա,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— իրողություն կդառնա միայն աշխատանքի բարձրագույն արտադրողականության հիման վրա: Հենց դա էլ այն բանալին է, որով մենք կբացենք կոմունիստական հասարակարգի դռները»:

Սովետական Միության բոլոր աշխատավորները՝ բանվորները, կոլտնտեսականներն ու ծառայողները մեծ գոհունակությամբ ընդունեցին ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն Սովետի չորրորդ սեսիայի որոշումները, որոնք սովետական մարդու նկատմամբ պարտիայի ու կառավարության ցուցաբերած հոգատարության լավագույն վկայությունն են: Շնորհակալական խոսքն ուղղելով կոմունիստական պարտիային, նրանք խոստանում են իրենց ողջ եռանդն ու ջանքերը գործադրել մեր հայրենիքի հետագա բարգավաճման համար:

Կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակիցների համար չկա ավելի բարձր նպատակ, քան սոցիալիստական հայրենիքի համար բարիքներ ստեղծելը: Իր հարազատ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը համարձակ քայլերով առաջ է գնում կոմունիզմի ուղիով:





# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԱՆՀԱՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ

ՀՐ. ՇԱՔԱՐՅԱՆ

*Հասարակական կյանքի զարգացումը միաժամանակ մարդկային անհա-*
*տականության զարգացում է ենթադրում. պայքարը հանուն ամենամարդկա-*
*յին հարաբերությունների՝ պայքար է նաև ամենամարդկային անհատակա-*
*նության համար: Պատահական չէ, որ սոցիալական յուրաքանչյուր հեղաշրջ-*
*ման էպոխայում անհատականության հարցը ներկայացնում է իբրև կենտրո-*
*նական պրոբլեմներից մեկը: Արդի դարաշրջանում ևս գոյություն ունեցող*
*իրարամերժ սոցիալ-տնտեսական սիստեմների գաղափարական պայքարում*
*անհատի ու անհատականության զարգացման հարցը բոլորովին էլ հետին տե-*
*ղում չի գտնվում:*

*Բնականաբար այդ պրոբլեմը դրվում և առավել սկզբունքային նշանա-*
*կություն է ստանում կոմունիզմի կառուցման էպոխայում: Որքան բարձր է*
*ծնունդ առնող սոցիալական օրգանիզմը, այնքան բարձր է նրա անհատակա-*
*նացված կրողի նկատմամբ ներկայացվող պահանջը: Նոր տնտեսակարգը իր*
*հետ բերում է նաև նոր վերաբերմունք մարդու նկատմամբ. Նոր հասարակար-*
*գը անհատականության հարցում բնութագրվում է ինչպես անհատին նոր հոգե-*
*վոր ու ֆիզիկական որակներ ներարկելով, այնպես էլ մարդկային էության*
*հարստություններից նպատակասլաց կերպով օգտվելու կարողությամբ:*

*Հայտնի է, որ բուրժուական հասարակարգը «բնական» ու «բանական»*
*ներկայացնելու գաղափարական «հիմնավորումներում» մասնավոր սեփակա-*
*նությունը, հատկապես նրա կապիտալիստական ձևը հայտարարվում է իբրև*
*մարդկային անհատականության ծաղկման միակ հնարավոր ասպարեզը և,*
*ընդհակառակը, հանրային սեփականության վրա հենված հասարակարգը նշա-*
*վակվում է իբրև միջակության ու գորշության թագավորություն, իբրև անհա-*
*տականության ոչնչացում:*

*Անշուշտ մասնավոր սեփականատիրության առաջացումը ժամանակին*
*առաջադիմական նշանակություն է ունեցել նաև անհատականության զարգաց-*
*ման հարցում: Մինչ այդ, նախնադարյան համայնական հասարակարգում,*
*անհատը ըստ էության դեռ իրեն չէր գիտակցում իբրև այդպիսին, իրեն չէր*
*զատում կոլեկտիվից, հանդես չէր գալիս կոլեկտիվի ըմբռնումներից շատ թե*
*քիչ տարբերվող ըմբռնումներով, պահանջներով ու կարողություններով:*
*էթնոլոգների վկայությամբ զարգացման այդ աստիճանում ժողովուրդները*
*նույնիսկ չունեին «ես» ու «իմ» բառերը և անգամ անհատի անունն էլ պատ-*

կանում էր տվյալ ցեղին։ Մասնավոր սեփականությունը հնարավոր դարձրեց անհատի ինքնագիտակցումը և հայտնի չափով նպաստեց անհատականության զարգացմանը։

Սակայն անհատականության բազմակողմանի ծավալման համար մասնավոր սեփականատիրական հարաբերությունների ընձեռած հնարավորությունները բավականին միակողմանի, որոշ իմաստով նույնիսկ հետադիմական գտնվեցին։ Մասնավոր սեփականության առաջացումով, ամենից առաջ, բնությունից մարդուն տրված աշխատելու ընդունակ երկու օրգանները՝ ուղեղն ու ձեռքը բաժանվեցին միմյանցից և նույնիսկ հակադրվեցին միմյանց. հասարակության անդամների մի մասը, այն է՝ իշխող դասակարգը սեփականեց մտավոր գործունեությունը և շահագործվողներին պարտադրվեց միակողմանի, ծանր ֆիզիկական աշխատանքը։ Այդպես սկսված անհատի մանրատման պրոցեսը իր ծայրահեղ դրսևորմանը հասավ բուրժուական հասարակարգում, որտեղ աշխատանքի հետագա բաժանման հետևանքով ինչպես ֆիզիկական. այնպես էլ մտավոր աշխատանքի շրջանակներում անհատը դատապարտվեց մշտապես միևնույն գործողությունները կատարելու տաղտկալի վիճակին։ Մարդկային էության նկատմամբ նման գիշատիչ վերաբերմունքի լավագույն իլյուստրացիան կարող է հանդիսանալ Գոգոլի «Շինել» պատմվածքի հանրահայտ հերոս Ակակի Ակակիևիչը, որի համար կյանքի ողջ բովանդակությունը, վերջինիս նկատմամբ նրա հետաքրքրությունները ամփոփված են շարունակ նույնատիպ գրություններ գրելու ու արտագրելու մեջ։ Այս երևույթն է, որ Մարքսը բնութագրել է իբրև «պրոֆեսիոնալ ապուշացում»։ Բուրժուական իրականությանը վերաբերող գրականության մեջ հաճախ հանդիպող «պրոֆեսիոնալ հիվանդություն» կամ նույնիսկ՝ «պրոֆեսիոնալ ֆիզիոնոմիա» արտահայտությունները միանգամայն օրինաչափ են։

Մարդկային հոգևոր կարողություններն առավել աղքատացնում ու հարստահարում են մասնավոր սեփականատիրության օրինական ծնունդ համարվող տիրելու զգացմունքը, հարստանալու անհագ տենչը։ Մարդկային հարաբերություններում թագավորող չոր հաշիվն ու հարստության պաշտամունքը մարդուն մարդու համար, այդ թվում նաև հարազատին հարազատի համար՝ միջոց են դարձնում մեծ ու փոքր գործարքներով կապիտալ կուտակելու։ Անհատի՝ հարստություն դիզելու մոլուցքի առաջ խամրում ու չքանում են մարդկային մնացած բոլոր արժանիքները։ Նույնչափ աղքատանում է նաև անհատի էմոցիոնալ ու ինտելեկտուալ աշխարհը, նրա բարոյական, էսթետիկական ու սոցիալական ըմբռնումները։ Բուրժուական իրականության սկզբունքներին հարազատ մնացած անհատը նմանվում է հայելապատ սենյակում գտնվող գրական այն հերոսին, որն իր շրջապատում միայն իրեն է նկատում. կապիտալիստական հարաբերությունների մարմնավորումը հանդիսացող բուրժուան միայն իրեն կամ իր անմիջական շահն է տեսնում ինչպես սոցիալական կյանքի տեղաշարժերում, այնպես էլ ինտիմ, կենցաղային, ընտանեկան հարաբերություններում։ Ահա թե ինչու բուրժուական հասարակարգը սոցիալական հող է ծառայում ոչ թե, կամ ոչ այնքան անհատականության զարգացման, որքան անհատապաշտության, ինդիվիդուալիզմի ծաղկման համար։ Մասնավոր սեփականությունն է, որ մարդկանց բաժանում է իրարից, յուրաքանչյուրի համար ստեղծում միայն իրենց պատկանող և մյուսներին հակադրվող կյանք։



Այսպիսիք են մասնավոր ձեռներեցության և մասնավորապես կապիտալիստական հասարակարգի տված հնարավորություններն անհատականության կազմավորման և նրա աղավաղման հակասական պրոցեսում։

Մարքսը ցույց տվեց, որ մասնավոր սեփականատիրության ոչնչացումը ոչ թե անհատականության ոչնչացում է նշանակում, ինչպես պնդում են բուրժուական սոցիոլոգները, այլ՝ անհատապաշտության ոչնչացում։ Ընդհակառակը՝ հանրային սեփականությունն է առողջ կոլեկտիվի և իրոք առողջ անհատականության կազմավորման, մարդուն տրված բնական կարողությունների համակողմանի զարգացման միակ տնտեսական հիմքը։ Ներդաշնակ անհատականությունը կարող է ծնունդ առնել միայն ներդաշնակ սոցիալական հարաբերություններում, որքանով որ անհատը ամենից առաջ ներկայանում է իբրև հասարակական հարաբերությունների ամբողջություն։ Եվ ինչպես մարդկային հարաբերություններն իրենց իրական մարդկայնացված կեցությունն են ստանում հասարակական կյանքի զարգացման կոմունիստական էտապում, այնպես էլ մարդկային անհատականության էվոլյուցիան իր բարձրագույն, իրապես մարդկայնացված վիճակին է անցնում հասարակական կյանքի սոցիալիստական վերակառուցումով։

Հանրային սեփականությունը տնտեսական հիմք է ծառայում հասարակական հարաբերություններում թագավորող սոցիալական թշնամանքը վերացնելու, մարդկային կյանքից անհատապաշտությունն ու եսասիրությունը դուրս մղելու և մարդկանց մի համերաշխ կոլեկտիվի մեջ միավորելու համար։ Այստեղ է, որ անհատի խինդը դառնում է կոլեկտիվի խինդը, անհատի պատիվը՝ կոլեկտիվի պատիվը, և այստեղ է ամենից առաջ իր առարկայական հաստատումը ստանում Մարքսի այն միտքը, որ միայն կոլեկտիվում կարող է անհատը ձեռք բերել իսկական ազատություն ու կարողությունների բազմակողմանի զարգացման ներքին ներդաշնակություն։ Ահա թե ինչու սովետական մարդը ներկայանում է իբրև ամենահասարակական մարդը ժամանակակից իրականության մեջ։ Ինչպես նշում է ընկ. Խրուշչովը, սոցիալիզմի ստեղծած բոլոր արժեքների մեջ ամենամեծ արժեքը նոր մարդն է, իբրև սոցիալական նոր երևույթ։ Նման մարդու ձևավորման ամենահիմնական և անմիջական միջավայրը սոցիալիստական-կոմունիստական աշխատանքն է։

Աշխատանքն ընդհանրապես միջոց է ոչ միայն նյութական բարիքներ արտադրելու, այլև առավել խոր սոցիալական նշանակություն ունեցող՝ մարդկային հատկանիշներ կազմավորելու համար. աշխատանքը սոսկ տնտեսական կատեգորիա չէ, այն նաև խորապես սոցիալական, բարոյական և իմացական կատեգորիա է։ Աշխատանքը ստեղծել է մարդուն թե ֆիզիկապես, թե սոցիալ-բարոյական տեսակետից և թե իմացական առումով։ Աշխատանքը, հատկապես ֆիզիկական աշխատանքն է մարդուն պարգևել ուղղաձիգ կառուցվածք, հեղաշրջել նրա անատոմիական ու ֆիզիոլոգիական կյանքը։ Աշխատանքն է նախնադարյան հորդայի անդամներին միաձուլել առաջին մարդկային կոլեկտիվի մեջ. այստեղ է, որ զոոլոգիական անհատապաշտությունն իր տեղը զիջել է կոլեկտիվիզմի սկզբունքին։ Աշխատանքի պրոցեսում է, որ նախամարդկանց հաղորդակցելու և երևույթների էությունը ճանաչելու պահանջը ծնունդ է տալիս լեզվական մտածողությանը։ Կենդանական բնազդային վարքն իր տեղը զիջում է մարդկային գիտակցական գործունեությանը։ Բայց աշխատանքի նման արարչագործական բովանդակությունը չի սահմանափակվում

այդ նախապատմական շրջանակներով. այն հետագայում ևս ընկած է մարդու ֆիզիկական, սոցիալ-բարոյական ու մտավոր էվոլյուցիայի հիմքում: Ավելին՝ այն հանդիսանում է յուրաքանչյուր անհատի կազմավորման ամենահուսալի դարբնոցը:

Աշխատանքի այդ խոր մարդկային բովանդակությունն ի հայտ է գալիս հատկապես սոցիալիստական հարաբերությունների բազայի վրա, որտեղ բացակայում է ուրիշի աշխատանքի շահագործումը և մարդն աշխատում է իր ու իր ժողովրդի համար, որտեղ ժամանակակից տեխնիկայի նվաճումները ծառայեցվում են ոչ թե մարդու մանրատմանը, նրա դեգրադացիային, այլ ձեռք են բերում խոր հումանիստական բովանդակություն: Ամենից առաջ ներդաշնակորեն զուգակցվում են մարդու երկու օրգանները՝ մկանները և ուղեղը: Վաղուց նկատված ճշմարտություն է, որ նրանցից մեկի անգործության մատնվելը բացասաբար է անդրադառնում նաև մյուսի վրա: Աշխատանքի ստեղծարար էությունը խորապես ճաշակած Մ. Գորկին անհատի բնական առաջընթացը հնարավոր է համարում միայն այն դեպքում, երբ ձեռքերը սովորեցնում են գլխին, ապա խելոքացած գլուխը սովորեցնում է ձեռքերին և այսպես շարունակ: Իսկ երբ ձեռքերը անջատվում են գլխից, մտքերը դառնում են վերացական, ձեռքերը՝ խարխափում մթության մեջ:

Մեր երկրում ոչ միայն վաղուց վերացված է ֆիզիկական և մտավոր աշխատանքի հակադրությունը, այլև կոմունիզմի կառուցմամբ խնդիր է դրված մտավոր ու ֆիզիկական աշխատանքը միավորել մեկ պրոցեսի, յուրաքանչյուրի անհատականության մեջ: Այդ պրոցեսի տեխնիկական հիմքը ժամանակակից կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումն է:

Առողջ անհատականությունը ենթադրում է ոչ միայն սոսկ մտավոր ու ֆիզիկական աշխատանքի զուգակցում, այլև որոշ սահմաններում բազմազանություն նաև միևնույն մտավորի ու ֆիզիկականի շրջանակներում: Հայտնի է, որ ամեն մի միակողմանի ու միալար աշխատանք ծանր է և հոգնեցուցիչ, լինի այն ֆիզիկական, թե մտավոր: Ֆիզիկական աշխատանքի հետ միասին անհատի ֆիզիկական ներդաշնակ զարգացումը կարող է ապահովվել հիմնականում սպորտի միջոցով: Գիտական հիմունքներով մշակված ֆիզիկական վարժությունները կբացառեն արտասահմանյան մի շարք մարդաբանների կողմից ենթադրված այն հնարավորությունը, թե իբր ապագա մարդը մարմնապես վտիտ ու անճոռնի կառուցվածք կունենա: Իսկ մտավոր ներդաշնակ զարգացումը հնարավոր է դառնում այն դեպքում, երբ համապատասխան պայմաններ են ստեղծվում անհատի բնատուր կարողությունների զարգացման համար:

Այս առումով անշուշտ ճիշտ չպետք է ճանաչվի այն տեսակետը, ըստ որի կոմունիզմի էպոխայում մարդիկ կունենան բացարձակ իմաստով բազմակողմանի զարգացում, թե միևնույն անհատը կարող է հավասարապես քայլել մարդկային գործունեության բոլոր բնագավառներում: Հանրահայտ է, որ յուրաքանչյուր անհատ սովորաբար օժտված է ոչ անսահման բնատուր կարողություններով: Եվ ապա՝ արվեստի, գիտության ու տեխնիկայի զարգացման չափազանց բարձր մակարդակը կբացառի տարբեր բնագավառներում հավասարապես հեղինակություն ներկայացնելու հնարավորությունը:

Ինչպես ճիշտ նկատել են տվյալ պրոբլեմի մի շարք ուսումնասիրողներ, սովորաբար նման ամենագետները սակավ են իմանում որևէ բան հիմնովին:



Իսկ այդպիսի մակերեսայնությունը անհամատեղելի է կոմունիզմի էության հետ: Հետևաբար բազմակողմանի զարգացման գաղափարը վերաբերում է միայն յուրաքանչյուր անհատի բնատուր կարողությունների զարգացմանը, նրա ընտրած մասնագիտության հարակից բնագավառների յուրացմանը, մի պրոցես, որն ըստ էության արդեն սկսվել է մեր արտադրության առաջավորների մոտ: Հեռավոր մասնագիտությունների յուրացումը կամ նախկին մասնագիտության հետ առնչություն չունեցող նոր մասնագիտության անցնելու փորձը երբեմն կարող է նույնիսկ հիվանդագին, ճգնաժամային վիճակ ստեղծել օրգանիզմի համար:

Մտավոր ու ֆիզիկական աշխատանքի խելացի զուգորդումը միայն կարող է հիմք հանդիսանալ կոմունիստական առողջ անհատականության ձևավորման համար: Այդպիսի պայմաններում է հատկապես հնարավոր աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքը, իսկ նման աշխատանքն իր հիմքում կունենա ոչ թե նյութական շահագրգռվածությունը, այլ բարոյական ներքին մղումը: Աշխատանքի այդպիսի բնույթը ոչ միայն հասարակական կյանքի բարձր զարգացման ցուցանիշ է, այլև մարդու անհատականության, նրա հոգևոր որակների զարգացման բարձրագույն դրսևորումը: Այդ նոր անհատականության, իբրև սոցիալ-բարոյական նոր երևույթի՝ կազմավորման համար օբյեկտիվ պայմանների հետ միասին պահանջվում է նաև նպատակասլաց գաղափարական, դաստիարակչական աշխատանք, հատկապես աշխատանքային դաստիարակություն:

Հենց ինքնուրույն աշխատանքն է անհրաժեշտ նախապայման հանդիսանում ինքնուրույն մտածելակերպի, դաստիարակվողի անհատականության, նրա եսի կազմավորման համար: Աշխատանքը մի պրոցես է, որտեղ մարդը դրսևորում է իր սուբյեկտիվ ակտիվությունը, հաղթահարում որոշ դժվարություններ և դրա շնորհիվ ձեռք բերում ոչ միայն համապատասխան գիտելիքներ ու հմտություններ, այլև այդ պրոցեսում կազմավորվում է նրա հոգեկան կառուցվածքը, նրա կամքն ու բնավորությունը, հավատ է ծնվում իր ուժերի ու կարողությունների նկատմամբ: Դժվարությունների հաղթահարման հետևանքով արագանում է անհատի հասունացումը: Նույնիսկ անձնական կամ մասնավոր դիտումներով կարելի է նկատել, թե ինչպես չաշխատող մարդիկ, որպես կանոն, դառնում են մանրախնդիր, բովանդակազուրկ, անհավասարակշիռ, անկայուն համոզմունքների տեր:

Հատկանշական է, որ խուլիգանական ու հակահասարակական արարքներ կատարողները սովորաբար որոշակի զբաղմունք չունեցող, հանրօգուտ աշխատանքից խուսափող պորտաբույծներ են լինում: Մինչդեռ աշխատող, իր գործով ապրող, հուզվող ու ստեղծագործող անհատը որպես կանոն, կենսուրախ է, առույգ, քաղքենիական, կենցաղային մանրուքներից բարձր կանգնած: Ինքնուրույն, ազնիվ ու հանրօգուտ աշխատանքը ոչ միայն իմացական ու բարոյական կենարար աղբյուր է ծառայում անհատի համար, այլև մեծապես հեշտացնում արդեն մարդկության ձեռք բերած գիտելիքները յուրացնելու, այն ներքին համոզմունք դարձնելու գործը: Աշխատանքի հետ չզուգակցվող գիտելիքների մատուցումը կարող է վերածվել սոսկ սերտման պրոցեսի: Իսկ այդպիսի դաստիարակության արդյունքը սովորաբար շաբլոնն է, գորշ անհատականությունը, անհատ, որը չունի իր սեփական եսը, իր սեփական մոտեցումն ու մտածելակերպը, անհատ, որը կոչված է միայն հլու հնազանդ կա-

ճակատար լինելու։ Այսպիսի՝ միայն գոյություն ունեցող ճշմարտությունները սերտելու կամ միայն բացված ճանապարհներով քայլելու ընդունակ, մտածողության սեփական ընթացքից զուրկ մարդիկ, մարդիկ, որ անկարող են որոնելու, ստեղծագործելու ու սխալվելու, խորթ են կոմունիզմի ոգուն ու իդեալներին։ Ինքնուրույն մտածելակերպը, այլակերպ խորհելու կարողությունը մնում է իբրև մտքի ամեն մի առաջընթացի անհրաժեշտ նախապայմանը։

Մարդկային կարողությունների նկատմամբ բարբարոսություն պետք է գիտվի մեր սիստեմի էությանը խորթ այն դաստիարակությունը, որի արդյունքը մեռած անհատականությունն է, միօրինակ ու միակերպ մտածելակերպը. անսխալ շաբլոնը։ Երբեմն այսպիսի ինտելեկտուալ ու նաև բարոյական այլանդակությունների ջատագով են ներկայանում՝ իրենք էլ դաստիարակության պակաս ունեցող որոշ ծնողներ, որոնք իբրև փափկասրտության դրսևորում, ձգտում են հեռու պահել իրենց «բալիկներին» ամեն մի աշխատանքից, չզգալով, որ դրանով ոչ թե բարիք, այլ չարիք են գործում ինչպես զավակների, այնպես էլ հասարակության համար, որ այդ «սերը» ոչ թե դեղ է առողջ օրգանիզմի համար, այլ թույն հոգեպես ու ֆիզիկապես հիվանդոտ, մարդկային երջանկության անհաղորդ էգոիստի համար։

Եվ վերջապես աշխատանքային դաստիարակությունից դուրս են ծնվում այն կիսատ-պռատ անհատականությունները, որոնք կյանքի նկատմամբ ունեն միայն սպառողական պահանջ, որոնց կյանքը ներկայացնում է սոսկ որպես բովանդակազուրկ, թեթևամիտ հաճույքների մի շղթա։

Մինչդեռ անհատականության կազմավորման համար նախ պետք է սովորեցնել նյութական բարիքներ արտադրելը և ապա՝ այդ բարիքները խելացի վայելել։ Սովորաբար աշխատանքը չճաշակած անհատներն են, որ զուրկ են կայուն համոզմունքներից և հանդես են գալիս ուրիշների մոտ փշրահավաքների դերում, թռցնում են անմիջականորեն աչքի զարնվող, դեռևս չխորհված, չմարսված սովորույթներն ու համոզմունքները. Նրանց ամեն ինչ «հասկանալի է» առաջին հայացքից և ամեն ինչ արժանի միայն վատաբանման ու ժխտման։ Նրանց աշխարհը երևույթների բնագավառն է, մակերեսային, աղքատ կյանքը՝ նույնքան աղքատ զգացմունքներով ու սկեպտիկ բովանդակությամբ հանդերձ։ Այստեղ են կազմավորվում քաղքենիները, մոդայամոլներն ու «ստիլյագները»։ Ահա թե ինչու մեր պարտիան հետևողականորեն վարում է դպրոցը, ուսուցումը արտադրության հետ կապելու, ուսուցումն ու դաստիարակությունը, հատկապես աշխատանքային դաստիարակությունը, մի միասնության մեջ միավորելու քաղաքականություն։

Աշխատանքն ըստ էության ընկած է նաև անհատականության բարոյա-էսթետիկական ըմբռնումների կազմավորման հիմքում։ Իսկ առողջ բարոյականն ու առողջ էսթետիկականը ներդաշնակ անհատականության անկապտելի մասն են կազմում։ Դա մարդկանց հույզերի ու զգացմունքների աշխարհն է, ինտիմ հարաբերությունների բնագավառը, դա նրանց ամենօրյա կենցաղն է։ Գուցե հենց մեր պայմաններում բարոյականն է անհատականության էվոլյուցիայի ամենապահպանողական կողմը և մեր կյանքի ոչ մի բնագավառում անցյալը այնքան կենսունակ չէ, որքան բարոյական հարաբերությունների բնագավառում։ Այստեղ ռևոլյուցիոն կտրուկ շրջադարձերը հաճախակի են իրենց տեղը զիջում տևական ու նպատակասլաց աշխատանքին. էկոնոմիկայում տեղի ունեցող փոփոխությունները միշտ չէ, որ անմիջականորեն իրենց



արձագանքն են գտնում և համապատասխան փոփոխություններ ենթադրում բարոյական ըմբռնումներում։ Այստեղ, ավելի, քան որևէ այլ բնագավառում, գործ ունենք տրադիցիայի, սովորույթի ուժի հետ։

Ժամանակ է պահանջվում, որպեսզի հնությամբ սրբագործված ավանդույթներն ու նորմաները իրենց տեղը զիջեն նոր կոմունիստական հարաբերությունների բարոյական պահանջներին։ Անկարելի է մեկ հարվածով դեն նետել մարդկային հոգու վրա տասնյակ դարեր շարունակ ծանրացած եսասիրությունը, հարստանալու տենչն ու շահասիրական զգացմունքը։ Տնտեսական փոփոխություններին զուգընթաց ժամանակ է պահանջվում, որպեսզի հասարակական կյանքից մեկընդմիշտ դուրս մղվեն մարդկային անհատականությունն այլանդակող այնպիսի արատներ, ինչպիսիք են սպեկուլյացիան ու գողությունը, խուլիգանությունն ու բյուրոկրատիզմը։ Չէ որ սպեկուլյանտը իր ապրանքների հետ միասին վաճառում, կոպեկների է վերածում նաև իր մարդկային հատկանիշները, իր խիղճն ու պատիվը. կամ միթե գողը թալանելով ուրիշների ազնիվ աշխատանքով ստեղծված արժեքները՝ չի թալանում ու այլանդակում նաև ինքն իրեն իբրև անհատ, իբրև մարդ։

Մեր պայմաններում ներդաշնակ անհատականության կազմավորմանը մեծապես արգելակում է կյանքի առաջընթացից բավականին հետ մնացող կենցաղը։ Եզակի չեն այն փաստերը, երբ արտադրության կամ հասարակական գործունեության մեջ միանգամայն դրական վարքագիծ ունեցողը կենցաղում, ընտանեկան հարաբերություններում հաճախ ներկայանում է բոլորովին հակառակ բնութագրումներով։ Գաղտնիք չէ, որ կենցաղը ոչ բավարար կուլտուրական մակարդակի վրա գտնվելու պատճառով, դարձել է հնացած տրադիցիաների, կրոնական պատկերացումների, քաղքենիության և բարոյական կարգի այլ բացասական որակների հիմնական օջախը։ Դա վտանգավոր է նաև այն տեսակետից, որ ընտանիքում, կենցաղային հարաբերությունների պայմաններում է ծնունդ առնում նոր սերունդը ոչ միայն ֆիզիկապես այլև, ըստ էության, նաև հոգեպես։ Այստեղ ընտանեկան պայմաններում են դրվում ապագա քաղաքացու հոգևոր աշխարհի առաջին անկյունաքարերը։ Կոմունիստական հասարակարգի կառուցումը ենթադրում է նաև մեր կյանքի այս անհրաժեշտ անկյան գիտական վերակառուցումը։ Պատահական չէ, որ կոմունիստական աշխատանքի հարվածայինները կոմունիստաբար ապրելը անհրաժեշտ պայման են դիտում նոր հասարակարգի նոր մարդու կազմավորման համար։

Վերջապես, մարդկային անհատականությունը հեռու կգտնվի ներդաշնակ ամբողջականություն լինելուց, եթե նրան պակասում է գեղեցկի առողջ ընկալումը, էսթետիկական վերաբերմունքը իրականության նկատմամբ։ Այս բարձրակարգ մարդկային զգացումը հասարակական կյանքի և անհատականության զարգացման չափանիշներից մեկն է։ Մարքսի արտահայտությամբ այն ծնունդ է առել կոպիտ պրակտիկ պահանջի մարդու վրա ունեցած ճնշման հաղթահարման ճանապարհով։ Եվ որքան անհատը ազատվում է իր ամենօրյա պրակտիկ հոգսերից, այնքան մեծ չափով է ղեկավարվում գեղեցկի օրենքներով։ Իրավացի է այն տեսակետը, որ իր հիմքում անձնական նյութական շահագրգռվածությունը բացառող ապագա կոմունիստական աշխատանքը կունենա ոչ միայն բարոյական, այլև էսթետիկական ազդակներ։

Ընդհանրապես գեղեցկի ընկալման բացակայությունը բացասաբար է անդ-

բադառնում առողջ անհատականության կազմավորման, մասնավորապես նրա ինտելեկտուալ կարողությունների զարգացման վրա: Արդեն գիտական փառքի տիրացած Դարվինը խոր ափսոսանքով էր նշում, որ ժամանակին ինքը քիչ ուշադրություն է դարձրել գեղարվեստական գրականությանն ու երաժշտությանը, որի հետևանքով իր ուղեղի մի մասը, անգործության դատապարտված, զրկվել է ակտիվությունից ու ատրոֆիայի ենթարկվել: Դարվինը նույնիսկ գտնում է, որ այդ կարգի հետաքրքրությունների կորուստը հավասարազոր է երջանկության կորստին և բացասաբար է անդրադառնում մտավոր ու բարոյական որակների վրա: Իրոք արվեստը նրբացնում ու ազնվացնում է մարդկային զգացմունքները: Էսթետիկական բարձր կուլտուրան անհամատեղելի է կոպտության ու գռեհկության, խորապես հակաէսթետիկական՝ հասարակության դեմ ուղղված երևույթների հետ: Ահա թե ինչու Մ. Գորկին էսթետիկան համարում է ապագայի էթիկական:

***

Կոմունիզմը մերժում է ինչպես բուրժուական ինդիվիդուալիզմն ու մասնավոր սեփականության հիմքի վրա մարդկային էությունը ռեֆորմների ենթարկելու վերաբերյալ հեքիաթները, «անհատականության ճգնաժամի» կամ «ապահումանիզացման» մասին բարբաջանքները, այնպես էլ կրոնական ուսմունքը՝ մարդկային էության բաժանումը երկրայինի ու երկնայինի, անցավորի ու հավիտենականի, անկատարի ու կատարյալի: Կոմունիզմը օբյեկտիվ սոցիալ-տնտեսական պայմաններ է ստեղծում մարդկային կարողությունների բազմակողմանի ու ներդաշնակ ծաղկման համար: Ոչ մի հասարակարգ ընդունակ չէ այնչափ զարգացնելու անհատականությունը և այնչափ օգտվելու անհատի կարողություններից, ինչպես կոմունիզմը: Սոցիալիզմը ոչ թե «բունտ» է մեծ անհատականությունների դեմ, ինչպես մոգոնում են բուրժուական գաղափարախոսները, այլ իսկական, ընդգծված անհատականությունների թագավորություն: Հոտային վիճակը օտար է կոմունիզմի սկզբունքներին ու իդեալներին: Ինչպես ճիշտ նկատել է Ա. Վ. Լունաչարսկին, «միայն իր առանձին մարդկային անհատականությունների մեջ բազմազան հասարակությունը, որը տրոհվում է վառ կերպով արտահայտված ինդիվիդների, հանդիսանում է իրոք կուլտուրական հարուստ հասարակություն» (А. В. Луначарский, о народном образовании, М. 1958, стр. 445—446): Միայն այս պայմաններում տաղանդներն ու հանճարները կդադարեն լինել երջանիկ բացառություններ, հասարակության բոլոր անդամները կապրեն ինքնաբավականության, երջանկության այն զգացումը, որի աղբյուրը ներդաշնակ անհատականությունը, մարդու բնատուր կարողությունների նորմալ զարգացումն է: Միայն այս պայմաններում անհատը կգտնվի կոմունիստական հասարակարգի առաջադրած սոցիալական, գաղափարական ու բարոյական պահանջների բարձրության մակարդակին և կներկայանա որպես այդ նոր հարաբերությունների արգասիքն ու անհատականացված կրողը:

# «ՏԱՐՐԱԿԱՆ» ՄԱՍՆԻԿՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՏԿԵՐԱՑՈՒՄԸ

Հ. ՍԱՀԱԿՅԱՆ



Փիլիսոփայության երկու ուղղությունների՝ մատերիալիզմի և իդեալիզմի միջև մղվող պայքարը, որը հազարամյակների պատմություն ունի, մեր ժամանակներում դրսևորվում է մի նոր ուժով: Այն ծավալվում է ինչպես հասարակական, այնպես էլ բնագիտության, մասնավորապես միջուկային ֆիզիկայի պրոբլեմների շուրջը:

Սուր վեճերի առարկա է «տարրական» մասնիկների ռեալ գոյության հարցը: Ոմանք ելնելով այդ մասնիկների էության և շարժման բնույթի առանձնահատկությունների իդեալիստական մեկնաբանությունից, Լենինի արտահայտությամբ, փորձում են մի կողմ նետել գիտակցությունից դուրս գտնվող օբյեկտիվ ռեալությունը, որը աղավաղում է իրական աշխարհի իրական պատկերը և հակասում մարքսիստական լենինյան մատերիալիստական աշխարհըմբռնմանը:

Իսկ ի՞նչ են ներկայացնում իրենցից «տարրական» մասնիկները, և որո՞նք են այդ մասնիկների դրսևորման առանձնահատկությունները:

## 1. «ՏԱՐՐԱԿԱՆ» ՄԱՍՆԻԿՆԵՐԸ ՈՐՊԵՍ ՄԱՏԵՐԻԱՅԻ ՁԵՎԵՐ

Ժամանակակից գիտությանը հայտնի են երեսունից ավելի «տարրական» մասնիկներ՝ էլեկտրոններ, պրոտոններ, նեյտրոններ, ֆոտոններ, նեյտրինոներ, տարբեր տեսակի մեզոններ, հիպերոններ և դրանց անտիմասնիկները՝ անտիէլեկտրոններ (պոզիտրոններ), անտիպրոտոններ, անտինեյտրոններ և այլն:

«Տարրական» մասնիկների հայտնագործությունները մի կողմից ընդարձակեցին մեր պատկերացումները մատերիայի կառուցվածքի մասին, իսկ մյուս կողմից՝ կարևոր դեր են խաղում մատերիալիստական աշխարհըմբռնման զարգացման գործում: Սակայն կային և մինչև օրս էլ կան այնպիսի գիտնականներ ու փիլիսոփաներ, որոնք կասկածի տակ են առնում «տարրական» մասնիկների ռեալ գոյությունը:

Հայտնի է, որ բազմաթիվ փորձերով ատոմների գոյությունն ապացուցելուց հետո էլ մախիստները պնդում էին, թե դրանք իրականում գոյություն չունեն, որովհետև փորձերում դրանք չեն դիտվում:

Մախը ատոմները համարում էր «վհուկների գիշերաժողով», իսկ մախիստ
Պիրսոնի ըմբռնմամբ, դրանք ռեալ գոյաձևեր չեն, քանի որ անտեսանելի են
և չունեն զգայական «էկվիվալենտություն»։

Ժամանակակից պոզիտիվիստներն ամբողջովին մնալով մախիզմի դիր-
քերում, ատոմների գոյության այնպիսի մեկնաբանումներ են փնտրում, որ,
մի կողմից չհակադրվեն գիտությանը, մյուս կողմից՝ ապացուցեն մատերիայի
անհետացումը։ Այսպես, օրինակ, պրագմատիստ Իորդանը ատոմները բնո-
րոշում է որպես էքսպերիմենտալ փաստերի դասակարգման հիմնակմախք
(տես. А. С. Карлюк, Реакционная сущность «физического» идеализма,
1954, с. 63)։

Ատոմների՝ որպես մատերիայի գոյության ձևերի ժխտումը իդեալիստ-
ները տարածեցին նաև «տարրական» մասնիկների վրա։ Անգլիական աստղա-
գետ իդեալիստ Ջինսը հայտարարում էր, թե էլեկտրոնները որպես օբյեկտիվ
ռեալություններ, գոյություն չունեն, նրանք իբր կան միմիայն մեր գիտակցու-
թյան մեջ։ Իսկ Էդինգտոնը էլեկտրոններն ու մյուս «տարրական» մասնիկները
համարում էր մտքի կոնցեպտների կրողներ։

Հակառակ ամեն կարգի ու երանգի իդեալիստների, բնագիտության տվյալ-
ները հաստատում են, որ «տարրական» մասնիկները նյութական ռեալ օբյեկտ-
ներ են և գոյություն ունեն մեր զգայարաններից ու գիտակցությունից դուրս և
անկախ։ Ավելին, այդ մասնիկները, ըստ ժամանակակից պատկերացումների,
մեզ հայտնի մատերիայի ձևերի հիմքն են։ Այսպես, օրինակ, պրոտոններն ու
նեյտրոնները փոխազդելով միմյանց վրա առաջացնում են ատոմների միջուկ-
ները, վերջիններիս և էլեկտրոնների փոխազդեցությամբ ստեղծվում են քի-
միական տարրերը՝ ատոմները։ Իսկ ատոմների բազմաթիվ փոխադարձ կա-
պակցություններից առաջանում է մատերիայի մի այլ ձև՝ մոլեկուլները, որոնց
անթիվ միացումները ներկայացնում են նյութի գազային, հեղուկ և պինդ վի-
ճակները, անօրգանական և օրգանական մարմինները։ Հետևաբար, իդեալիստ-
ների պնդումներն այն մասին, թե «տարրական» մասնիկները մարդու ստեղծա-
գործությունները, կոնցեպտներն են, հիմնովին սխալ է և հակասում է գիտու-
թյանը։

Իդեալիստները պնդում են, թե «տարրական» մասնիկները մարդկանց մոտ
զգայություններ չեն առաջացնում, հետևաբար, դրանք ռեալ գոյություն չու-
նեն։

Գիտությունը վաղուց ապացուցել է, որ մեր զգայարանները բնության բո-
լոր օբյեկտներն անմիջապես ընկալել չեն կարող այն պարզ պատճառով, որ
մարդու զգայարանների հնարավորությունները սահմանափակ են։

Աշխարհի ճանաչողության համար կարևոր դեր է խաղում մարդու աչքը,
որն ունի տեսողության չափազանց նեղ սահման։ Օրինակ, անզեն աչքը կարող
է տեսնել միլիմետրի մի քանի տասներորդ մասը, իսկ էլեկտրոնային մանրա-
դիտակի օգնությամբ նա հնարավորություն ունի դիտելու մոլեկուլները։ Բայց
հենց այդ նյութական մասնիկներն իրենց հերթին, կազմված են ավելի ման-
րագույն մասերից՝ ատոմներից։ Ատոմի շառավիղը մոլեկուլի համեմատու-
թյամբ շատ փոքր է, նա սանտիմետրի $10^{-8}$ մասն է կազմում։ Իսկ ատոմի մի-
ջուկի շառավիղը՝ սանտիմետրի $10^{-13}$ մասը։ Էլ ավելի փոքր են ատոմի մի-
ջուկի կառուցվածքի մեջ մտնող պրոտոններն ու նեյտրոնները։

Հասկանալի է, որ նյութի այդքան փոքր մասնիկները չեն կարող ներգոր-



ծել մեր զգայարանների վրա՝ զգայություններ առաջացնել և ընկալվել։ Բայց
արդյոք այդ նշանակո՞ւմ է, որ մատերիայի այդ ձևերը ռեալ գոյություն չունեն
և մեր գիտակցության արդյունք են։ Իհարկե, ո՛չ։

«Տարրական» մասնիկները մեր զգայարանների վրա ներգործում են այդ
նպատակի համար պատրաստած գործիքների, օրինակ, Վիլսոնի խցիկի, Գեյ-
գերի հաշվիչի և այլ միջոցներով։ Այդ գործիքները ոչ այլ ինչ են, եթե ոչ մեր
զգայարանների շարունակությունը, որոնց միջոցով մարդը կապվում է աշ-
խարհի նորանոր բնագավառների հետ։ Գործիքները հնարավորություն են տա-
լիս մարդուն՝ ուսումնասիրելու մատերիայի այնպիսի ձևեր ու երևույթներ,
որոնք անզեն աչքով անտեսանելի են. «Ատոմային աշխարհի ուսումնասիրու-
թյունը,— ասում է ակադեմիկոս Ֆոկը,— հնարավոր է միայն ավելի խոշոր գոր-
ծիքների միջոցով, որոնք ծառայում են որպես հետազոտության միջոցներ»
(В. А. Фок, Основа квантовой механики, 1959, с. 162)։

Այսպես՝ Վիլսոնի խցիկում որոշակի պայմաններ ստեղծելու դեպքում,
«տարրական» մասնիկներն իրենց շրջապատում առաջացնում են այնպիսի փո-
փոխություններ, որոնք հնարավորություն են տալիս դիտելու և նկարահանելու
առանձին մասնիկների հետքերը, որով որոշվում է նրանց մասսան, էներգիան,
լիցքը և այլ հատկություններ։

«Տարրական» մասնիկների օբյեկտիվ ռեալությունն ապացուցվել է նաև
լույսի տարածման ու կլանման, ֆոտոէֆեկտի երևույթներով։ Սակայն միկրո-
օբյեկտների ռեալ գոյության ամենաէական ապացույցներից մեկն այն է, որ
գիտնականները ոչ միայն կարողանում են դիտել այդ մասնիկների առաջաց-
րած երևույթները, չափել դրանք, այլև ճանաչելով այդ մասնիկների հատկու-
թյունները, շարժման օրինաչափությունները, դրանք ենթարկել իրենց կամքին։

Մարդը ոչ միայն արձանագրում է, օրինակ, էլեկտրոնի գոյության փաստը,
այլև ստեղծում էլեկտրոնների փնջեր, որոնք օգտագործվում են բազմատեսակ
սարքերում, կապի միջոցներում, ֆիզիկայի հետազոտություններում և այլուր։

Եթե «տարրական» օբյեկտները չներգործեին մարդու զգայարանների վրա
և չարտացոլվեին նրա գիտակցության մեջ, որն, ի դեպ, կարող է տեղի ունե-
նալ նաև համադրումների, համեմատությունների միջոցով, հնարավոր չէր լի-
նի իմանալ այդ մասնիկների գոյության ու շարժման մասին, այդ բոլոր չի-
մանալով, մարդը չէր կարող ղեկավարել բնական պրոցեսները։

Այսպիսով, «տարրական» մասնիկների մասին պատկերացումները, հաս-
կացությունները առաջանում են այն ժամանակ, երբ այդ մասնիկները որևէ
ձևով ներգործում են մարդու զգայարանների վրա, առաջացնում զգայություն-
ներ, որը և հաղորդվում է գլխուղեղին։

Ուրեմն, ատոմները, «տարրական» մասնիկները, մատերիայի այնպիսի
կոնկրետ ձևեր են, ինչպես մակրոմարմինները, որոնք գոյություն ունեն ան-
կախ մեր գիտակցությունից։

## 2. ՄԻԿՐՈՕԲՅԵԿՏՆԵՐԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԲՆՈՒՅԹԸ

«Տարրական» մասնիկների կառուցվածքի հարցը փիլիսոփայական իմաս-
տով կարևոր նշանակություն ունի։

Մատերիալիստական դիալեկտիկան ժխտում է իրերի ինչ-որ վերջնական,
անփոփոխ էությունը։ Որքան էլ մեզ պարզ թվա այս կամ այն օբյեկտը, նա

անսահման բարդ է։ «էլեկտրոնը նույնպես անսպառելի է,—ասում էր Լենինը,—
ինչպես և ատոմը, բնությունն անվերջ է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 334)։
Մատերիայի կառուցվածքի մասին ուսմունքը անցել է զարգացման բարդ
ու դժվարին ուղի։ Բնախույզները աշխատել են գտնել մատերիայի վերջին,
ամենապարզ մասնիկները։ Սակայն նրանց բոլոր փորձերն էլ ապարդյուն
են անցել, որովհետև մատերիայի պարզագույն և անբաժանելի ձևեր գո-
յություն չունեն, մատերիան անսահման է և անսպառ։ Այսպես, օրինակ, մինչև
XIX դարի վերջը «տարրական» մասնիկներ էին համարվում ատոմները։
XIX դարի 90-ական թվականներին ռադիոակտիվության և էլեկտրոնի հայտ-
նագործությունները ապացուցեցին, որ ատոմները մատերիայի վերջին սահ-
մանը, նրա ամենապարզ ձևերը չեն։ Այդ մեծ հայտնագործությունները խարխլ-
լեցին և հետագայում ամբողջովին կործանեցին մետաֆիզիկական պատկերա-
ցումները «վերջնական» անկառուցվածք մասնիկների մասին։
«Քիմիայի անտարրալուծելի և անքայքայելի տարրերը, որոնց թիվը շա-
րունակում է ավելի ու ավելի բազմանալ,— գրում էր Լենինը,— կարծես թե
ծաղրելով աշխարհի միասնությունը, դուրս էր գալիս տարրալուծելի և քայքա-
յելի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 14, 1958 թ. էջ 318)։ Չնայած դրան, այն ժա-
մանակ բնախույզների մեծ մասը մատերիայի կառուցվածքի մասին ուներ մե-
տաֆիզիկ պատկերացումներ։ Նրանք պնդում էին, թե մատերիայի կառուց-
վածքում, այնուամենայնիվ, կան պարզագույն «տարրական» մասնիկներ։ Այդ-
պիսի մասնիկներ ատոմից հետո նրանք համարում էին էլեկտրոնը։ Անհրա-
ժեշտ է նկատել, որ էլեկտրոնների մասին որպես մատերիայի վերջնական ան-
փոփոխ «աղյուսի» պատկերացումները գոյություն ուներ ոչ միայն այն ժա-
մանակ, երբ դեռ նոր էր հայտնագործվել էլեկտրոնը, այլև XX դարի 30-ական
թվականներին, երբ արդեն հայտնագործվել էին պրոտոնը, նեյտրոնը և նրանց
շատ հատկությունները, երբ ստեղծվել էր քվանտային մեխանիկան։ Օրինակ,
ֆիզիկոս Ֆրենկելը իր «էլեկտրադինամիկա» գրքում գրում էր.
«Մատերիան ոչ այլ ինչ է, եթե ոչ էլեկտրոնների ու պրոտոնների ամբող-
ջություն, վերջիններս պետք է դիտել որպես անկործանելի և անփոփոխելի»
(Я. И. Френкель, Электродинамика, 1934, с. 222):
Ֆրենկելը ժխտում էր միկրոմասնիկների կառուցվածքի մասին հարցա-
դրումն անգամ։ Նա գրում էր, որ մասնիկների կառուցվածքի պրոբլեմը պետք
է դասել այնպիսի սխոլաստիկական պրոբլեմների շարքին, որոնցով միջին դա-
րերում զբաղվում էին փիլիսոփաներն ու թեոլոգները։ Մենք էլեկտրոնները
պետք է մեկնաբանենք իբրև կետային լիցքեր, կամ «ուժային կենտրոններ»,
ինչպես այն պատկերացնում էին Լեյբնիցը և Բասկովիչը։
Քննադատելով էլեկտրոնի և ատոմի վերաբերյալ մետաֆիզիկական հա-
յացքները, Լենինը գրում է. «Իրերի «էությունը» կամ «սուբստանցը» նույնպես
հարաբերական են, նրանք օբյեկտների մարդկային իմացության խորացումն
են միայն արտահայտում, և եթե երեկ այդ խորացումը չէր գնում ատոմից այն
կողմը, այսօր՝ էլեկտրոնից և եթերից այն կողմը, ապա դիալեկտիկական մա-
տերիալիզմը պնդում է, որ ժամանակավոր, հարաբերական, մոտավոր բնույթ
ունեն մարդկային պրոգրեսիվ գիտության կողմից բնությունն իմանալու այդ
բոլոր նշանաձողերը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 14, էջ 334)։



Ժամանակակից ֆիզիկան փորձեր է անում ոչ միայն «տարրական» նոր մասնիկներ հայտնագործելու, այլև հայտնի մասնիկների կառուցվածքն ուսումնասիրելու ուղղությամբ, որի պարզաբանումը կարևոր աստիճան կհանդիսանա «տարրական» մասնիկների բազմակողմանի ճանաչման ճանապարհին։

Չնայած մասնիկների կառուցվածքի փորձնական ուսումնասիրության հրսկայական դժվարություններին, այնուամենայնիվ, գիտնականներին հաջողվել է որոշակի նվաճումների հասնել այդ բնագավառում։ Ներկայումս, երբ արդեն որոշ գիտելիքներ են կուտակվել մասնիկների կառուցվածքի մասին, բնականաբար առաջանում է այն հարցը, թե մասնիկների բարդ կառուցվածքը չի նշանակում արդյո՞ք նրանց կազմի մեջ մտնող ավելի փոքր «մասնիկների» առկայություն։

Մատերիան անսահման մասերի բաժանելու տեսության համաձայն ամեն մի մարմին, որքան էլ այն փոքր լինի, շատ մասեր է պարունակում։ Այդ տեսակետը հայեցողական է, քանի որ այն նկատի չի առնում մատերիայի որակական տարբերությունները։ Օրինակ՝ չի կարելի մոլեկուլները, ատոմները և ատոմների միջուկները մեխանիկորեն մասերի բաժանել՝ չխախտելով նրանց որակական առանձնահատկությունները։ Նախ՝ այն պատճառով, որ այդ մասնիկները հնարավոր չէ մասերի բաժանել, որովհետև նրանց մոտ այդպիսի մասեր գոյություն չունեն, և երկրորդ՝ որպես ամբողջություն նրանք անբաժանելի են։ Վերցնենք, օրինակ, սովորական կերակրի աղը։ Աղի կտորը մենք կարող ենք շատ մանր մասերի բաժանել։ Եթե այդ մասերի մեջ լինի թեկուզ մեկ մոլեկուլ, ապա աղի այդպիսի մասը, կամ մոլեկուլը օժտված կլինի աղի բոլոր քիմիական հատկություններով։ Իսկ եթե մոլեկուլը բաժանենք ատոմների, ապա այն կկորցնի աղի հատկությունները, կդադարի աղ լինելուց։ Ատոմները որպես մատերիայի ձև՝ մոլեկուլներ չեն, այլ որակական նոր գոյացումներ։ Մոլեկուլի քիմիական հատկություններն անբաժանելի են։ Այս իմաստով մոլեկուլն անբաժանելի է։

Եթե ատոմի թաղանթից հեռացնենք էլեկտրոնները, ատոմը որպես այդպիսին, կոչնչանա։ Հետևաբար, ատոմը որպես քիմիական տարր, նույնպես անբաժանելի է։

Դիալեկտիկական մատերիալիզմը սովորեցնում է, որ ամեն մի որակի համար գոյություն ունի քանակական փոփոխման սահման, որից դուրս տվյալ օբյեկտը դադարում է գոյություն ունենալուց. այն դառնում է նոր որակ, նոր օբյեկտ։ Այս տեսակետից էլ մոլեկուլները, ատոմները մատերիայի կառուցվածքի մեջ հանդիսանում են որոշ աստիճաններ։ Մատերիայի անսահման բաժանելության մասին պատկերացումը մտքի աբստրակցիա է։ Մատերիան մեխանիկական ճանապարհով անընդհատ բաժանել չի կարելի։

Քվանտային տեսությունը հաստատել է, որ հնարավոր չէ «տարրական» մասնիկները մեխանիկական ճանապարհով բաղադրիչ մասերի բաժանել, քանի որ նրանց մեջ այդպիսի մասեր գոյություն չունեն։ Բայց սա չի նշանակում, որ այդ մասնիկներն առհասարակ «անբաժանելի» են։ Այդ մասնիկների «բաժանումը» տեղի է ունենում նրանց՝ մեկը մյուսի փոխակերպվելու միջոցով։

Նոր մասնիկներն առաջանում են նախկին մասնիկների փոխակերպման պրոցեսում։ Այս կրկին անգամ հաստատում է դիալեկտիկական մատերիալիզմի դրույթն այն մասին, որ մատերիայի ոչ մի ձև, որքան էլ այն արտաքուստ պարզ թվա, անսահմանորեն բարդ կառուցվածք ունի։ Այս իմաստով էլ

մատերիայի ոչ մի ձև «տարրական» համարվել չի կարող: «Մենք դրանք հա-
մարում ենք «տարրական»,— գրում է ակադեմիկոս Իոֆֆեն,— նրա համար, որ
տվյալ պահին չենք կարող նյութի մեջ խոր կերպով թափանցել: Չիմանալով
նրանց բարդ հատկությունները և նրա հնարավոր փոխակերպումները, այն խոր
կերպով ճանաչել չենք կարող: Հայտնի է, օրինակ, որ մեզոնը արդեն երկու
միլիոներորդ վայրկյանում քայքայվում է, առաջացնելով էլեկտրոններ, կամ
պոզիտրոններ և նեյտրինոներ, որ մեզոնների քայքայումից առաջանում են
ավելի թեթև մեզոններ» (А. Ф. Иоффе, Основные представления современ-
ной физики, 1949, с. 54):

Մատերիայի ձևերի կառուցվածքն անխզելիորեն կապված է նրանց հատ-
կությունների հետ:

## 3. ՄԻԿՐՈՕԲՅԵԿՏՆԵՐԻ ՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲՆՈՒՅԹԻ ՄԱՏԵՐԻԱ-ԼԻՍՏԱԿԱՆ և ԻԴԵԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄԸ

Յուրաքանչյուր նյութական օբյեկտ ունի բազմաթիվ հատկություններ:
Դիալեկտիկական մատերիալիզմը սովորեցնում է, որ աշխարհում բոլոր մար-
մինններն ու երևույթները փոխադարձ պայմանավորվածության մեջ են, այդ
պատճառով էլ ոչ մի առարկա ճիշտ ընկալվել չի կարող, եթե այն վերցվի շըր-
ջապատող առարկաներից, միջավայրից ու պայմաններից դուրս: Ուստի առար-
կայի հատկություններն ուսումնասիրելիս առաջին հերթին պետք է ճանաչել
նրա՝ այլ առարկաների հետ ունեցած արտաքին կապերը, որոնց միջոցով և
որոնց շնորհիվ բացահայտվում են նյութական օբյեկտների հատկությունները,
որը հնարավորություն է տալիս ճանաչել նրանց ներքին էությունն ու կառուց-
վածքը:

Ժամանակակից ֆիզիկան բացահայտել է «տարրական» մասնիկների մի
շարք հատկություններ, որոնց միջոցով դրսևորվում են նրանց շարժման բը-
նույթն ու օրինաչափությունները:

«Տարրական» մասնիկներն ունեն լիցք, շարժման քանակ, շարժման քա-
նակի մոմենտ (սպին), մագնիսական մոմենտ, ալիքային ու կորպուսկուլյար
հատկություններ և այլն:

«Տարրական» մասնիկների էությունը հասկանալու տեսակետից կարևոր է
նրանց շարժման քանակի մոմենտը՝ սպինը, որն իրենից ներկայացնում է միկ-
րոաշխարհում նմանը չունեցող, մասնիկների հատուկ, սպեցիֆիկ քվանտա-
յին հատկություն: Սպինի միջոցով դրսևորվում է մասնիկների ներհատուկ
շարժման բնույթը, որը չի կարող փոխվել արտաքին պայմանների փոփոխու-
թյան հետ: Մասնիկների շարժման քանակի մոմենտի մեջ նոր ձևով դրսևոր-
վում է մատերիայի ու շարժման անխզելի կապը:

Սպինից և լիցքից բացի կարևոր են նաև մասնիկների մագնիսային կոր-
պուսկուլյար և ալիքային հատկությունները: Մենք ավելի հանգամանորեն կխո-
սենք մասնիկների կորպուսկուլյար և ալիքային հատկությունների մասին, քա-
նի որ դրանց մեկնաբանման հարցում է գլխավորապես դրսևորվում ֆիզիկոս-
ների մատերիալիստական և իդեալիստական հայացքները:

Նյուտոնն այն կարծիքը հայտնեց, որ լույսը կազմված է լույսի աղբյուրից
առաքվող կորպուսկուլներից (նյութի մանրագույն մասնիկներից): Դրան հա-
կառակ գոյություն ուներ նաև ալիքային պատկերացումը: Այդ երկու պատկե-



րացումներն էլ այն ժամանակվա գիտելիքների շրջանակներում ոչ միայն իրա-
րից տարբերվում էին, այլև բացառում էին մեկը մյուսին: Դա տեղի էր ունե-
ցել այն պատճառով, որ նյութին վերագրում էին կորպուսկուլյար, մասսային
հատկություններ, իսկ ալիքին՝ անընդհատություն և անկշռելիություն:

Ֆիզիկայի հետագա զարգացումը հանգեցրեց լույսի դիֆրակցիայի (լույսի
ալիքային շրջանցում) և ինտերֆերենցիայի (լույսի ալիքային գումարում)
հայտնագործմանը, իսկ ավելի ուշ Մաքսվելլի կողմից լույսի ալիքների և էլեկ-
տրամագնիսական տեսության մշակումը վերջնականապես հաստատեց ալի-
քային տեսությունը: Սակայն հետագայում այստեղ ևս առաջ եկան լուրջ դըժ-
վարություններ, երբ լույսի ալիքային տեսությունն սկսեցին կիրառել սև մար-
մինների նկատմամբ:

XIX դարի վերջին, ինչպես փորձարարական, այնպես էլ տեսական ֆիզի-
կայի բնագավառի ֆիզիկոսների ջանքերը ուղղված էին այդ դժվարությունների
հաղթահարմանը: Գերմանացի ֆիզիկոս Պլանկը ուշադրություն դարձրեց սև
մարմինների ճառագայթային էներգիայի բաշխման ոչ թե անընդհատության,
այլև նրա ընդհատության վրա: Նա եկավ այն հետևության, որ ճառագայթային
էներգիայի բաշխումը կատարվում է ոչ թե անընդհատ, այլ ընդհատումներով,
բաժիններով (քվանտներով): Քվանտային հիպոթեզը վճռականապես հակա-
սում էր կլասիկ ֆիզիկայի ամբողջ ոգուն, ըստ որի էներգիան ճառագայթվում
և կլանվում է անընդհատ: Պլանկի պատմական ծառայությունն այն է, որ քը-
վանտի հայտնագործությամբ նա կամուրջ գցեց ընդհատ նյութի ու անընդհատ
ճառագայթման միջև և սկիզբ դրեց մատերիայի անընդհատության և ընդհա-
տության (դիսկրետ) միասնության պատկերացմանը: Հետագայում Էյնշտեյնը
քվանտային հիպոթեզը օգտագործեց ֆոտոէֆեկտը հիմնավորելու համար:
1905 թվականին նա նորից վերադարձավ լույսի կորպուսկուլյար սկզբունքին
և էներգիայի դիսկրետ հատկությունը տարածեց լույսի վրա: Ըստ նրա, ինչ-
պես ջերմային էներգիան, այնպես էլ լույսը ընդհատ է, որի բաժինները՝ քը-
վանտները անվանեց ֆոտոններ (լույսի մասնիկներ): Քվանտային տեսու-
թյունն առաջին համոզիչ հաստատումը գտավ նյութի ատոմների կողմից էներ-
գիայի առաքման և կլանման երևույթներում:

Նույնքան համոզիչ ապացույցներ ստացվեցին ֆոտոէֆեկտի երևույթներից:
Փորձերը ցույց տվեցին, որ երբ մետաղները լուսավորում են ուլտրամանուշա-
կագույն լույսով, նրանց մակերեսից դուրս են թռչում էլեկտրոններ: Պարզվեց,
որ մետաղների մակերեսից անջատվող էլեկտրոնների թիվը կախված է լույսի
հաճախականությունից: Որքան մեծ է լույսի հաճախականությունը, այնքան
շատ էլեկտրոններ են հեռանում մետաղի մակերեսից: Էյնշտեյնը դրանից այն
հետևությունն արեց, որ մետաղից էլեկտրոններ կարող են դուրս թռչել, երբ
էլեկտրոնները կլանում են լույսի ֆոտոնները, որի շնորհիվ էլ նրանք հաղթա-
հարում են ձգողական ուժերը և դուրս թռչում մետաղից: Լույսի ճառագայթներն
այդ դեպքում ներկայացնում են մասնիկների հոսք, որոնք փոխազդեցության
մեջ մտնելով էլեկտրոնների հետ, դրսևորում են իրենց էներգիական և իմպուլ-
սային հատկությունները: Բայց հայտնի է, որ իրարից անջատ մասնիկների
հոսքը ալիք լինել չի կարող այն պատճառով, որ նա դիֆրակցիա և ինտերֆե-
րենցիա չի առաջացնում: Այդ դժվարությունից դուրս գալու միակ ելքն այն է,
որ ֆոտոնները, լույսի մասնիկները, դիտվեն ոչ որպես ալիք և ոչ էլ մասնիկ,
այլ որոշ չափով ալիք, որոշ չափով՝ մասնիկ: Եթե լույսը դիտվեր միայն որպես

ալիքային պրոցես, ապա անբացատրելի կմնային ֆոտոէֆեկտի, սև մարմնի ճառագայթման երևույթները և այլն։

Հետևաբար, լույսը սովորական ալիք չէ, քանի որ էլեկտրոնների վրա ներգործում է ամբողջական ֆոտոններով։

Այսպիսով, լույսը մի կողմից ալիքի նման ցրվում է հսկայական օբյեկտների մակերևույթների վրա, առաջացնում ինտերֆերենցիոն երևույթներ, մյուս կողմից՝ ունի մասնիկի հատկություններ, այսինքն՝ կարողանում է մի փոքր տարածության մեջ կենտրոնացնել իր ամբողջ էներգիան։

«Մատերիան, այսինքն՝ նյութը և լույսը,— ասում էր Վավիլովը,— միաժամանակ ունեն ալիքի և մասնիկի հատկություն, բայց դրանք ամբողջովին վերցրած ոչ ալիք են և ոչ էլ մասնիկ, և ոչ էլ մեկի ու մյուսի խառնուրդ» (С. И. Вавилов, Глаз и Солнце, 1950, с. 43-44):

Հետևաբար, «տարրական» մասնիկների նկատմամբ կիրառելի չեն կլասիկ ֆիզիկայի օրենքները։ Միկրոաշխարհում գործում են քվանտային մեխանիկայի օրենքները։ Սա չի նշանակում մի հավասարումը փոխել մեկ ուրիշով, այլ անցում է նոր պատկերացումների, նոր երևույթների։

Հարաբերականության տեսությունն սկզբունքորեն փոխեց տարածության և ժամանակի, մասսայի և շարժման մասին կլասիկ ֆիզիկայի պատկերացումները։ Սակայն մարմինների արագության, նրանց շարժման հետագծի մասին պատկերացումները թողեց այնպես, ինչպես դրանք գոյություն ունեին Գալիլեյի, Դեկարտի և Նյուտոնի ժամանակներում։

Քվանտային մեխանիկան այդ պատկերացումների մեջ մտցրեց արմատական փոփոխություններ, այն նոր ձևով բացատրեց «տարրական» մասնիկների տեղի և արագության փոխհարաբերությունը։

Կլասիկ ֆիզիկան առարկաների մասնիկների տեղը որոշում է կոորդինատների և արագության միջոցով։ Այդ նշանակում է, որ մասնիկը ժամանակի որևէ մոմենտում տարածության մեջ գրավում է խիստ որոշակի տեղ, որին համապատասխանում է շարժման որոշակի քանակ (իմպուլս) կամ արագություն։ Նման ձևով «տարրական» մասնիկների տեղի և իմպուլսի որոշումը քվանտային մեխանիկայում էապես սահմանափակվում է։

Ժամանակակից տեսությունը հաստատել է, որ միկրոօբյեկտների տարածական չափերը պայմանավորված են նրանց վիճակներով, այլ օբյեկտների հետ նրանց ունեցած փոխազդեցությամբ և էներգիայի փոփոխությամբ։

Անորոշությունների սկզբունքի համաձայն միկրոօբյեկտների քվանտային հատկությունները կախված են մասնիկների հետ կապված դաշտերի բնույթից, որոնք միաժամանակ չունեն կոորդինատների և իմպուլսի նշանակություն։

«Տարրական» մասնիկների տեղն ու իմպուլսը ոչ սովորական եղանակով որոշելու փաստից արվեց իդեալիստական հետևություն։ Բորը առաջ քաշեց, այսպես կոչված, «լրացման սկզբունքը», որի էությունն այն է, թե կոորդինատներն ու իմպուլսը որպես մեծություններ գտնվում են մեկը մյուսին լրացնելու հարաբերության մեջ։ Եթե էքսպերիմենտատորը ցանկանում է տարածության մեջ ճշտորեն որոշել միկրոօբյեկտների տեղը և իմպուլսը, նա այդ նպատակի համար պետք է օգտագործի երկու գործիք։ Այդ գործիքներից մեկը նա օգտագործում է միկրոմասնիկի իմպուլսը, իսկ մյուսը՝ մասնիկների կոորդինատները որոշելու համար։

Բորը, իսկ հետագայում Հայզենբերգը հանգեցին այն եզրակացության, թե



իբր չի կարելի խոսել, «ինքնին», «տարրական» մասնիկների մասին, քանի որ մասնիկները որպես այդպիսին առանց մարդու գոյություն չունեն։ Մի տիպի գործիք միացնելիս,— ասում են նրանք,— մասնիկը ծնվում է կորպուսկուլյար հատկությամբ, իսկ մեկ ուրիշ տիպի գործիք միացնելիս, իբր թե մասնիկը ծնվում է ալիքային հատկությամբ։

Խոշոր գիտնականներ Բորի և Հայզենբերգի կողմից արված ոչ ճիշտ, ագնոստիկական եզրակացությունն անմիջապես ընդօրինակվեց ռեակցիոն իդեալիզմի կողմից, մատերիալիզմի դեմ պայքարելու համար։ Այսպես, օրինակ, Մարխը գտնում է, որ մասնիկները որպես այդպիսին, մշտապես գոյություն չունեն, նրանք գոյություն ունեն միայն դիտման ակտերի մեջ։ Մարխի այս տեսակետը համընկնում է Բերկլու այն դրույթին, ըստ որի՝ «գոյություն ունենալ, նշանակում է ընկալվել»։

Բորի և նրա հետևորդների «լրացման սկզբունքի» մեթոդոլոգիական արատը կայանում է նրանում, որ «մասնիկի ալիքային հատկությունը դիտվում է ոչ թե որպես միկրոաշխարհի օբյեկտիվ բնութագիր, այլ իբրև միկրոսկոպիկ օբյեկտի և մակրոսկոպիկ գործիքի վերահսկողության փոխազդեցության արդյունք, որն անմիջականորեն հանգեցնում է միկրոաշխարհի երևույթների սուբյեկտիվ մեկնաբանմանը» (А. Соколов, Д. Иваненко, Квантовая теория поля, 1952, с. 184): Դրանով իսկ նրանք ժխտում են միկրոօբյեկտների ներքին, դիալեկտիկական միասնությունը։

Բանը նրանումն է, որ մատերիայի տարբեր հատկությունները միևնույն պայմաններում, միևնույն կապերի մեջ չեն կարող միևնույն որոշակիությամբ դրսևորվել։ Մատերիայի հատկությունների մի մասը տվյալ կապերում, փոխազդեցություններում կարող է հանդես գալ ավելի որոշակի, ավելի բացահայտ, իսկ մյուս հատկություններն ավելի քիչ բացահայտ և որոշակի։ Այլ պայմաններում, փոխազդեցություններում և արտաքին կապերում, հակառակը, կարող են որոշակի դառնալ մինչև այդ անհայտ, քիչ բացահայտ հատկությունները։ Ուրեմն ոչ մի անսովոր բան չկա, որ «տարրական» մասնիկները որոշ պայմաններում, որոշ տեսակի գործիքներ օգտագործելիս դրսևորում են իրենց ալիքային կամ կորպուսկուլյար հատկությունները։ Ֆոտոնները և էլեկտրամագնիսական ալիքներն անբաժան են լույսից, բայց բացահայտվում են տարբեր միջոցներով։ Ավելին, ակադեմիկոս Վավիլովի և նրա աշակերտների կողմից միևնույն գործիքներով կատարած փորձերում (թույլ լույսերի դիֆրակցիոններում) միաժամանակ դրսևորվել են լույսի թե ալիքային և թե կորպուսկուլյար հատկությունները։ Հետևաբար, հենց ֆիզիկական փորձերում ժխտվում է «լրացման սկզբունքը»։

Հրաժարվել ատոմների, էլեկտրոնների, պրոտոնների և մյուս մասնիկների ռեալ գոյությունից, նշանակում է ատոմիստիկայի մի շարք բնագավառներ՝ քվանտային մեխանիկան, էլեկտրոնիկան, հանգեցնել մտքի ինքնակամ կառուցումների։ Այդ հղի է ֆիզիկայի զարգացման համար գործնական վտանգով, քանի որ ժամանակակից ֆիզիկայում և աստղագիտության մեջ չկա մի բնագավառ, որտեղ ատոմները, էլեկտրոնները հետազոտության առարկա չլինեն։ Եվ, վերջապես, այդպիսի մոտեցումը նշանակում է մատերիական աշխարհի գոյության ժխտում։



# ՀԱՆՈՒՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ

Վ. ՄԵԺԼՈՒՄՅԱՆ

*Սովետական Միությունում շահույթը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության հիմնական և կենսական աղբյուրն է: Այն օգտագործվում է ժողովրդական տնտեսությունը զարգացնելու, հանրային ունեցվածքը հարստացնելու և աշխատավորության կենսամակարդակը բարձրացնելու համար: Պետական ձեռնարկության ստացած շահույթի մեկ երրորդը մնում է նրա տրամադրության տակ՝ արտադրության հետագա աճի, կոլեկտիվի և առանձին աշխատողների կուլտուր-կենցաղային վիճակը բարելավելու և պլանային այլ ծախսերի ապահովման համար:*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում տված զեկուցումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ շահույթի հարցը կարևոր նշանակություն ունի որպես ձեռնարկության գործունեության տնտեսական ցուցանիշ: «Ինչպես է աշխատում ձեռնարկությունը, վնասով թե շահույթով, կլանում է հասարակական միջոցները, թե բազմապատկում դրանք, այս հարցը հսկայական նշանակություն ունի: Առանց շահույթը հաշվի առնելու, անհնարին է որոշել, թե ինչ մակարդակով է վարվում ձեռնարկության տնտեսությունը և ինչպիսի ավանդ է մուծում նա ժողովրդական ֆոնդի մեջ»: Ահա թե ինչու տնտեսվարների, պարտիական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ պայքարել հանուն ձեռնարկության շահութաբերության:*

*Ռեսպուբլիկայում կան հարյուրավոր ձեռնարկություններ, ուր արտադրական տեղամասերը նորագույն տեխնիկայով ու սարքավորումներով զինելու, արտադրական կարողությունները լրիվ օգտագործելու, արտադրանքի որակն ու աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և ինքնարժեքն իջեցնելու շնորհիվ մեծ շահույթներ են ստանում: Այդպիսի ձեռնարկություններից են Ս. Մ. Կիրովի անվան, պոլիվինիլացետատի, Լենինի անվան հայէլեկտրո, ավտոդողերի գործարանները, Շահումյանի շրջանի տրիկոտաժի ֆաբրիկան և այլն:*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններն անցյալ տարի ստացան 140,4 միլիոն ռուբլու շահույթ: Բայց կան բազմաթիվ ձեռնարկություններ, որոնք վնասով են փակում տարին: Այսպես, 1962 թվականին Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի ձեռնարկություններից 73-ը պետությանը վնաս տվեցին 9,65 միլիոն ռուբլի, այդ թվում պլանավորված վնասաբեր ձեռնարկությունները՝ 8,2 միլիոն ռուբլու:*



*Չնայած ժողտնտխորհի ձեռնարկություններում 1963 թվականին աշխատանքի արտադրողականության պլանը ամբողջովին վերցրած կատարվել է, բայց 58 օբյեկտներ չեն կատարել ձեռնարկությունների ընդհանուր թվի մեկ աշխատողին ընկնող սահմանված առաջադրանքը, որի պատճառով ժողովրդական տնտեսությանը չեն տվել ավելի քան քսան միլիոն ռուբլու համախառն արտադրանք: Ավելին, մի շարք ձեռնարկություններում աշխատավարձի միջին աճը առաջ է անցել աշխատանքի արտադրողականության աճից:*

*Ժողտնտխորհի մի շարք ճյուղային վարչություններ ու գերատեսչություններ չեն կատարում ինքնարժեքի իջեցման առաջադրանքները: Շատ ձեռնարկություններում դեռևս մեծ չափերի են հասնում կորուստները, անարտադրողական ծախսերը, հումքի և նյութերի գերածախսը, որոնց պատճառով անցյալ տարի 42 ձեռնարկություններ 3,2 միլիոն ռուբլով բարձրացրին արտադրանքի ինքնարժեքը:*

*Որոշ ձեռնարկություններ իրենց վարչությունների գիտությամբ սովորել են վնասով աշխատելը և պետությունից դոտացիա ստանալը: Այդպես է դրությունը Ախթալայի Ռուդնիկ հանքերում, Լուսավանի ներտաշ հաստոցների, Երևանի հաստոցանորմալ, ավտոպահեստամասերի գործարաններում, մի շարք կոշիկի ֆաբրիկաներում և այլուր:*

*Վնասով աշխատող ձեռնարկությունների թիվը խիստ կպակասեր, եթե դրանց վերադաս օրգանները լրջորեն զբաղվեին և սիստեմատիկաբար վերլուծեին վնասաբերության պատճառները: Դժբախտաբար այդպես չէ: Շատ գործարաններում նույնիսկ չեն մշակվել կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ՝ շահութաբեր գործունեությունն ապահովելու, հակառակը, ժողտնտխորհի որոշ վարչություններ, իրենց ենթակա ձեռնարկություններում վնասաբերության պատճառներն ուսումնասիրելու և վերացնելու փոխարեն, առանձին դեպքերում պլանները հարմարեցրել են անտնտեսվարության հետևանքով կրած վնասների մակարդակին:*

*Այդպիսի «զիջումներ» անելը խիստ վնասակար է, քանի որ այդ պատրվակի տակ պատասխանատվության չեն ենթարկվում այն հիմնարկների ղեկավարները, որոնք տարիներ շարունակ թերակատարում են շահույթների պլանը: 1962 թվականին ժողտնտխորհի 69 ձեռնարկություններ 6.679 հազար ռուբլով թերակատարեցին շահույթների պլանը և, չփոխելով իրենց աշխատանքի ոճը, 1963 թվականին աշխատեցին այդ նույն տեմպերով, որի հետևանքով ռեսպուբլիկայի ժողտնտեսության օգուտների պլանը կատարվեց 95,4 տոկոսով:*

*Արդյունաբերական ձեռնարկություններում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վնասով աշխատող շատ ձեռնարկություններ կարող են դառնալ շահութաբեր, եթե լրիվ ծանրաբեռնվածությամբ օգտագործվեն արտադրական կարողությունները, պայքար տարվի կորուստների, շռայլումների, անտնտեսվարության և չարաշահումների դեմ, բարձրացվի աշխատանքի արտադրողականությունն ու արտադրանքի որակը, կրճատվեն անարտադրական ծախսերը:*

*Ձեռնարկության աշխատանքում լավագույն արդյունքի հասնելու համար հարկավոր է առավելագույն չափով օգտագործել արտադրության մեջ առկա բոլոր սարքավորումները, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները: Ռեսպուբլիկայի գործարաններում ու ֆաբրիկաներում ամեն տարի ներդրվում են նոր սարքավորումներ, մեքենաներ, հաստոցներ, որոնք մեծաց-*

նելով հիմնական ֆոնդերի գումարը, ավելացնում են նաև արտադրանքի վրա հաշվվող ամորտիզացիոն հատկացումները։ Նորագույն տեխնիկայի ներդրման հետ միասին, անհրաժեշտ է վերացնել արտադրության տեխնոլոգիայի բնույթի հետ կապ չունեցող բոլոր կորուստներն ու պարապուրդները, ամեն տեսակի միջոցառումների համար ծախսումները չափել ստացված արդյունքով, այսինքն՝ որոշել միջոցառումների տնտեսական արդյունավետությունը։

Սարքավորումների աշխատաժամանակի մեծացման և նրանց ինտենսիվ օգտագործման հարցերը պետք է միշտ լինեն պարտիական ու տնտեսական ղեկավարների ուշադրության կենտրոնում։ Սակայն եղած կարողությունները լրիվ չեն օգտագործվում Իջևանի գորգագործական, Լենինականի տեքստիլ կոմբինատում, Երևանի բամբակագործական ֆաբրիկայում, Արզնի հանքային ջրերի ու Երևանի ավտոպահեստամասերի գործարաններում, № 5 կոշիկի ֆաբրիկայում և մի շարք այլ ձեռնարկություններում։ Լենինականի տեքստիլ կոմբինատում լրիվ կարողությամբ չեն օգտագործվել սարքերը, որը հնարավորություն կտար էլ ավելի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և ավելացնելու թողարկվող արտադրանքի ծավալը։ Կոմբինատում ցածր է եղել հաստոցային պարկի օգտագործման գործակիցը։ Այսպես, օրինակ, ԱՏ—100—5 ավտոմատ հաստոցը (բյազի արտադրության համար), որի տեխնիկական հնարավոր նորմաների օգտագործման գործակիցը 0,9 տոկոս է, մեկ ժամում պետք է թողարկի 5,78 մետր, սակայն պլանավորել են 4,17 մետր կամ թե օգտագործման գործակիցը ընդունել են 0,72 տոկոս։ Գործվածքային հաստոց ԱՏ—100—2 (միտկալի արտադրության համար) տեխնիկական նորմայի 5,18 մետրի փոխարեն պլանավորել են 3,16 մետր, օգտագործման գործակիցն է 0,6 տոկոս։

Վերջերս այստեղ ուսումնասիրվել են հաստոցային պարկի ոչ լրիվ օգտագործման և պարապուրդների պատճառները. վառելիքի և էլեկտրաէներգիայի պակասի հետևանքով առաջացող պարապուրդներն զգալի չափով կրճատվել են, սակայն պարապուրդների մոտ մեկ երրորդը, որը հաստոցները յուղելու կամ մաքրելու ժամանակ դրանք կանգնեցնելու հետևանք է, դեռևս շարունակվում է։ Արտադրության պատշաճ կազմակերպման միջոցով, սարքավորումները մաքրելու և յուղելու ժամանակը կարելի է կրճատել աշխատանքի հետագա մեքենայացման ու մի շարք պրոֆիլակտիկ միջոցառումներով։

Կոմբինատում դազգահների լրիվ օգտագործման համար կարևոր նշանակություն ունի դրանք համապատասխան դետալներով և նյութերով ապահովելը։ Դեռևս լրիվ չափով չի կարգավորված մանածագործական նախապատրաստական ու թողարկող ցեխերի ներդաշնակ աշխատանքը, երբեմն մի ցեխի վատ աշխատանքի պատճառով խախտվում է մյուս ցեխերի ռիթմիկ աշխատանքը։ Այստեղ մեխանիկական սարքավորումների նորոգումների համար անհրաժեշտ գործիքների ու հարմարանքների մատակարարումը պատշաճ ձևով չի կատարվում։ Մատակարարող ձեռնարկությունները կոմբինատը չեն ապահովում սարքավորումների նորոգման համար կարևոր մի շարք նյութերով ու հարմարանքներով։

Արտադրական կարողությունների ինտենսիվ օգտագործման մակարդակը բարձրացնելու կարևոր գործոններից մեկը հերթափոխության գործակիցն է և նրա լրիվ ծանրաբեռնվածությունը։ Հաճախ, հատկապես ամառային ամիսներին, աշխատուժի պակասի և աշխատանքի չներկայանալու պատճառով, սարքավորումների պարապուրդների չափերը մեծ տոկոս են կազմում։ Այս և նման



կազմակերպական հարցերը ճիշտ լուծելու միջոցով, ռեսպուբլիկայի ժողտնտխորհի պլանային բաժնի հաշվումները ցույց են տալիս, որ կոմբինատը կարող է առանց լրացուցիչ ծախսերի մոտ 25 տոկոսով ավելացնել արտադրանքի քանակը, որը տարեկան կտա 920 հազար ռուբլու տնտեսում, իսկ արտադրանքը կավելանա տասնյակ միլիոն մետրով. այդ պայմաններ կստեղծի կատարելու յոթնամյա պլանը՝ իր բոլոր ցուցանիշներով։

Առավելագույն արդյունքների հասնելու համար հարկավոր է լրիվ կարողությամբ օգտագործել արտադրության մեջ բոլոր առկա սարքավորումները, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները։ Իսկ դա հնարավոր է այն ձեռնարկություններում, որտեղ վերացված են ամեն տեսակի կորուստները, անտնտեսվարությունը, որտեղ լիովին օգտագործվում են հիմնական ֆոնդերը, աշխատանքային ժամանակը, նյութական ռեսուրսները։ Ռեսպուբլիկայի գործարաններում ու ֆաբրիկաներում ամեն տարի ներդրվում են նոր սարքավորումներ, մեքենաներ, հաստոցներ, որոնք մեծացնելով հիմնական ֆոնդերը, ավելացնում են նաև արտադրանքի ժամանակը։ Նորագույն տեխնիկայի ներդրումն արդյունավետ կլինի այն դեպքում, երբ ավելի շատ արտադրանք ստանալու հետ կվերացվեն արտադրության տեխնոլոգիայի բնույթի հետ կապ չունեցող բոլոր կորուստները, ինչպես և պարապուրդները։

Ձեռնարկությունը շահութաբեր դարձնելու համար մեծ նշանակություն ունի որակյալ արտադրանքի թողարկումը։

Արտադրանքի որակի բարձրացումը նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու ինքնարժեքի իջեցմանը։ Այս ուղղությամբ բավականին դրական աշխատանք է տարվել ռեսպուբլիկայի ձեռնարկություններում։ Հումքի խնայողության, արտադրանքի որակի բարելավման շնորհիվ 1962 թվականին պլանից ավելի տնտեսվել է 3701 հազար ռուբլի։ Սակայն արտադրանքի որակի բարձրացման գործում դեռևս լուրջ թերություններ կան։ Հաճախ արդյունաբերական ձեռնարկություններն ապրանք են թողարկում, առանց հաշվի առնելու սպառողի պահանջարկը։ Դրա հետևանքով էլ մեծ քանակությամբ պատրաստի արտադրանք ընկած է առևտրական և մատակարարող կազմակերպությունների պահեստներում։ Սպառողական և առևտրական կազմակերպությունները հաճախ արդյունաբերական ձեռնարկություններից ապրանք չեն տանում ոչ թե նրա համար, որ բնակչությունն այդ ապրանքների պահանջը չունի, այլ նրա համար, որ այդ ապրանքներն իրենց տեսքով անհրապույր են և անորակ, չեն բավարարում սովետական մարդու ճաշակը։

Պայքարելով արտադրանքի բարձր որակի համար, անհրաժեշտ է ամենից առաջ հայտաբերել խոտանի պատճառները, կոլեկտիվ ուժերով վերացնել դրանք։ Խոտանը ամենից առաջ հարվածում է աշխատավորների շահերին։ Այսպես, 1957—1962 թվականների ընթացքում արտապլանային խոտան արտադրանքը ժողտնտխորհի ձեռնարկություններում կազմել է ավելի քան 2580 հազար ռուբլի, այդ թվում միայն 1962 թվականին՝ 1181 հազար, 1963-ի առաջին կիսամյակում՝ 488 հազար ռուբլի։

Անցյալ տարի ռեսպուբլիկայի առևտրի մինիստրության հայկոշիկ առևտրի բազան ռեսպուբլիկայի կոշիկի գործարանների թողարկած ավելի քան 55 հազար զույգ առաջին տեսակի կոշիկն իջեցրել է երկրորդ տեսակի. անորակ լինելու պատճառով ավելի քան 25 հազար զույգը վերադարձվել է ֆաբրիկաները։ Միայն այս տարվա մարտ ամսին Լենինականի «Լենկոշ» ֆաբրիկայի ար-

*տադրած կոշիկների ավելի քան 30 տոկոսի կամ տեսակներն են իջեցված, կամ վերադարձվել են ֆաբրիկա։*

*1962 թվականին վատորակ արտադրանք թողարկելու պատճառով վերադարձվել է Հոկտեմբերյանի կոնսերվի գործարանին 280 հազար, Երևանի կոնսերվի գործարանին՝ 77 հազար, Մեղրիի կոնսերվի գործարանին 11 հազար ռուբլու արտադրանք և այլն։*

*Արդյունաբերական առանձին ձեռնարկություններում հաճախ չեն հետևում արտադրական բազմատեսակ օպերացիաների ճիշտ կատարմանը, որի հետևանքով էլ որակյալ արտադրանք չի թողարկվում։ Վերցնենք, օրինակ, տեքստիլ արդյունաբերությունը։ Մանելու և գործելու պրոցեսում առաջանում են հաստացած թելեր, պատռվածքներ, աղավաղում են նախշերը, առաջանում են յուղաբծեր և այլն. այդ ամենը զգում է արտադրանքի որակը։ Այս և նման մի շարք թերությունների պատճառով թեթև արդյունաբերության վարչության ձեռնարկություններում մեծ տոկոս է կազմում անորակ արտադրանքը։ Բավական է նշել, որ 1963 թվականին հումքի և նյութերի անխնա օգտագործման պատճառով Երևանի մահուդի և նուրբ բրդյա գործվածքների կոմբինատի սանրվող մանվածքային և մահուդի արտադրության աշխատատեղամասերում տեղի է ունեցել 92,5 տոննա հումքի կորուստ։*

*Խոտան արտադրանքի հիմնական պատճառներն են՝ տեխնոլոգիական պրոցեսների խախտումը, արտադրության անբավարար կազմակերպումը և պատասխանատվության բացակայությունը։ Շատ տեղերում դեռևս անհրաժեշտ պայքար չի մղվում խոտանարարների դեմ. հաճախ խոտան արտադրանքի համար կազմված ակտերը կրում են ձևական բնույթ, չեն բացահայտում խոտանի պատճառները, իսկ թողարկողները հազվադեպ են պատասխանատվության ենթարկվում, երբեմն էլ խոտան արտադրանքի արժեքի մեծ մասը դուրս է գրվում արտադրության հաշվին։ Նման վիճակից դուրս գալու համար անհրաժեշտ է գործարաններում ու ֆաբրիկաներում մեծ ուշադրություն հատկացնել գործող կոնստրուկցիայի կատարելագործմանը, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացմանը, առաջավոր տեխնոլոգիայի ներդրմանը և արտադրության աշխատողների որակավորման բարձրացմանը։*

*Վերջին հինգ տարիների տնտեսական վերլուծությունը ցույց է տալիս, որ անարտադրողական ծախսերի գումարը ժողտնտխորհի ձեռնարկություններում հասնում է մոտ 24 միլիոն ռուբլու։ Այդ նշանակում է, որ անմիջապես արտադրության պրոցեսում ստեղծվող եկամուտների ու շահույթների քանակը համեմատաբար նվազում է։ Նշված անարտադրողական ծախսերի մեջ հատկապես մեծ է տույժերի ու տուգանքների տեսակարար կշիռը, որոնք առաջանում են այն պատճառով, որ ձեռնարկություններն ու կազմակերպությունները ժամանակին չեն ապահովում այն պայմանագրային պարտավորությունների կատարումը, որոնք կապված են առևտրական կազմակերպությունների և զանազան հիմնարկությունների հետ։ 1963 թվականին ռեսպուբլիկայի տրանսպորտային հիմնարկություններ մոտ 720 հազար ռուբլի տուգանքներ բազմաթիվ հիմնարկ-ձեռնարկություններ*
*ու տույժեր են տվել, որից 390 հազարը տվել են ժողտնտխորհի, իսկ 35 հազարը*
*շինարարության մինիստրության ձեռնարկություններն ու այլ հիմնարկություն-*
*ներ։ Թեթև արդյունաբերության ձեռնարկությունները տնտեսական պայմանա-*
*գրերը խախտելու պատճառով տվել են ավելի քան 1007 հազար ռուբլի տու-*
*գանք ու տույժեր։ Բավականին շատ տուգանքներ ու տույժեր են մուծել Երևանի*



*մահուդի և նուրբ բրդյա գործվածքների կոմբինատը, Երևանի № 1 կարի, № 1, 2, 3 կոշիկի ֆաբրիկաները և այլն։ Ժողտնտխորհի թեթև արդյունաբերության վարչությունը, փոխանակ խորանալու այդ ձեռնարկությունների տնտեսական գործունեության մեջ և անարտադրողական ծախսերի կրճատման ուղիներ նշելու, երբեմն հաշտվում է ստեղծված վիճակի հետ։*

*Ամեն տարի վերանայվել են Լենինականի «Լենկոշ» ֆաբրիկայի պլանները և զարմանալի է, որ համախառն արտադրանքի 1962 թվականի պլանն ավելի ցածր էր, քան 1961 թվականինը։*

*1961—1962 թվականներին այստեղ ամեն մի զույգ դպրոցական բատինկաների (արտիկուլ 3264) երեսացուի համար նախատեսված է եղել 17,4 քառ. դմ կաշի, դպրոցական կիսաբատինկաների համար (արտիկուլ 4264)՝ 13,3 քառ. դմ, սանդալների համար՝ 3,03 քառ. դմ., 1963 թվականին դրանց դիմաց նորմաները համապատասխանորեն ավելացել են՝ 7,4, 3,1, 5,6 տոկոսով։ Այսպիսով, եթե 1963 թվականին ինքնարժեքի պլանավորման հիմքը վերցնելու լինենք 1962 թվականի նորմաները, ապա 1963 թվականին միայն այդպիսի արտադրանքի գծով պլանային արտադրանքի ինքնարժեքը պետք է իջեցվեր 60—70 հազար ռուբլով։*

*Այստեղ տարեցտարի աճում են ընդհանուր ֆաբրիկային ծախսերը. վերջին երեք տարում այդ ծախսերի գումարն զգալի չափով ավելացել է, որը հիմնականում բացատրվում է անարտադրողական ծախսերի խիստ ավելացմամբ։*

*Ահա «Լենկոշ» ֆաբրիկայի վերջին տարիների անարտադրողական ծախսերը։*

| *Ըստ հոդվածների անարտադրողական ծախսերի գումարը* | *1961 թ.* | *1963 թ.* |
|---|---|---|
| *Տնտեսական պայմանագրի խախտման պատճառով (ռուբլիներով)* | 13322 | 18513 |
| *որից՝* | | |
| *ոչ ճիշտ սարտիրովկայի պատճառով* | 923 | 744 |
| *պատրաստի արտադրանքի վերադարձման պատճառով* | 10745 | 10929 |
| *պետբանկից ժամկետանց վարկ ստանալու պատճառով* | 1554 | 804 |
| *թերբեռնվածության պատճառով* | — | 6036 |

*«Լենկոշ» ֆաբրիկայում տարեցտարի ավելանում են անարտադրողական*
*ծախսերը։ Այսպես 1961 թվականին ընդհանուր գործարանային ծախսերի հա-*
*մար նախատեսված է եղել 25 հազար ռուբլի, մինչդեռ ծախսվել է 76 հազար*
*ռուբլի, 1962 թվականին 29 հազար ռուբլու դիմաց՝ 69 հազար ռուբլի։ Վիճակը*
*նույնն էր 1963 թվականին։*

*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ որակը բարելավելու և ան-*
*արտադրողական ծախսերը կրճատելու շնորհիվ ֆաբրիկայում 179 հազար*
*ռուբլու վնասի փոխարեն կարելի է ստանալ 25 հազար ռուբլու շահույթ։*

*Ձեռնարկությունների եկամտաբերության վրա բացասաբար են անդրա-*
*դառնում այնպիսի կորուստները, որոնք անմիջապես դուրս են գրվում ձեռնար-*
*կությունների ու հիմնարկությունների շահույթներից։ Այդպիսիք են նախորդ*
*տարիների վնասները, փտումներից ու յուրացումներից առաջացած անհու-*
*սալի պարտքերը և այլն։ Պարտքերի գումարները, հատկապես, մեծ չափերի*

են հասնում արդյունաբերության, շինարարության և առևտրի ձեռնարկություններում։

Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստրության կատարած կոնտրոլ ստուգումները ցույց են տալիս, որ միայն 1963 թվականին պետական միջոցներից անօրինական ծախսերի գումարը կազմում է շուրջ 2 միլիոն ռուբլի։ Չպետք է մոռանալ, որ այդպիսի կորուստների վերաբերյալ տվյալները բոլորովին էլ չեն արտահայտում այն պատկերը, որ գոյություն ունի տեղերում։ Ձեռնարկություններում կան այնպիսի վնասներ ու կորուստներ, որոնք ուղղակի անդրադառնում են եկամտաբերության վրա, չեն երևում հաշվետվություններում ու բացահայտվում են միայն ֆինանսական փաստաթղթերի ստուգումներով։

Այս ուղղությամբ դրությունն անմխիթար է շինարարության մինիստրության ձեռնարկություններում։ Առ 1-ը դեկտեմբերի 1963 թվականի շինարարության գծով վնասները կազմում են 1,484 հազար ռուբլի։ Աշխատանքի ինքնարժեքի իջեցման, շինարարական նյութերի գերածախսի, չարաշահումների ու անտնտեսվարության պատճառով 1963 թվականին շինարարության մինիստրության Շրջարդշին տրեստում վնասները կազմեցին 552 հազար, «Ախթալաշինում»՝ 193, № 5 տրեստում՝ 318 հազար ռուբլի և այլն։

Արտադրական տարբեր ձեռնարկություններում տարբեր ու բազմազան են շահութաբերության ուղիները։ Ինքնին հասկանալի է, որ բոլորը թվարկել հնարավոր չէ, քանի որ տարբեր գործարաններում այդ ֆակտորները դրսևորվում են տարբեր ձևերով. բայց այս կապակցությամբ անհրաժեշտ ենք համարում նշել, որ տեղերում պետք է ուժեղացնել ֆինանսական հսկողության այնպիսի կարևոր ձևեր, ինչպիսիք են՝ հաշվապահական հաշվառումը և ներգերատեսչական վերահսկողությունը։

Մեր պարտիան տնտեսական շինարարության անվերապահ օրենքն է համարում՝ հանուն հասարակության շահերի, նվազագույն ծախսումներով հասնել առավելագույն արդյունքների։ Դրա համար անհրաժեշտ է հանգամանորեն ուսումնասիրել ձեռնարկության էկոնոմիկայի վիճակը, իրականացնել կազմակերպական և տեխնիկական միջոցառումներ արտադրության քանակական ու որակական ցուցանիշները բարելավելու նպատակով։ Յուրաքանչյուր գործարանի, ֆաբրիկայի, հանքի և շինարարական օբյեկտի պարտիական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպության առաջնահերթ խնդիրն է՝ արտադրական տեղամասերը հագեցնել նորագույն տեխնիկայով, լրիվ կարողությամբ օգտագործել սարքավորումներն ու մեխանիզմները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունն ու արտադրանքի որակը, դրանով իսկ ապահովել ձեռնարկության շահութաբերությունը։





# ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Գ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը երկրի ազգային հարստության էական մասն են։ Արտադրության հիմնական ֆոնդերի ծավալը երկրի արտադրական ապարատի հզորության ցուցանիշն է, ուստի նրանց քանակական աճը և որակական կատարելագործումը վճռական նշանակություն ունի սոցիալիստական ընդլայնված վերարտադրության համար։ Սոցիալիստական ընդլայնված վերարտադրությունն ապահովվում է ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի անշեղ աճը։ Սոցիալիստական վերարտադրության մեջ հիմնական ֆոնդերի նշանակության, նրանց վերարտադրության և շրջապտույտի առանձնահատկությունների պարզաբանումը մեծ կարևորություն ունի հիմնական ֆոնդերը ճիշտ օգտագործելու և արդյունաբերությունը բարձրացնելու տեսակետից։

## 1. ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ԲՆՈՒԹԱԳԻՐԸ

Ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը սոցիալիստական հասարակարգին հատուկ տնտեսական կատեգորիա են և արտահայտում են արտադրության միջոցների հանրային սեփականությամբ պայմանավորված սոցիալիստական արտադրական հարաբերությունները։

Հիմնական ֆոնդերը բաժանվում են երկու խմբի՝ արտադրական հիմնական ֆոնդերի և ոչ-արտադրական (սպառողական) հիմնական ֆոնդերի։

Արտադրական հիմնական ֆոնդերն ըստ իրենց բնաձևի նյութական բարիքների արտադրության բոլոր ոլորտներում օգտագործվող արտադրական գործիքների ու աշխատանքի միջոցների ամբողջությունն են (արտադրական շենքեր, կառույցներ, սարքավորումներ, մեքենաներ, գործիքներ, փոխադրական միջոցներ և այլն), որոնք աշխատանքի առարկայի կամ հում նյութի հետ միասին կազմում են ամեն մի արտադրության նյութական գործոնները, կամ արտադրության միջոցները։

Ի տարբերություն արտադրական հիմնական ֆոնդերի, ոչ-արտադրական հիմնական ֆոնդերը անմիջականորեն նյութական բարիքների արտադրության պրոցեսին չեն մասնակցում, այլ կոչված են բավարարելու ամբողջ հասարակության որոշակի սպառողական պահանջմունքները և ըստ իրենց բնաձևի

հանդես են գալիս բնակելի, դպրոցական, հիվանդանոցային, վարչական շենքերի, կուլտուրական հաստատությունների (թատրոնների, կինոթատրոնների, գրադարանների, թանգարանների), սանատորիաների և հանգստի տների ու կոմունալ ձեռնարկությունների ձևով։

Ապրանքա-դրամային հարաբերությունների պայմաններում, որոնք անխուսափելի են սոցիալիզմի շրջանում, հիմնական ֆոնդերը հաշվի են առնվում և նրանց վերարտադրությունը պլանավորվում է ո՛չ միայն ըստ բնաձևի, այլև դրամա-արժեքային ձևով։ Գոյություն ունի հիմնական ֆոնդերի դրամա-արժեքային հաշվառման երեք հիմնական ձև.

ա) ըստ սկզբնական արժեքի, բ) ըստ սկզբնական արժեքի հանած նրանց մաշվածքը, և գ) ըստ վերականգնման արժեքի։

Տարիների ընթացքում գների փոփոխման հետևանքով հիմնական ֆոնդերի դրամա-արժեքային հաշվառման մեջ մեծ խառնաշփոթություն էր առաջացել և հիմնարկ-ձեռնարկությունների բալանսներում այդպիսիք հաշվի էին առնվում խառը գներով. այդ խանգարում էր հիմնական ֆոնդերի ծավալի մասին ճիշտ պատկերացում կազմելուն և դժվարացնում նրանց արժեզրկման համապատասխան ճիշտ ամորտիզացիոն նորմաների սահմանումը։

Այս թերությունները վերացնելու նպատակով 1960 և 1962 թթ. ընթացքում անցկացվեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի գլխավոր վերագնահատում, ըստ նրանց վերագնման արժեքի։ Այդ հնարավորություն տվեց որոշելու հիմնական ֆոնդերի ծավալը, մշակելու և գործադրության մեջ դնելու ամորտիզացիոն նոր նորմաներ, որոնք ապահովում են հիմնական ֆոնդերի արժեքի վերականգնումը, այն չափով, ինչ չափով որ դրանք կորցնում են այդպիսիք, ինչպես ֆիզիկական, այնպես էլ բարոյական մաշվածքի հետևանքով։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր հիմնական ֆոնդերի արժեքը, ներառյալ նաև քաղաքացիների անձնական սեփականությունը կազմող հիմնական ֆոնդերը, մինչև 1960 թվականի հունվարի 1-ի տվյալներով կազմել են մոտ 300 միլիարդ ռուբլի, իսկ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը՝ 2 միլիարդ ռուբլի, որից պետական ու կոոպերատիվ կազմակերպությունների հիմնական ֆոնդերը մոտ 1,4 միլիարդ, կոլտնտեսություններինը՝ 212, իսկ քաղաքացիների անձնական սեփականությունը կազմող հիմնական ֆոնդերը՝ 360 միլիոն ռուբլի։

## 2. ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Սոցիալիստական ընդլայնված վերարտադրությունը, նրա բարձր տեմպերն ապահովելու համար առաջնակարգ նշանակություն ունի ոչ միայն հիմնական ֆոնդերի արագ աճը, այլև նրանց ճիշտ, ռացիոնալ կառուցվածքը։ Հիմնական ֆոնդերի գերակշռող մասը պետք է կազմեն արտադրական հիմնական ֆոնդերը, իսկ արտադրական հիմնական ֆոնդերի մեծ մասը պետք է օգտագործվի նյութական արտադրության ամենավճռական ճյուղերում։

ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի ճյուղային կառուցվածքը մինչև 1960 թվականի հունվարի 1-ի դրությամբ հետևյալ պատկերն է ներկայացնում.



(Տոկոսներով ամբողջի նկատմամբ)

| | ՍՍՌՄ | Հայկական ՍՍՌ |
|---|---|---|
| Ընդամենը հիմնական ֆոնդեր այդ թվում՝ | 100 | 100 |
| 1. Արտադրական հիմնական ֆոնդեր | 58,7 | 57,5 |
| արդյունաբերության | 27,0 | 26.5 |
| շինարարության | 1,8 | 1,5 |
| գյուղատնտեսության | 14,1 | 18,5 |
| տրանսպորտի | 12,4 | 8,2 |
| առևտրի և հասարակական սննդի | 1,4 | 1,3 |
| մթերումների | 0,7 | 0,9 |
| 2. Ոչ արտադրական ֆոնդեր դրանցից՝ | | |
| բնակարանային տնտեսութ. | 31,8 | 29,2 |
| կոմունալ տնտեսութ. | 2,0 | 3,0 |
| առողջապահութ., գիտության արվեստի, լուսավորութ. | 7,5 | 8,9 |

Այսպիսով, նախ ակնհայտ է, որ արտադրական հիմնական ֆոնդերը թե ՍՍՌՄ-ում և թե Հայկական ՍՍՌ-ում, ամբողջ հիմնական ֆոնդերի գերակշռող մասն են կազմում, երկրորդ՝ արտադրական հիմնական ֆոնդերի մոտ կեսը պատկանում են ժողովրդական տնտեսության ամենաառաջատար ճյուղին՝ արդյունաբերությանը։ Եվ այդ օրինաչափ է։

Ոչ-արտադրական հիմնական ֆոնդերի գերակշռող մասը կազմում է բնակարանային տնտեսությունը։ Այդ ցույց է տալիս, որ մոտակա տարիներին պետք է վերանա բնակարանների պակասը։ Կապիտալ ներդրումներում տեղի ունեցող փոփոխություններն իրենց արտացոլումն են գտնում նաև հիմնական ֆոնդերի ճյուղային կառուցվածքներիմեջ։ Ահա թե ինչու հիմնական ֆոնդերի ճյուղային կառուցվածքի մեջ այժմ ստեղծված համամասնությունը հետագայում կփոխվի, քանի որ առաջիկայում արդյունաբերության ոլորտում զբաղեցված արտադրական հիմնական ֆոնդերի մեջ զգալի չափերով կավելանա քիմիական արդյունաբերության տեսակարար կշիռը, իսկ ոչ-արտադրական հիմնական ֆոնդերի մեջ ավելի կբարձրանա բնակարանային տնտեսության տեսակարար կշիռը։ Այդ տեղաշարժերի հետևանքով առաջացող հիմնական ֆոնդերի ճյուղային կառուցվածքը նույնպես անփոփոխ չէ, հետագայում այն կենթարկվի նոր փոփոխությունների, առաջացած նոր խնդիրների և կապիտալ ներդրումների ուղղությունների մեջ տեղի ունենալիք նոր փոփոխություններին համապատասխան։

Այդ տեսակետից հետաքրքրական են ռեսպուբլիկայի արդյունաբերության հիմնական ֆոնդերի ճյուղային կառուցվածքի մեջ տեղի ունեցող փոփոխությունների տենդենցները։

(Տոկոսներով ամբողջի նկատմամբ)

| | 1955 թ. | 1958 թ. | 1960 թ. | 1962 թ. | |
|---|---|---|---|---|---|
| | | | | Հայկ. ՍՍՌ | ՍՍՌՄ |
| Ամբողջ արդյունաբերություն այդ թվում՝ | 100 | 100 | 100 | 100 | 100 |
| Էներգետիկա | 32,5 | 31,6 | 30,2 | 27,1 | 13,5 |
| Մեքենաշինություն և մետաղամշակություն | 9,9 | 12,3 | 14.8 | 16.4 | 20,0 |
| Քիմիական արդյունաբերություն | 13,0 | 11,3 | 10.8 | 15,7 | 6,5 |
| Փայտամշակություն և անտառամշակություն | 2.0 | 2 2 | 2.2 | 1.7 | 5.9 |
| Շինանյութերի արդյունաբերություն | 4,2 | 5.3 | 6.3 | 6.9 | 6,6 |
| Թեթև արդյունաբերություն | 10.8 | 9,6 | 9 0 | 7,8 | 4,4 |
| Սննդի արդյունաբերություն | 13.3 | 12.4 | 12.0 | 10.5 | 9,3 |

Բերված տվյալները ցույց են տալիս այն տարբերությունը, որ կա ՍՍՌՄ արդյունաբերության և Հայկական ՍՍՌ արդյունաբերության ճյուղային կառուցվածքի միջև։ Թեև էներգետիկայի հիմնական ֆոնդերը ռեսպուբլիկայում արդյունաբերության արտադրական հիմնական ֆոնդերի մեջ վերջին 7 տարիների ընթացքում ավելացել են 73 տոկոսով, սակայն նրա տեսակարար կշիռը որոշ չափով իջել է։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ վերջնականապես ձևավորվել են նրա հետևյալ հիմնական ճյուղերը՝ մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, սննդի և թեթև արդյունաբերությունը։ Ճիշտ է, էներգետիկայում զբաղված է արդյունաբերության արտադրական հիմնական ֆոնդերի քառորդ մասից ավելին, բայց այն ոչ միայն արդյունաբերության, այլև ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմության բազան է։ Սակայն մեծ տարբերություն կա արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի ճյուղային կառուցվածքի և նրա համախառն արտադրանքի ճյուղային կառուցվածքի միջև։ Եթե, օրինակ, հիմնական արտադրական ֆոնդերի տեսակետից էներգետիկան առաջին տեղն է գրավում, ապա համախառն արտադրանքի տեսակետից այն գրավում է վերջին տեղը, եթե թեթև արդյունաբերությունը հիմնական արտադրական ֆոնդերի տեսակետից վերջին տեղերից մեկում է, ապա համախառն արտադրանքի տեսակետից առայժմ գրավում է առաջին տեղը։ Կնշանակի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը որոշվում է ոչ միայն արտադրական հիմնական ֆոնդերի ծավալով, այլ արդյունաբերության համապատասխան ճյուղերում զբաղված բանվորների թվաքանակով, ինչպես և թողարկվող արտադրանքի համար օգտագործված հումքի և օժանդակ նյութերի ծավալով։ Ինչպես հայտնի է, էներգետիկան զբաղեցնում է շատ քիչ թվով բանվորներ և հումք չի օգտագործում, մինչդեռ թեթև արդյունաբերությունն զբաղեցնում է մեծ թվով բանվորներ և օգտագործում է մեծ քանակությամբ թանկարժեք հումք։

Ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի կառուցվածքն ըստ դրանց տեսակների 1960 թվականի հունվարի 1-ի դրությամբ հետևյալ պատկերն է ներկայացնում։

(Տոկոսներով ամբողջի նկատմամբ)

| | ՍՍՌՄ | Հայկական ՍՍՌ | Այդ թվում արդյուն. |
|---|---|---|---|
| Ընդամենը | 100 | 100 | 100 |
| այդ թվում՝ | | | |
| Շենքեր | 50 5 | 48,8 | 29,8 |
| Կառույցներ և փոխանցող սարքեր | 21,4 | 25,5 | 38,6 |
| Ուժային մեքենաներ և սարքավորումներ | 4.9 | 3.9 | 6,4 |
| Բանող մեքենաներ և սարքավորումներ | 14,8 | 13,1 | 20,5 |
| Տրանսպորտային միջոցներ | 4.5 | 2.9 | 1,1 |
| Այլ հիմնական ֆոնդեր | 3,8 | 5,8 | 3,6 |

Այսպիսով, ամբողջ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի կեսը կազմում են շենքերը (արտադրական, բնակելի, կուլտուր-լուսավորչական, վարչական, հիվանդանոցային և այլն)։ Համեմատաբար դրանք ցածր տեսակարար կշիռ ունեն արդյունաբերության մեջ։

Ինչ վերաբերում է հիմնական ֆոնդերի ամենաակտիվ մասին, բանող



մեքենաներին և սարքավորումներին, ապա դրանք կազմում են ամբողջ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի 1/7, իսկ արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի՝ 1/5 մասը։

Արտադրական հիմնական ֆոնդերի տեսակներն արդյունաբերության տարբեր ճյուղերում տարբեր տեսակարար կշիռ ունեն։ Այդ պայմանավորված է տվյալ արտադրության յուրահատուկ բնույթով։ Բայց բոլոր դեպքերում էլ շատ կարևոր է ճիշտ, ռացիոնալ համամասնություն հաստատել նրանց ակտիվ ու պասսիվ մասերի միջև։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ ինչպես ՍՍՌՄ-ում ամբողջությամբ վերցրած, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ում արտադրական հիմնական ֆոնդերի պասսիվ մասի տեսակարար կշիռը բարձր է, որը հետևանք է կապիտալ ներդրումների կառուցվածքում եղած թերությունների։

## 3. ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Ինչպես սոցիալիստական ամբողջ վերարտադրությունը, այնպես էլ նրա կարևորագույն պայմաններից ու բաղկացուցիչ մասերից մեկը՝ արտադրական հիմնական ֆոնդերի ընդլայնած վերարտադրությունը տեղի է ունենում պլանային ձևով և դա նրա համաչափ ու բարձր տեմպերով զարգանալու գլխավոր պայմաններից մեկն է։ Ահա թե ինչու ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերն աճում են այնպիսի տեմպերով, որպիսիք անհնար են կապիտալիզմի օրոք։ Ամբողջ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը ՍՍՌՄ-ում 1962 թվականին, 1928 թվականի համեմատությամբ, աճել են 7,3 անգամ, ըստ որում արտադրական հիմնական ֆոնդերը 9,7 անգամ, այդ թվում արդյունաբերության և շինարարության հիմնական ֆոնդերը՝ 46 անգամ։ Ոչ արտադրական ֆոնդերը նույն ժամանակամիջոցի ընթացքում ավելացել են 5,3 անգամ։

Տվյալները ցույց են տալիս, որ հիմնական ֆոնդերի աճի տեմպերը գնալով արագանում են. հատկապես նկատելի է այդ տեմպերի արագացումը վերջին տարիներին։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրական հիմնական ֆոնդերը 1962 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճել են 212, իսկ 1958 թվականի համեմատությամբ՝ 161 տոկոսով։ Բնորոշ է, որ յոթնամյակի անցած հինգ տարիներին ռեսպուբլիկայի արդյունաբերության հիմնական ֆոնդերը համարյա կրկնապատկվել են։ Հիմնական ֆոնդերի ընդլայնած վերարտադրության հիմնական աղբյուրը կապիտալ ներդրումներն են։ Իսկ կապիտալ շինարարության ծավալումը ռեսպուբլիկայում հրամայողաբար պահանջեց խիստ զարգացնել շինանյութերի արդյունաբերությունը. ուստի պատահական չէ, որ արդյունաբերության հենց այդ ճյուղի հիմնական ֆոնդերը վերջին տարիներին աճեցին շատ արագ տեմպերով. այսպես՝ 1962 թվականին շինանյութերի արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերը, 1955 թվականի համեմատությամբ աճեցին 4,5 անգամ, մինչդեռ մեքենաշինության հիմնական ֆոնդերը՝ 3,5, իսկ քիմիական արդյունաբերության հիմնական ֆոնդերը՝ 2,5 անգամ։

1959—1962 թթ. ընթացքում արդյունաբերության մեջ ներդրվել է 421 մլն. ռուբլու կապիտալ, այսինքն՝ ավելի, քան նախորդ 12 տարիներին միասին վերցրած։

Յոթնամյակի տարիներին կապիտալ ներդրումների ուղղությունների մեջ տեղի ունեցած փոփոխություններն իրենց արտացոլումն են գտել նաև արդյունաբերության համապատասխան ճյուղերի հիմնական ֆոնդերի կառուցվածքի և աճման տեմպերի մեջ։ Այդ տարիների ընթացքում ամենից արագ աճել են քիմիական արդյունաբերության հիմնական ֆոնդերը։ Այսպես՝ 1962 թվականին քիմիական արդյունաբերության հիմնական ֆոնդերը, 1958 թվականի համեմատությամբ, աճել են 218, մեքենաշինության հիմնական ֆոնդերը՝ 214, իսկ շինանյութերի արդյունաբերության հիմնական ֆոնդերը՝ 212 տոկոսով, մինչդեռ ամբողջ արդյունաբերության հիմնական ֆոնդերը նույն ժամանակամիջոցում աճեցին 161 տոկոսով։

Հիմնական արտադրական ֆոնդերի արագ աճը, դրանց օգտագործման բարելավումը վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, որն իր հերթին թողարկվող արտադրանքի աճի գլխավոր աղբյուրն է։ Հայտնի է, որ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի աճի $2/3$-ը տեղի է ունենում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, իսկ աշխատանքի արտադրողականության բարձրացման բազմաթիվ գործոնների թվում առաջնակարգ տեղ են գրավում աշխատանքի ֆոնդազինվածությունն ու էլեկտրազինվածությունը։

Ուստի արտադրական հիմնական ֆոնդերի աճը ոչ միայն պետք է աշխատանքի գործիքներով ապահովի նյութական ոլորտներում ընդգրկվող օրեցօր ավելացող բանվորներին, այլև բարձրացնի արդեն աշխատող բանվորների ֆոնդազինվածությունը։ Այսպես, արդյունաբերության մեջ աշխատող բանվորների ֆոնդազինվածությունը 1962 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, բարձրացել է 2,17, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 3,27 անգամ։

Պարտիան խնդիր է դրել մինչև 1970 թվականն ավարտել արտադրության կոմպլեքսային մեքենայացումը, իսկ մինչև 1980 թվականը նրա լիակատար ավտոմատացումը։ Գիտությունը, ինչպես նշել է Մարքսը, ավելի ու ավելի է դառնում անմիջական արտադրողական ուժ, իսկ արտադրությունը՝ ժամանակակից գիտության տեխնոլոգիական կիրառումը։

Եթե արտադրության կապիտալիստական սիստեմի ոսկրային ու մկանային սիստեմը մեքենաների սիստեմն է, ապա կոմունիստական արտադրության ոսկրային ու մկանային սիստեմը կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումն է։ Քսանամյա պլանով նախատեսված է հինգ անգամ ավելացնել երկրի հիմնական արտադրական ֆոնդերը. այսպիսով նորագույն տեխնիկայի հիման վրա լիովին կնորոգվի արտադրությունը, որի շնորհիվ Սովետական Միության արտադրական ապարատը կլինի ամենահզոր, երիտասարդ և կատարելագործված ապարատը։ Դրա շնորհիվ 20 տարի հետո ՍՍՌՄ-ը կարտադրի գրեթե երկու անգամ շատ արդյունաբերական արտադրանք, քան այժմ արտադրվում է ողջ սոցիալիստական աշխարհում։

Սոցիալիստական տնտեսության հիմնական ֆոնդերը, ինչպես և առհասարակ արտադրական ֆոնդերը գտնվում են շրջապտույտի և պտույտի մեջ։ Որքան ռացիոնալ է դրանց օգտագործումը, այնքան մեծ է դրանց դերը սոցիալիստական տնտեսության ընդլայնված վերարտադրության մեջ։

Արտադրական հիմնական ֆոնդերի պտույտի հետ մեկտեղ տեղի է ունե-



նում նրանց վերարտադրության պրոցեսը ոչ միայն ըստ դրամա-արժեքային ձևի, այլ ըստ բնաձևի։

Արտադրական հիմնական ֆոնդերը ամբողջապես մասնակցում են արտադրության մեջ բազմաթիվ ցիկլերի, աստիճանաբար մաշվում են, կորցնում իրենց սկզբնական սպառողական արժեքը և դրան համապատասխան մաս առ մաս փոխանցում իրենց արժեքը նոր ստեղծված արդյունքին։

Այսպիսով, կուտակվում է հատուկ ֆոնդ, ամորտիզացիոն ֆոնդ, որը հետագայում օգտագործվում է հիմնական արտադրական ֆոնդերի վերականգնման կամ վերարտադրության նպատակով։ Ամորտիզացիոն ֆոնդերն առաջանում են ամորտիզացիոն մասնահանումների նախօրոք սահմանվող նորմաների միջոցով, որը դիֆերենցված է ըստ արդյունաբերության ճյուղերի և արտահայտում է ոչ միայն հիմնական արտադրական ֆոնդերի ֆիզիկական, այլև բարոյական մաշվածքը։

Ամորտիզացիան տնտեսական այն կատեգորիան է, որն արտացոլում է հիմնական արտադրական ֆոնդերի և՛ մաշման, և՛ վերականգնման պրոցեսը ըստ նրանց դրամա-արժեքային ձևի։ Ամորտիզացիոն ֆոնդը օգտագործվում է հիմնական արտադրական ֆոնդերի կապիտալ վերանորոգման և նոր հիմնական ֆոնդերի ստեղծման, այսինքն՝ արդեն օգտագործված է շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի վերականգնման նպատակով։ Օրինակ, 1962 թվականին ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերության ամորտիզացիոն ֆոնդը կազմել է 24,7 միլիոն ռուբլի, որից 13 միլիոնն օգտագործվել է կապիտալ վերանորոգման, իսկ 11,7 միլիոնը՝ կապիտալ ներդրումների միջոցով շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի վերականգնման նպատակով։ Այդ նշանակում է, որ ամորտիզացիոն ֆոնդը թեև հիմնականում կոչված է ապահովելու հիմնական ֆոնդերի պարզ վերարտադրությունը, բայց այն նպաստում է նաև հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրությանը։

## 4. ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության տեմպերն արագացնելու, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար ժամանակ շահելու տեսակետից մեծ նշանակություն ունի ոչ միայն հիմնական արտադրական ֆոնդերի ընդլայնված վերարտադրությունն ու կատարելագործումը, այլև նրանց օգտագործման արդյունավետության բարձրացումը։ Որքան մեծ լինի արտադրության առկա գործիքների օգտագործման գործակիցը, այնքան բարձր կլինի դրանց արդյունավետությունը և այնքան ավելի կաճի թողարկվող արտադրանքի ծավալը. հետևապես հասարակությունը համեմատաբար փոքր նյութական ծախսումներով մեծ արդյունքի կհասնի։

Այդ իսկ պատճառով պարտիայի XXII համագումարում Ն. Ս. Խրուշչովը ընդգծեց, որ արտադրական նոր ֆոնդերի ավելացումն աստիճանական պրոցես է և չի կարելի բարելավել միմիայն դրանով. անհրաժեշտ է նոր ֆոնդերի ստեղծմանը զուգընթաց վճռաբար բարելավել արտադրական բոլոր գործող միջոցների, ամբողջ առկա տեխնիկայի օգտագործումը, ամեն կերպ բարձրացնել դրա արդյունավետությունը։

Եթե կապիտալ ներդրումների անմիջական արդյունավետությունը որոշվում է դրանց միջոցով ստեղծված հիմնական ֆոնդերի ծավալով, ապա ար-

տադրական հիմնական ֆոնդերի արդյունավետությունն որոշվում է նախ և առաջ դրանց օգտագործման շնորհիվ թողարկվող արտադրանքի ծավալով և ընդհանրական հասարակական արդյունքի ու ազգային եկամտի աճով: Անցած 10 տարում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության արտադրական հիմնական ֆոնդերն աճել են 2,58, ընդհանրական հասարակական արդյունքը՝ 2,38, իսկ ազգային եկամուտը՝ 2,41 անգամ: Այսպիսով ընդհանրական հասարակական արդյունքի և ազգային եկամտի աճը ուղիղ համեմատական է հիմնական արտադրական ֆոնդերի աճին: Այս ցուցանիշների փոխադարձ պայմանավորվածությունը դրսևորում է սոցիալիստական ընդլայնված վերարտադրության օրինաչափ պրոցեսը, ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում, մասնավորապես արդյունաբերության մեջ այդ ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը:

Արդյունաբերության համախառն արտադրանքն աճում է ավելի արագ, քան նրա արտադրական հիմնական ֆոնդերը: Դրա շնորհիվ իջնում է արտադրանքի ֆոնդապարունակությունը, որը վկայում է հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետության աճի մասին: Երկրորդ՝ արդյունաբերության համախառն արտադրանքի աճի և արտադրաֆոնդերի հիմնական աճի տեմպերի տարբերությունը գնալով մեծանում է, 1952 թվականի 46 տոկոսի փոխարեն այդ տարբերությունը 1962 թվականին հասել է 98 տոկոսի, այսինքն՝ ավելի քան կրկնապատկվել է: Այդ ամենի հետևանքով զգալի չափով իջել է արտադրանքի ֆոնդապարունակությունը, որը միաժամանակ հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն ցուցանիշներից մեկն է:

Արտադրաֆոնդերի հիմնական օգտագործումը կարելի է բարելավել երկու ձևով, նախ՝ նրանց գործադրության ժամանակի երկարացմամբ, այսինքն՝ էքստենսիվ եղանակով նրանց բեռնվածության աստիճանը բարձրացնելու միջոցով: Բայց քանի որ այդ ժամանակը սահմանափակված է սարքավորումների բանող ֆոնդի սահմաններով, ուստի գոյություն ունի հիմնական արտադրաֆոնդերի օգտագործումը բարելավելու նաև երկրորդ ձևը՝ ժամանակի միավորի ընթացքում սարքավորումների օգտագործման բարելավումը, ինտենսիվ եղանակով նրանց բեռնվածությունը բարձրացնելու միջոցով:

Եթե առաջին դեպքում կարևոր նշանակություն ունի մեքենաների հերթափոխության գործակցի բարձրացումը, նրանց պարապուրդների կրճատումը և այլն, ապա երկրորդ դեպքում էական հանգամանք է սարքավորումների լրիվ կարողությամբ օգտագործումը, նրանց կատարելագործումը և արտադրության տեխնոլոգիայի բարելավումը:

Ինչպես ցույց են տալիս ռեսպուբլիկայի արդյունաբերության հիմնական արտադրաֆոնդերի օգտագործմանը վերաբերող տվյալները, մենք ունենք չօգտագործված մեծ ռեզերվներ գործող արտադրական հիմնական ֆոնդերի արդյունավետությունը թե էքստենսիվ և թե ինտենսիվ եղանակով բարձրացնելու ուղղությամբ: Ուստի, արդյունաբերության բոլոր աշխատողների առաջնահերթ խնդիրն է՝ առավելագույն չափով օգտագործել տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունները, հայտաբերել և գործադրել սոցիալիստական արդյունաբերության բոլոր ռեզերվները, նրա զարգացման տեմպերը արագացնելու, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամկետները կրճատելու նպատակով:

# ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԷՍԹԵՏԻԿԱՅԻ ՀՈՒԶՈՂ ՀԱՐՑԵՐ

Ա. ՄԻՐԶՈՅԱՆ

Արվեստի վաստակավոր գործիչ

Գեղարվեստական սկզբունքն էլ ավելի ոգեշունչ կդարձնի աշխատանքը, կգեղեցկացնի կենցաղը և կազնվացնի մարդուն:

ՍՄԿՊ ԾՐԱԳԻՐ

Աշխատանքի գեղեցկացման համար պայքարը դարձել է մեր կյանքի կենսական պահանջը: Բայց, ինչպես հայտնի է, աշխատանքն այսօր անիմաստ է պատկերացնել առանց մեքենաների: Այստեղ էլ կյանքն առաջ է քաշում մի շարք նոր պրոբլեմներ: Արդյոք հարկավո՞ր է տեխնիկային էսթետիկա. կարո՞ղ են արդյոք էսթետիկական զգացումներն ու գեղեցկությունը օգնել մարդուն աշխատանքում. ինչպիսի՞ էսթետիկական պահանջներ են ներկայացվում այսօր արտադրական միջավայրին և, արդյունաբերական արտադրանքին. ի՞նչ պետք է անել աշխատանքում և կենցաղում էսթետիկայի արմատավորման ուղղությամբ: Այս հարցերն ավելի և ավելի հաճախ են դրվում մեր հասարակության, գիտնականների, արտադրության աշխատողների և արվեստի գործիչների քննարկմանը: Չէ՛ որ արտադրական էսթետիկան ոչ թե կյանքից կտրված տեսական պրոբլեմ է, այլ շոշափում է միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքի և կենցաղի կենսական հարցերը:

Մեկ հոդվածի շրջանակներում հնարավոր չէ շոշափել արտադրական էսթետիկայի բոլոր խնդիրները, ուստի մենք կխոսենք արտադրական էսթետիկայի միայն մի քանի հուզող հարցերի մասին:



Արտադրական միջավայրի նկատմամբ տեխնիկական էսթետիկայի պահանջները որոշվում են այն պայմաններով, որոնց մեջ ընթանում է մարդու աշխատանքը և ընդգրկում է հետևյալ գործոնները. բանվորական տեղը, գույնը և լույսը, ձայնը, օդափոխությունը:

Հաճախ մենք մեզ հաշիվ չենք տալիս, թե աշխատանքի արտադրողականության բարձրացման ինչպիսի ռեզերվներ են թաքնված արտադրական միջավայրի առողջացման մեջ: Բանն այն է, որ աշխատանքի արտադրողակա-

նության բարձրացումը պայմանավորված է ոչ միայն բարձր արտադրողական մեքենաներով, այլև մարդու աշխատունակությամբ: Դրա համար էլ լավագույն արդյունքի հասնելու համար արտադրական պրոցեսի կազմակերպման ժամանակ պետք է մեծ նշանակություն տալ աշխատանքի ֆիզիոլոգիայի, հատկապես, աշխատանքի տեղի, բանվորի կեցվածքի ու շարժումների հարցերին: Մենք, արտադրական միջավայրում էսթետիկայի արմատավորմանը մոտենում ենք նախ և առաջ ֆիզիոլոգիական առումով, որովհետև գեղեցկի զգացում չի կարող առաջացնել այն, ինչը խեղում է մարդուն: Ահա թե ինչու դեռևս սովետական իշխանության արշալույսին Վ. Ի. Լենինը գրում էր, որ տեխնիկական պրոգրեսը սոցիալիզմի օրոք աշխատանքի պայմանները կդարձնի ավելի հիգիենիկ, միլիոնավոր բանվորների կազատի ծխից, փոշուց ու կեղտից, կարագացնի կեղտոտ, գարշելի արհեստանոցները վերածելու մարդուն արժանի լուսավոր լաբորատորիաների:

Սոցիալիստական սիստեմի առավելությունների, գիտության ու տեխնիկայի նվաճումների, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ մեր երկրում շատ բան է արված աշխատանքի թեթևացման, արտադրության կուլտուրայի բարձրացման ուղղությամբ: Սակայն այն, ինչ արված է, դեռևս չի կարող բավարարել մեր ժողովրդի աճող էսթետիկական պահանջմունքները: Շատ գործարաններում ու արտադրական բաժանմունքներում կատարելագործված, առաջնակարգ տեխնիկայի կողքին աչքի է ընկնում աշխատատեղի պրիմիտիվ սարքավորումը, որը երբեմն հակասում է ֆիզիոլոգիայի, հոգեբանության և հիգիենայի տարրական պահանջներին:

Մեր ձեռնարկությունների արտադրական սարքավորումների մեջ թերևս ոչ մի բան այնքան տարատեսակ ու բազմազան չէ, որքան նստարանը: Ինչի վրա որ ասես չեն նստում բանվորները. մետաղյա խողովակներից հարմարեցված աթոռներ, փայտյա խարխուլ նստարաններ, նույնիսկ երբ պատրաստված են հատուկ նստարաններ, ապա շատ դեպքերում նկատի չի առնված մարդու հասակը, նրա մարմնի դիրքը հաստոցի կառավարման օրգանների նկատմամբ, արտադրանքի չափն ու ծավալը և այլն:

Վերջերս Երևանի սարքաշինական գործարանում մենք ականատես եղանք, թե ինչպես կոնվեյերների մոտ բանվորներն աշխատում էին առանց թիկնակի փայտյա աթոռների վրա նստած և պատահական չէ, որ աշխատանքի վերջում նրանք գանգատվում են գոտկատեղի ցավից: Նստած աշխատելիս հենման կարիք են զգում նաև ոտքերը: Դրա համար պետք է նստարանին հարմարեցնել ոտնդիրներ: Ավելի նպատակահարմար է այնպես կազմակերպել գործը, որպեսզի բանվորը կարողանա փոխեփոխ աշխատել նստած և կանգնած վիճակում: Սա էլ հենց մարդուն կազատի վաղաժամ հոգնածությունից և գործողությունների միօրինակությունից:

Մարդն անտարբեր չէ գույնի նկատմամբ: Տարբեր գույները մարդկանց մոտ առաջացնում են տարբեր զգացողություններ: Կ. Մարքսը գույնը համարում է էսթետիկական զգացողության ամենամասսայական ձևը: Գույնն ամենուրեք է: Նա զգալի ազդեցություն ունի նաև արտադրական միջավայրի վրա: Փորձերը ցույց են տալիս, օրինակ, երկնագույն և նարնջագույն ներկված պատերով միևնույն արտադրամասում, միևնույն ջերմաստիճանի պայմաններում մարդը ջերմության տարբեր զգացումներ ունի: Նարնջագույնի համեմատությամբ երկնագույնն առաջացնում է զովության զգացում: Վերցնենք մի այլ



օրինակ: Բանվորներին առաջարկվեց տեղափոխել նույն ծավալի ու քաշի սև և սպիտակ արկղներ: Նրանք միաբերան հայտարարեցին, որ սև գույնի արկղներն ավելի ծանր են, քան սպիտակ գույնինը: Մասնագետների կարծիքով արտադրական խեղումների զգալի մասը տեղի է ունենում մեքենաների վտանգավոր մասերի և կառավարման օրգանների ոչ ճիշտ գունավորման հետևանքով: Այսպես, մեքենայի վտանգավոր մասերը պետք է ներկվեն այնպիսի գույնով, որպեսզի ուշադրություն գրավեն: Որքան տաք է բաժանմունքը, այնքան ավելի «սառը» երանգավորում պետք է ունենա պատերի գույնը, որքան ծանր է առարկան, այնքան «թեթև» պետք է լինեն գույները:

Արտադրական էսթետիկայի կարևորագույն պահանջներից է նաև աշխատանքի հիգիենան: Առանց մաքրության չի կարող լինել գեղեցկություն: Մեր ռեսպուբլիկայի ձեռնարկություններում փոշու և կեղտի տարածողն է ասֆալտե հատակը: Ինչպես հայտնի է, ասֆալտը շոգից փափկում է, հեշտությամբ ներծծում է քուքային թափուկները, որի հետևանքով հատակը դառնում է կպչուն, կուտակում է փոշի ու աղբ:

Մեր ռեսպուբլիկայի շատ ձեռնարկություններում այսօր արդեն մեծ ուշադրություն է նվիրվում աշխատանքի կուլտուրայի բարձրացման և արտադրական էսթետիկայի արմատավորման հարցերին: Սակայն դեռևս կան մարդիկ, որոնք առարկում են. արտադրական ոլորտում էսթետիկայի լայն արմատավորումը արդյոք չի՞ ավելացնի անարտադրողական ծախքերը, այլ կերպ ասած, գեղեցկության մեր երազանքների իրագործումը արտադրության մեջ արդյո՞ք չի բախվի արտադրանքի ինքնարժեքի իջեցման պահանջի հետ: Այդ նման ենթադրություններն անհիմն են: Պրակտիկան ցույց է տվել, որ տեխնիկական էսթետիկայի սկզբունքներով պատերի և մեքենաների ներկումը աշխատանքի արտադրողականությունը կարող է բարձրացնել 10—15 տոկոսով: Չեխոսլովակյան գիտնականների հաշվումներով, արտադրամասերի գունային ճիշտ ձևավորումը 20 անգամ ավելի էժան է նստում գունային աղտոտվածության հետևանքով առաջացած կորուստների համեմատությամբ, էլ չենք խոսում այն մասին, թե ինչ կարող է տալ աշխատանքային տեղի ճիշտ կազմակերպումը, արտադրական աղմուկի վերացումը և այլն:

Տարեցտարի աշխատանքը նոր առաջընթաց քայլեր է անում: Աշխատանքի բնույթի փոփոխության հետ միասին փոխվել է նաև մարդկանց վերաբերմունքն աշխատանքի նկատմամբ, փոխվել են մարդկանց պատկերացումները գեղեցկության մասին, նրանց էսթետիկական պահանջմունքները: Այս տեսակետից արտադրական էսթետիկայի պրիմիտիվ պատկերացման արդյունք է, երբ գործարանների և ֆաբրիկաների պատերը զարդարում են ամեն կարգի նկարներով, արտադրական բաժանմունքներում քանդակներ են դնում, կամ պատուհանների գոգին աճեցնում են ծաղիկներ: Եվ գտնում են, որ աշխատանքային միջավայրի էսթետիկական կողմը լուծված է: Սա ըստ էության աշխատանքի պայմանների բարելավման կարևոր պրոբլեմը զարդարանքներով նենգափոխելու փորձ է:

Արտադրական միջավայրում էսթետիկայի արմատավորումը պետական կարևոր գործ է և դրանով պետք է զբաղվեն ոչ միայն ձեռնարկության ղեկավարները, այլև ողջ կոլեկտիվը և առաջին հերթին արհմիութենական կազմակերպությունը: Շատ դեպքերում այն կապված չէ մեծ ջանքերի ու միջոցների ծախսման հետ, հարկավոր է միայն սրտացավ վերաբերմունք և անհրաժեշտ

վերահսկողություն։ Մեր կարծիքով, ադմինիստրացիայի և արհմիությունների
միջև կնքված ամենամյա կոլեկտիվ պայմանագրերում իրենց արժանի տեղը
պետք է գրավեն նաև արտադրական էսթետիկայի պահանջները։ Վերահսկել և
նպաստել այդ պահանջների կատարմանը՝ պետք է դառնա արհմիութենական
կազմակերպությունների կարևոր խնդիրներից մեկը։ Արտադրական էսթետի-
կայի ուղղությամբ զգալի աշխատանք կարող են տանել արհմիությունների
տեխնիկական տեսչությունները։ Հայաստանի արհմիությունների խորհուրդը
գործին մեծ չափով օգնած կլինի, եթե արհմիութենական ղեկավար աշխա-
տողների, ակտիվի համար պարբերաբար կազմակերպի արտադրական էսթե-
տիկային նվիրված սեմինար պարապմունքներ։

***

Արտադրական էսթետիկայի բաղկացուցիչ և ամենակարևոր մասն է կազ-
մում արտադրանքի գեղարվեստական ձևավորումը։ Պարտիան պահանջում է
լուրջ ուշադրություն դարձնել սովետական մարդկանց էսթետիկական դաս-
տիարակությանը, վճռական պայքար մղել արվեստում, կյանքում, կենցաղում
«գեղեցկության» ֆորմալիստական ու քաղքենիական հնացած պատկերացում-
ների դեմ։ Այդպիսի պատկերացումների հետևանք է, որ մեր խանութներում
կարելի է հանդիպել հնաձև ապրանքների, որոնք չեն համապատասխանում
ժամանակակից մարդու էսթետիկական պահանջներին։ Անհանդուրժելի վիճակ
է ստեղծվել նաև արդյունաբերության մի շարք ճյուղերում։ ՍՍՌՄ ԺՏԽ-ի
1963 թվականի հունիսի 26-ի նիստում մի շարք ռեսպուբլիկաների թվում դի-
տողություն արվեց հայկական ժողտնտխորհին այն բանի համար, որ նա բա-
վականաչափ պահանջկոտություն չի ցուցաբերում անորակ արտադրանք թո-
ղարկող ձեռնարկությունների նկատմամբ։ Իսկ ո՞վ չգիտի, որ գերազանց որա-
կը պայմանավորված է ոչ միայն արտադրանքի երկարակեցությամբ, շահա-
գործման հարմարավետությամբ, փոքր քաշով ու ծավալով, անաղմուկ աշխա-
տանքով, այլև արտաքին գեղեցիկ տեսքով։
Մեծ նշանակություն տալով տեխնիկական էսթետիկայի զարգացմանը.
ՍՍՌՄ Մինիստրների սովետը հատուկ որոշմամբ մինիստրություններին և գե-
րատեսչություններին պարտավորեցրել է լայնորեն օգտագործել գեղարվեստա-
կան նախագծման մեթոդները։ Այս խնդրի իրագործմանը ծառայում են տեխ-
նիկական էսթետիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտու-
տը, ժողտնտխորհների փորձնական գեղարվեստական կոնստրուկտորական
բյուրոները և գեղարվեստական ու տեխնիկական խորհուրդները։
Ուրախալի է տեսնել, թե ինչպես Հայաստանի ժողտնտխորհի գեղարվես-
տական նախագծման բյուրոն օրեց-օր ընդլայնում է իր գործունեության շրջա-
նակները։ Բյուրոյի առանձին բաժիններում նախագծվում են ռեսպուբլիկայի
արտադրական օբյեկտների ներքին ձևավորումը, մոդեռնացվում են արտա-
դրական ձեռնարկությունների կողմից թողարկվող շատ մեքենաներ, հաստոց-
ներ, գեղարվեստական ձևավորում են ստանում կուլտուր-կենցաղային մի
շարք ապրանքներ։ Բյուրոյի գեղարվեստական խորհրդի նիստերում ինժե-
ներների, գիտնականների, նկարիչների, նախագծողների մասնակցությամբ
քննարկվում և հաստատվում են արտադրանքի նոր, գեղեցիկ տեսակներ։ Սա-
կայն գեղարվեստական նախագծման բյուրոն և նրա գեղարվեստական խոր-



հուրդը դեռևս շատ անելիքներ ունեն։ Ըստ էության, այն ինչ որ արվում է
հիմա՝ գործի սկիզբն է միայն։
Ինչպես հայտնի է, առարկայի գեղեցկությունը դրսևորվում է հենց իր՝
առարկայի օրգանական կառուցվածքի, նրա նպատակահարմարության և
համամասնությունների մեջ։ Որոշել այս կամ այն առարկայի, նրա առանձին
մասերի ձևը, նշանակում է ձգտել այն բանին, որպեսզի այդ ձևը առավելա-
գույն չափով համապատասխանի առարկայի ֆունկցիոնալ նշանակությանը,
բխի դրանից և որոշվի դրանով։ Այլ կերպ ասած, գեղեցիկ չի կարող լինել
այն գործիքը, որը կոշտուկներ է առաջացնում ձեռքի ափում, վատ է ձևավոր-
ված այն հաստոցը, որը ցածր արտադրողական է, անհարմար է շահագործ-
ման տեսակետից, դժվար է հավաքվում, վերանորոգվում և այլն։ Գեղարվես-
տական նախագծման համար չկան և չեն կարող լինել պատրաստի դեղատոմ-
սեր։ Ամեն մի նախագծում պահանջում է կոնկրետ մոտեցում։ Սրանում է գե-
ղարվեստական նախագծման դժվարությունը, որի հաղթահարումը պահանջում
է գիտելիքների մեծ պաշար և անընդմեջ ստեղծագործական պրպտումներ։
Միայն արտադրական էսթետիկայի օրենքների, տնտեսական, տեխնիկա-
կան, սոցիալական, հոգեբանական և հիգիենիկ ֆակտորների խոր և բազմա-
կողմանի իմացությամբ կարելի է իրագործել լիարժեք գեղարվեստական նա-
խագծում։ Քանի դեռ մենք չունենք նկարիչ-նախագծողների բավականաչափ
կադրեր, արտադրական էսթետիկայի հարցերը լուծում կարող են ստանալ մի-
այն նկարիչների, ինժեներ-նախագծողների համատեղ ջանքերով։ Պրակ-
տիկան ապացուցել է, որ նկարիչները խորամուխ լինելով նախագծման պրո-
ցեսի մեջ, շատ արժեքավոր խորհուրդներ են տալիս մեքենաների մասերի հար-
մարադասման, ավտոմատների կառավարման օրգանների տեղաբաշխման
և շատ այլ հարցերում։ Եվ այդ բնական է։ Երևակայությամբ օժտված նկա-
րիչը կարող է պարզ պատկերացնել մարդուն աշխատանքի պրոցեսում, տես-
նել մարդուն և մեքենայի փոխգործողության թերությունները և օգնել կոնս-
տրուկտորին ճշտորեն որոշելու մեքենայի ձևը, գույնը։
Ի՞նչ պետք է անել, որպեսզի տեխնիկական էսթետիկան խոր արմատներ
գցի մեր ռեսպուբլիկայում։ Նախ և առաջ պետք է լուծել կադրերի հարցը։
Այսօր արդեն Հայաստանի 78 գործարաններ ու ֆաբրիկաներ նկարիչ-նախա-
գծողների կարիք ունեն։ Ռեսպուբլիկան նկարիչ-նախագծողների կադրերով
ապահովելու դժվարին, բայց և պատվավոր խնդրի լուծմանը պետք է ծառայի
1963/64 ուսումնական տարում Երևանի գեղարվեստական-թատերական ինս-
տիտուտում ստեղծված արտադրական արվեստի ամբիոնը և արտադրական էս-
թետիկայի ֆակուլտետը, որը բաղկացած է մեքենաշինության արտադրանքի
և կուլտուր-կենցաղային առարկաների գեղարվեստական ձևավորման բա-
ժիններից։ Հայաստանի պետպլանը նախատեսել է ամեն տարի այդ նոր կազ-
մակերպված բաժիններում ընդունելությունն ավելացնել 15—20 մարդով։
Բացի դրանից, ինժեներ-կոնստրուկտորների համար կբացվեն երեկոյան դաս-
ընթացներ, որը կօգնի ինժեներա-տեխնիկական անձնակազմի մի զգալի մա-
սին առանց արտադրությունից կտրվելու ձեռք բերել գիտելիքներ արտադրա-
կան էսթետիկայի մասին։
Արտադրական էսթետիկայի գծով կադրերի պատրաստման հիմքում պետք
է դրվի ուսանողների արտադրական ուսուցումը գործարաններում ու ֆաբրի-
կաներում։ Սակայն արտադրական պրակտիկան արդյունավետ կարող է լի-

նել այն դեպքում միայն, երբ ուսանողները գործարան կամ ֆաբրիկա են գընում աշխատանքային տարրական ունակություններով։ Այս առումով էլ խիստ անհրաժեշտ է ֆակուլտետին կից ունենալ գիպսա-մոդելային, հյուսնամակետային և փականագործական-մոնտաժման ժամանակակից մեքենաներով ու գործիքներով սարքավորված արհեստանոցներ, որոնք կարող են օգտագործվել ոչ միայն ուսումնական, այլև արտադրական նպատակներով։ Այսպիսի բազայի առկայության պայմաններում ուսանողները հնարավորություն կունենային ուսուցման պրոցեսում կատարելու մի շարք պատվերներ։

Արտադրական էսթետիկայի գծով մասնագետների պատրաստումը նոր գործ է և պահանջում է զգայուն, հոգատար վերաբերմունք։ Դեռևս պետք է փնտրել ու գտնել նոր մեթոդներ ու միջոցներ այդ գործը պատշաճ բարձրության վրա դնելու համար։ Ինչպես հայտնի է, մենք դեռևս չունենք արտադրական էսթետիկայի դասագրքեր ու ձեռնարկներ, որը զգալիորեն դժվարացնում է դասավանդումը։ Մենք չունենք նաև որակյալ դասախոսներ արտադրական էսթետիկայի դասընթացի բոլոր բաժինների գծով։ Ուրեմն, որակյալ մասնագետների պատրաստման նախապայմաններից մեկն էլ դասախոսական կազմի որակավորման բարձրացումն է։ Այդ կարելի է անել ինչպես հատուկ դասընթացների կազմակերպման, այնպես էլ փորձի փոխանակման ու անհատական ուսուցման նպատակով դասախոսներին Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների նույնատիպ ուսումնական հաստատություններ գործուղելու միջոցով։ Պետք է շարունակել նաև արտադրական էսթետիկայի լավագույն մասնագետների հրավիրումը մեզ մոտ՝ այս կամ այն պրոբլեմի շուրջը դասախոսություններ կարդալու համար։

Անհրաժեշտ է որոշ լրացումներ կատարել նաև ուսումնական ծրագրում։ Մեր կարծիքով, չի կարելի արտադրական էսթետիկայի լիարժեք մասնագետ համարել նրան, ով ուսումնական հաստատությունից դուրս է գալիս առանց պատկերացում ունենալու կոնկրետ էկոնոմիկայի, ժողովրդական տնտեսության պլանավորման, արտադրության կազմակերպման, անվտանգ տեխնիկայի մասին։ Այս առարկաները պետք է մտնեն մեր ուսումնական ծրագրի մեջ։ Որպեսզի տեխնիկական միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատության ավարտողներն արտադրություն մտնեն, գիտենալով արտադրական էսթետիկայի հիմունքները, պետք է նրանց ուսումնական ծրագրերում իր մշտական տեղը ունենա «արտադրական էսթետիկայի հիմունքները» առարկան։

Էսթետիկայի արմատավորումը կյանքում՝ արտադրության մեջ, աշխատանքում ու կենցաղում ունի ոչ միայն գեղագիտական, այլև հասարակական-քաղաքական մեծ նշանակություն։ Էսթետիկան և հումանիզմն անբաժանելի են։ Սովետական մարդկանց մոտ դաստիարակել էսթետիկական բարձր ճաշակ, նշանակում է ակտիվորեն նպաստել նոր մարդու, կոմունիստական գալիքի մարդու ձևավորմանը։



# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

Լ. ԲԱՅՐԱՄՅԱՆ

## ՓԱՌԱՊԱՆԾ ՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿԸ

Ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը նշում է առաջին Ինտերնացիոնալի՝ բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների պատմության սկզբնավորող առաջին մասսայական մարքսիստական միջազգային կազմակերպության հիմնադրման 100-ամյակը։

Առաջին Ինտերնացիոնալը, սկիզբ դնելով կապիտալի տիրապետության դեմ պրոլետարիատի միջազգային մասշտաբով կազմակերպված ռևոլյուցիոն պայքարին, դարձավ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ավետաբերը և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի նախագուշակը։ Ինտերնացիոնալը «համաշխարհային սոցիալիստական ռեսպուբլիկայի այն շենքի հիմքը դրեց,— գրել է Վ. Ի. Լենինը,— որը մենք այժմ կառուցելու երջանկությունն ունենք» (Երկեր, հ. 29, էջ 286) և այն փառապանծ ուղին բացեց, որով համայն մարդկությունն ընթանում է լուսապայծառ ապագան։

### 1

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, հենվելով XIX դարի 50—60-ական թվականների բանվորական և դեմոկրատական շարժումների վրա, 1864 թ. սեպտեմբերի 28-ին հիմնադրեցին առաջին Ինտերնացիոնալը, նրա օգնությամբ միավորեցին բանվոր դասակարգի, դեմոկրատական խավերի ցաք ու ցրիվ ուժերը և սոցիալիստական շարժումը դրին գիտական հողի վրա, պայքարելով բանվորական շարժման մեջ եղած բուրժուական, մանրբուրժուական և ուտոպիստական գաղափարախոսությունների դեմ։

Կ. Մարքսը մշակեց առաջին Ինտերնացիոնալի «Հիմնադիր մանիֆեստը» ու կանոնադրությունը, որոնց մեջ վերլուծելով հասարակության զարգացման օրինաչափությունները, ցույց տվեց, որ բուրժուական էկոնոմիկայի արբեցուցիչ հաջողությունների պայմաններում բանվոր դասակարգի դրությունը մնում է անփոփոխ, իսկ արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների կիրառումն էլ ավելի է խորացնում սոցիալական անջրպետը և ուժեղացնում դասակարգային հակամարտությունները։ Մերկացնելով կապիտալիստա-

կան հասարակարգում հարստության ատինանաբար կուտակման հետ բանվոր դասակարգի դրության բարելավման՝ պաուպերիզմի ոչնչացման բուրժուական լեգենդը, Կ. Մարքսը ուսուցանում էր, որ բանվոր դասակարգի ազատագրման ուղին ամբողջ աշխարհի պրոլետարիատի ուժերի համախմբման, վամպիրի նման պրոլետարիատի ու նրա երեխաների արյունով սնվող մոնոպոլիաների տիրապետության տապալման և քաղաքական իշխանության նվաճման մեջ է, որը «դարձել է բանվոր դասակարգի մեծ պարտականությունը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, երկու հատորով, հ. 1, էջ 455): Կ. Մարքսը, մշակելով պրոլետարիատի դասակարգային պայքարի ստրատեգիան ու տակտիկան, բանվոր դասակարգին սովորեցրեց, որ ռևոլյուցիոն թեորիայով զինված մարտնչող պրոլետարիատն ինքն իրեն պետք է ազատագրի: Նա բուրժուազիայի գերեզմանափորն է ու սոցիալիստական հասարակարգի կառուցողը:

Բանվորների միջազգային ընկերությունը, հանձին Կ. Մարքսի, գտավ իր հանճարեղ թեորետիկին ու մեծ առաջնորդին: Կ. Մարքսը Ինտերնացիոնալի գործունեության ոգին էր:

Առաջին Ինտերնացիոնալը հիմնադրվեց գիտական սոցիալիզմի ուսմունքի ռևոլյուցիոն տակտիկայի ու կազմակերպչական սկզբունքների վրա: Այն Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի անխոնջ աշխատանքի և երկարատև պայքարի հաղթանակի պսակն էր:

## 2

Բուրժուազիայի տիրապետման դեմ պրոլետարիատի պայքարի կազմակերպման ժամանակ մարքսիզմը բախվում էր պրուդոնիզմի, տրեդյունիոնիզմի, բակունիզմի, լասսալականության և այլ հակագիտական ուսմունքների հետ, որոնք մթագնում էին պրոլետարիատի դասակարգային գիտակցությունը և արգելակում ռևոլյուցիոն շարժումների ծավալումը:

Առաջին ինտերնացիոնալը, պայքարելով զանազան երանգների օպորտունիստական ուսմունքների ու հոսանքների դեմ, բարձրացնում էր պրոլետարիատի քաղաքական գիտակցությունը, կազմակերպում մարքսիստական ուսմունքով զինված բանվորական ռևոլյուցիոն պարտիաներ և բանվոր դասակարգին դաստիարակում ինտերնացիոնալիզմի ոգով: Այդ նպատակով Ինտերնացիոնալը կազմակերպում էր նյութական ու բարոյական փոխադարձ օգնություն Անգլիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Շվեյցարիայի և Գերմանիայի բանվորներին՝ 1866—1869 թթ. գործադուլային շարժումների ժամանակ, պաշտպանում լեհ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարը, ուղղություն տալիս անգլիական բանվորների ընդհանուր ընտրական իրավունքի համար պայքարի կամպանիային, ակտիվ ագիտացիա մղում ԱՄՆ-ի քաղաքացիական կռիվների ժամանակ ստրկության վերացման օգտին, պայքարելով Անգլիայի և Ֆրանսիայի կառավարությունների դեմ, որոնք ցանկանում էին օգնել ստրկատիրական Հարավին: Ինտերնացիոնալը հույս էր հայտնում, որ «ինչպես ամերիկյան անկախության պատերազմը բուրժուազիայի համար վերելքի նոր դարաշրջան բաց արեց, այնպես էլ ստրկության դեմ պատերազմը նույնը կբերի բանվոր դասակարգին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 16, стр. 18):



Առաջին Ինտերնացիոնալն իր գոյության կարճ ժամանակամիջոցում (1864—1876 թթ.) մեծ աշխատանք կատարեց մարքսիզմի տարածման, բանվորական շարժումների ղեկավարման, ինչպես նաև հետադիմական, հակագիտական տարբեր ուսմունքների ջախջախման գործում, որոնցից հատկապես վտանգավոր էին պրուդոնիզմը և բակունիզմը:

Մարքսիզմի պայքարը պրուդոնիզմի դեմ սկսվել էր շատ վաղուց, բայց նա իր գագաթնակետին հասավ Ինտերնացիոնալի գործունեության առաջին շրջանում՝ Ժնևի, Լոզանի և Բրյուսելի կոնգրեսներում:

1866 թվականին Ժնևի կոնգրեսում պրուդոնիստներն առաջարկում էին Ինտերնացիոնալը միջազգային քաղաքական կազմակերպությունից դարձնել բանվորների միջազգային կոոպերատիվ ընկերություն, որպեսզի նա զբաղվի կապիտալիզմը խաղաղ ճանապարհով՝ կոոպերատիվ սիստեմով փոխարինելու պայմանների ուսումնասիրությամբ: Կոնգրեսի մարքսիստական կորիզը հակահարված տվեց պրուդոնիստներին և նշեց, որ կոոպերատիվ սիստեմը չի կարող վերափոխել բուրժուական հասարակարգը առանց նրա սոցիալական հիմքերի փոփոխման, ուստի պրոլետարիատն իր նպատակին հասնելու համար պետք է իր ձեռքը վերցնի քաղաքական իշխանությունը:

Ժնևի կոնգրեսում պրուդոնիստները ժխտում էին գործադուլային պայքարի, աշխատանքային օրենսդրության և արհմիությունների նշանակությունը. նրանք առարկում էին արտադրության մեջ կանանց մասնակցությանը: Կոնգրեսը, ղեկավարվելով Կ. Մարքսի կազմած հրահանգով, նշեց գործադուլային պայքարի և ութժամյա աշխատանքային օրվա սահմանման անհրաժեշտությունն ու գտավ, որ աշխատանքային օրենսդրությունը պետք է լինի ամբողջ աշխարհի պրոլետարիատի պահանջը, որովհետև աշխատանքային օրվա սահմանափակումն այն նախնական պայմանն է, առանց որի անհնար է բանվորի դրության բարելավումը, նրա առողջության ու ֆիզիկական ուժի վերականգնումը, մտավոր զարգացումը և սոցիալական ու քաղաքական գործունեությունը:

Արհմիությունների հարցի քննարկման ժամանակ մարքսիստները վճռական ելույթ ունեցան պրուդոնիստների դեմ, որոնք անտեսում էին ամեն տիպի բանվորական կազմակերպություն: Մարքսիստները միաժամանակ քննադատում էին լասսալականներին արհմիությունների նշանակության թերագնահատման, իսկ տրեդ-յունիոնների լիդերներին՝ արհմիությունների դերի գերագնահատման համար: Արհմիությունների մասին ընդունված բանաձևում կոնգրեսը նշեց, որ կապիտալիզմի գոյության պայմաններում արհմիությունները ոչ միայն օրինաչափ, այլև ծայր աստիճանի կարևոր են կապիտալի դեմ բանվոր դասակարգի ամենօրյա պայքարը կազմակերպելու և վարձու աշխատանքի սիստեմը ոչնչացնելու համար:

Պրուդոնիստները կանանց տեղը համարում էին ընտանեկան օջախը, իսկ նրանց պարտականությունը՝ երեխաների դաստիարակությունը: Մարքսիստները գտնում էին, որ կանանց մասնակցությունն արտադրության մեջ անխուսափելի, անհրաժեշտ և պրոգրեսիվ երևույթ է, քանի որ կնոջ մասնակցությունը հասարակական կյանքին բարձրացնում է նրա քաղաքական գիտակցությունը և ստվարացնում կապիտալի գերեզմանափորների բանակի շարքերը: Կոնգրեսը խնդիր դրեց օրենսդրական կարգով հասնել աշխատանքի պաշտպանության:

Ժնևի կոնգրեսը, հակառակ պրուդոնիստների, քննարկեց Լեհաստանի ազգային-ազատագրական շարժման և կանոնավոր բանակի վերացման հարցերը: Կոնգրեսը գտավ, որ Եվրոպայի բանվոր դասակարգը պետք է օգնի լեհ ժողովրդին՝ դեմոկրատական սկզբունքներով վերականգնելու Լեհաստանի ազգային անկախությունը: Կոնգրեսն արտահայտվեց մշտական բանակը համաժողովրդական զինվածությամբ փոխարինելու օգտին, որովհետև բանակը բուրժուական պետության ձեռքին ագրեսիվ քաղաքականություն վարելու զենք էր:

1867 թվականին Լոզանի կոնգրեսում պրուդոնիստները ջախջախվեցին արհմիությունների հարցի քննարկման ժամանակ: Կոնգրեսը գտավ, որ պրոլետարիատի սոցիալական ազատագրումը անխուսափելիորեն կապված է նրա քաղաքական ազատագրման հետ, և որ քաղաքական ազատագրությունն առաջնակարգ անհրաժեշտություն է ամեն մի ազգի համար: Կոնգրեսը որոշեց, որ տրանսպորտը և կապի միջոցները պետք է պետական սեփականություն լինեն: Այդ որոշումն արտադրության միջոցների հանրայնացման մարքսիստական տեսակետի հաղթանակն էր պրուդոնիզմի դեմ:

Առաջին Ինտերնացիոնալը միաժամանակ մեծ ուշադրություն էր դարձնում քաղաքական կարևոր իրադարձությունների վրա, պրոլետարիատին դասակարգային համերաշխության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար: Ինտերնացիոնալի գլխավոր խորհուրդը քննարկում է իռլանդական հարցը, պաշտպանում ֆենիների ազգային-ազատագրական շարժումը, բայց դատապարտում նրանց պայքարի տեռորիստական տակտիկան: Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ուսուցանում էին, որ չի կարող ազատ լինել այն ժողովուրդը, որը ճնշում է այլ ժողովրդի և Իռլանդիայի ազգային-ազատագրական պայքարը կապում էին անգլիական պրոլետարիատի դասակարգային պայքարի հետ, ցույց տալով, որ Իռլանդիան միայն ժողովրդական ռևոլյուցիայի և անգլիական պրոլետարիատի ակտիվ օգնությամբ կարող է թոթափել գաղութային լուծը: Իռլանդիայում գաղութակալության ոչնչացման առաջին պայմանը անգլիական պրոլետարիատի ազատագրումն է կապիտալի լծից: «Մարքսի և Էնգելսի քաղաքականությունն իռլանդական հարցում,— նշել է Վ. Ի. Լենինը,— տվել է ամենամեծ, մինչև օրս իր հսկայական գործնական նշանակությունը պահպանած օրինակն այն բանի, քանի որ ճնշող ազգի պրոլետարիատը ինչպես պիտի վերաբերվի ազգային շարժումներին...» (Երկեր, հ. 20, էջ 553):

1868 թվականի Բրյուսելի կոնգրեսը, հակառակ աջ պրուդոնիստների, որոշեց հանրայնացնել հողը, հանքերը, երկաթուղիները, ջրանցքները, կապի միջոցները և անտառները: Արտադրության պրոցեսի մեքենայացման կապակցությամբ կոնգրեսը գտավ, որ մեքենաների կիրառումը կտանի դեպի կոլեկտիվ աշխատանքի կազմակերպում և նախադրյալներ կստեղծի արտադրության սոցիալիստական սիստեմին անցնելու համար: Կոնգրեսը հավանություն տվեց գործադուլային պայքարի մեթոդին և առաջարկեց դրանք սկսել գործադուլային կոմիտեների ղեկավարությամբ, նախապատրաստված ու կազմակերպված ձևով:

Բրյուսելի ժողովը հատուկ որոշում ընդունեց Կ. Մարքսի «Կապիտալի» մասին: Որոշման մեջ ընդգծելով պրոլետարիատի գաղափարական զինման գործում մարքսիզմի այդ հանճարեղ աշխատության կարևոր նշանակությունը,



կոնգրեսը բոլոր երկրների բանվորներին հանձնարարեց ուսումնասիրել «դարի մեծագույն քաղաքատնտեսական երկը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 13):

Այսպիսով, Ինտերնացիոնալի առաջին երեք կոնգրեսներում պրոլետարական սոցիալիզմը վճռական հաղթանակ է տանում մանրբուրժուական ռեակցիոն պրուդոնիստական հոսանքի դեմ, որով և հիմնականում ավարտվում է մարքսիզմի պայքարը պրուդոնիզմի դեմ:

Ինտերնացիոնալի գործունեության երկրորդ շրջանը բնորոշ է բակունիզմի դեմ մարքսիզմի պայքարով: Բակունիզմը մանրբուրժուական ռեակցիոն անարխիստական հոսանք էր, որը հանդես էր գալիս «ձախ» ֆրազաբանությամբ և պրոլետարիատի ազատագրական պայքարի տեսության ու տակտիկայի հարցերում լրիվ հակադրվում էր գիտական կոմունիզմի ուսմունքին:

Անարխիստ Բակունինն սկզբում անհաջող փորձ կատարեց Ինտերնացիոնալը ենթարկել բուրժուական խաղաղության և ազատության լիգային, իսկ հետո առաջարկեց սոցիալիստական դեմոկրատիայի միջազգային Ալյանսն ընդունել ինտերնացիոնալում: Երբ նրա առաջարկը մերժվեց, Բակունինը հայտարարեց, որ «Ալյանսը» ինքնալուծարքի է ենթարկվում և նրա անդամները մտնում են Ինտերնացիոնալի շվեյցարական սեկցիայի մեջ:

1869 թվականին Բազելի կոնգրեսում մարքսիստներն ընդհարվեցին բակունիստների հետ ժառանգության իրավունքի վերացման հարցում: Կ. Մարքսը գրել է, որ ժառանգության օրենքի վերացման օգնությամբ կապիտալիզմը ոչնչացնելու Բակունինի թեզն անիրագործելի է: Այդ թեզը «սխալ է տեսականորեն և ռեակցիոն՝ գործնականում»: Պրոլետարիատը պետք է պայքարի բուրժուազիայի դիկտատուրայի և ոչ թե նրա կողմից հրատարակված օրենքի դեմ, այսինքն՝ պատճառի և ոչ թե հետևանքի դեմ:

Բազելի կոնգրեսից հետո Բակունինը բացահայտ պայքար սկսեց մարքսիզմի դեմ: 1870 թվականին նա պառակտեց Ինտերնացիոնալի Ռոմանական Շվեյցարիայի սեկցիան և հիմնեց ֆեդերալ խորհուրդ: Բակունինը ձգտում էր բոլոր օպոզիցիոն ուժերը միավորել Ինտերնացիոնալի գլխավոր խորհրդի դեմ: Կ. Մարքսը Բակունինի բանսարկություններին պատասխանեց «Գաղտնի հաղորդում»-ով, որում նշում էր բակունիստների գործունեության վնասակարությունը:

Բակունիզմի ջախջախման գործում գլխավոր խորհրդին մեծ օգնություն ցույց տվեց Ինտերնացիոնալի ռուսական սեկցիան, որի անդամներն իրենց համարում էին Ն. Չերնիշևսկու աշակերտները, բայց աստիճանաբար փարատվում էին նրա նարոդնիկական հայացքների ազդեցությունից և հարում մարքսիզմին: Ռուսական սեկցիան ակտիվ մասնակցում էր Շվեյցարիայի բանվորական շարժումներին և Փարիզի կոմունայի պաշտպանությանը, պայքարում պանսլավոնիզմի դեմ, կապեր հաստատում սլավոնական երկրների ռևոլյուցիոն կազմակերպությունների հետ: Սեկցիայի անդամներ Գ. Լոպատինը և Ն. Դանիելսոնը առաջին անգամ ռուսերեն թարգմանեցին Կ. Մարքսի «Կապիտալի» I հատորը:

Ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակ Ինտերնացիոնալն իր երկու կոչերում տվեց պատերազմի էտապները, նրանց բնույթը և եվրոպական պրոլետարիատի տակտիկան: Երկրորդ կայսրության կործանումից հետո, երբ Տրոշյուի, այնուհետև Թիերի կառավարությունների ներքին և արտաքին ծայրահեղ ռեակցիոն քաղաքականությունը ֆրանսիական պրոլետարիատին

հասցրեց 1871 թվականի մարտի 18-ի ռևոլյուցիային և Փարիզի կոմունայի հռչակմանը՝ ազգային ազատագրական և սոցիալական հարցերի լուծման համար, Ինտերնացիոնալը հիացավ «երկինք գրոհող» պրոլետարիատի պատմական մեծ նախաձեռնությամբ և բազմակողմանի օգնություն կազմակերպեց Կոմունային: Մինչդեռ Բակունինը, որը պատերազմի ժամանակ հանդես էր գալիս շովինիստական լոզունգներով, Կոմունայի նկատմամբ բռնեց խիստ թշնամական դիրք և կոմունարներին օգնություն կազմակերպելը համարեց հիմարություն ու հանցագործություն:

Հակառակ բակունիստների, Փարիզի կոմունայի պաշտպանության Ինտերնացիոնալի կոչը լայն արձագանք գտավ բոլոր երկրների բանվորական շրջաններում: Կոմունային պաշտպանում էին բելգիական գումարտակները, լեհ սպաները, որոնց վրա հիմնականում դրված էր Կոմունայի պաշտպանության կազմակերպումը, ռուս, իտալացի, գերմանացի կամավորները, Անգլիայի բուժաշխատողները: Կոմունային ողջունում և հաղթանակ էին մաղթում բոլոր երկրների բանվորներն ու պրոգրեսիվ ինտելիգենցիան, որոնք ելույթներ էին ունենում բուրժուական կառավարությունների՝ Կոմունայի դեմ ինտերվենցիա նախապատրաստելու քաղաքականության դեմ:

Կոմունայի պարտությունից հետո Ինտերնացիոնալը հանդես եկավ կոմունարների մեծ գործի պաշտպանությամբ: Նա անարգանքի սյունին գամեց Վերսալի դահիճներին և իր հովանավորության տակ վերցրեց բուրժուազիայի հաշվեհարդարից փրկված կոմունարներին: Ինտերնացիոնալի հանձնարարությամբ Կ. Մարքսը գրեց «Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում» աշխատությունը, որում հանճարեղորեն ընդհանրացրեց Կոմունայի փորձն ու դասերը և ցույց տվեց պրոլետարիատի համար այդ դասերի ստեղծագործական օգտագործման կարևոր նշանակությունը:

1871 թվականին, Կոմունայից հետո, Ինտերնացիոնալի դեմ բուրժուազիայի խաչակրաց արշավանքի օրերին, երբ բակունիստներն ուժեղացրին իրենց քայքայիչ գործունեությունը, կայացավ Լոնդոնի ընդհատակյա կոնֆերանսը, որն անցավ բակունիզմի դեմ պայքարի և Ինտերնացիոնալի սեկցիաների գաղափարական ու կազմակերպչական ամրապնդման նշանաբանի տակ:

Կոնֆերանսի կողմից քաղաքական պայքարի կարևորության ընդգծումը, պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը, ազգային բանվորական ինքնուրույն պարտիաների հիմնադրման ու արհմիությունների օգնությամբ քաղաքի ու գյուղի լայն աշխատավորական մասսաների հետ ամուր կապեր ստեղծելու մասին որոշումները մի նոր, լուրջ հարված էր բակունիզմին:

Լոնդոնի կոնֆերանսից հետո բակունիստները հրապարակեցին հատուկ մանիֆեստ, որով բողոքում էին կոնֆերանսի որոշումների դեմ, հարձակվում Գլխավոր խորհրդի վրա, մեղադրելով նրան «դիկտատորության» մեջ և պահանջում՝ Ինտերնացիոնալի դեմոկրատական ցենտրալիզմի կազմակերպչական սկզբունքը փոխարինել սեկցիաների լրիվ ինքնավարությամբ, որը հավասարազոր էր Ինտերնացիոնալի ինքնալուծարքին:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը բակունիստների մանիֆեստին պատասխանեցին «Կարծեցյալ պառակտում Ինտերնացիոնալում» շրջաբերականով, որով հերքում էին բակունիստների հորինած մեղադրանքները, մերկացնում նրանց երկերեսանությունը և ցույց տալիս, որ բակունիստները ցանկանում են ինտերնացիոնալում ստեղծել անարխիա, և որ նրանք ոստիկանության հետ գոր-



ծում են ձեռք-ձեռքի տված՝ Ինտերնացիոնալը կազմալուծելու նպատակով: Շրջաբերականում ընդգծվում է, որ Ինտերնացիոնալը «բոլոր երկրների պրոլետարների իսկական մարտական կազմակերպությունն» է, որը համախմբում է բանվոր դասակարգի ուժերը կապիտալի դեմ մղվող պայքարում:

1872 թվականին Ինտերնացիոնալի Հաագայի կոնգրեսը Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գլխավորությամբ ջախջախիչ հարված հասցրեց բակունիզմին: Կոնգրեսը բակունիստներին վտարեց Ինտերնացիոնալից, հավանություն տվեց 1871 թվականի Լոնդոնի կոնֆերանսի բանաձևերին և որոշեց բոլոր երկրներում կազմակերպել ինքնուրույն բանվորական պարտիաներ: Նա խնդիր դրեց հիմնել ինտերնացիոնալ պրոֆմիություններ, դրանով իսկ ընդգծեց տնտեսական ու քաղաքական պայքարի անխզելիությունը, հակահարված տալով աղանդավորականությանը բանվորական շարժման մեջ:

Կոնգրեսի որոշմամբ Գլխավոր խորհուրդը հրապարակեց Ֆ. Էնգելսի և Պ. Լաֆարգի կազմած, բակունիստների ֆրակցիոն գործունեությունը դատապարտող «Սոցիալիստական դեմոկրատիայի Ալյանսը և բանվորների միջազգային ընկերությունը» զեկուցագիրը:

Հաագայի կոնգրեսը որոշեց Գլխավոր խորհուրդը Լոնդոնից տեղափոխել Նյու-Յորք: 1876 թ. Ֆիլադելֆիայի կոնգրեսի որոշմամբ առաջին Ինտերնացիոնալը ենթարկվեց ինքնալուծարքի:

Առաջին Ինտերնացիոնալը կատարեց իր պատմական մեծ միսիան: Նա իր գործունեության ընթացքում կազմակերպեց ու ղեկավարեց Եվրոպայի բանվորական շարժումները և ամուր տարածեց մարքսիզմի գաղափարները: Փարիզի կոմունայից հետո ստեղծված պատմական նոր պայմաններում Ինտերնացիոնալն իր տեղը զիջեց ազգային պետություններում մասսայական սոցիալիստական բանվորական պարտիաների կազմակերպմանը, որոնց բազայի վրա պետք է հիմնվեր «զուտ կոմունիստական» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 615) նոր Ինտերնացիոնալ:

## 3

Ինտերնացիոնալը գիտական սոցիալիզմի ուսմունքի սկզբունքների վրա հիմնված պրոլետարիատի առաջին մասսայական, քաղաքական միջազգային կազմակերպությունն էր: Նա ջախջախեց հակագիտական, մանրբուրժուական պրուդոնիստական ու բակունիստական ուսմունքները և իր շուրջը համախմբեց առաջավոր երկրների բանվորներին, սովորեցնելով նրանց, որ պրոլետարիատի ազատագրումն իր սեփական գործն է, և որ նրա ուժը դասակարգային համերաշխության, իսկ հաղթանակի գրավականը՝ մարքսիստական թեորիայով զինված բանվորական պարտիայի առկայության մեջ է:

Ինտերնացիոնալը մշակեց բանվոր դասակարգի վերաբերմունքը պետության նկատմամբ, բանվորական պարտիայի գործունեության սկզբունքները, զինված ապստամբության մեթոդները, պրոլետարիատի վերաբերմունքը գյուղացիական ու ազգային հարցերի նկատմամբ: Նա ցույց տվեց պրոլետարիատի ազատագրական պայքարում արհմիությունների, կոոպերատիվ շարժման և պառլամենտական պայքարի դերը, ինչպես նաև մարքսիզմի անաղարտ պահպանման կարևոր նշանակությունը:

Ինտերնացիոնալը հիմք դրեց ժամանակակից համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժմանը: «Նա անմոռանալի է,— գրել է Վ. Ի. Լենինը,— նա հավիտենական է բանվորների՝ իրենց ազատագրության համար մղած պայքարի պատմության մեջ», որովհետև «Առաջին Ինտերնացիոնալը դրել է սոցիալիզմի համար մղվող պրոլետարական, միջազգային պայքարի հիմքը» (Երկեր, հ. 29, էջ 286, 370):

Առաջին ինտերնացիոնալի հարուստ փորձի հիման վրա 1889 թ. հիմնվեց Երկրորդ Ինտերնացիոնալը, որն իրեն չարդարացրեց՝ լիդերների դավաճանության պատճառով: Բոլշևիկյան պարտիան կոչ արեց կրախի մատնված ինտերնացիոնալի փոխարեն կազմակերպել նոր ռևոլյուցիոն Ինտերնացիոնալ և 1919 թ. համաշխարհային պրոլետարիատի մեծ ուսուցիչ ու առաջնորդ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, աշխարհի առաջին սոցիալիստական պետության մայրաքաղաք Մոսկվայում հիմնվեց կոմունիստական Ինտերնացիոնալ, որը շարունակեց ու զարգացրեց առաջին Ինտերնացիոնալի անմահ գործը:

Առաջին Ինտերնացիոնալի և Կոմինտերնի գործը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի ժամանակից սկսած կապիտալիզմից սոցիալիզմին անցումն է, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ծավալումը, որի հզոր զավակը մարքս-լենինյան ուսմունքի գրանիտյա հիմքի վրա ստեղծված համաշխարհային սոցիալիստական սիստեմն է:

Մարքսիզմ-լենինիզմը հավերժ կենդանի հասարակության առաջադիմության հետ զարգացող ուսմունք է, որի ստեղծագործական զարգացումը նշանավորվեց 1957 թ. և 1960 թ. կոմունիստական ու բանվորական պարտիաների Մոսկովյան խորհրդակցությունների դեկլարացիայով ու հայտարարությամբ, ՍՄԿՊ XX, XXI, XXII համագումարների որոշումներով և ՍՄԿՊ նոր ծրագրով:

Պատմական կարևոր նշանակություն ունեցող այդ փաստաթղթերում ու որոշումներում կարմիր թելի նման անցնում են բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների միասնության, եղբայրական համագործակցության ամրապնդման, միջազգային բանվորական, ազգային-ազատագրական և դեմոկրատական շարժման համախմբման գաղափարները:

Կոմունիստական ու բանվորական պարտիաները, հավատարիմ մնալով մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, աչքի լույսի պես պահպանում են սոցիալիստական լագերի միասնությունը, բոլոր երկրների աշխատավորների դասակարգային համերաշխությունը, ճիշտ զուգակցելով պրոլետարական ինտերնացիոնալիզմը սոցիալիստական հայրենասիրության հետ: Նրանք դատապարտում են իմպերիալիստական պետությունների ագրեսիվ, ռազմական բլոկների ստեղծման, նոր, երրորդ համաշխարհային պատերազմի հրահրման քաղաքականությունը և կանգնած են տարբեր սիստեմի երկրների խաղաղ գոյակցության, տնտեսական մրցության, սպառազինումների կրճատման, միջուկային զենքի արգելման, Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքման դիրքերում:

Ժամանակակից կոմունիստական շարժումը, որն իր շարքերում համախմբում է 90 երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների 42,5 միլիոն անդամ, հզոր և անհաղթահարելի ուժ է: Նա կյանքի է կոչված ավարտելու Առաջին Ինտերնացիոնալի սկսած մեծ գործը:



**Հաստատված է ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ և ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեի կողմից 1964 թ. հունիսի 30-ին:**

# ՊԱՐՏԻԱԿԱՆ-ՊԵՏԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԿՈՄԻՏԵՆԵՐԻՆ ԱՋԱԿՑՈՂ ԽՄԲԵՐԻ ԵՎ ՊՈՍՏԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ

Ի կատարումը պարտիայի XXII համագումարի դիրեկտիվի, ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն արմատապես վերակառուցեց վերահսկողության սիստեմը երկրում, նրա հիմքում դնելով պարտիական-պետական վերահսկողության միացման, աշխատավորների լայն մասսաների մասնակցությամբ միասնական համապարփակ, մշտապես գործող վերահսկողության սիստեմի ստեղծման լենինյան գաղափարը:

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի պարտիական-պետական կոմիտեի կանոնադրությանը համապատասխան՝ ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկություններում, ուսումնական հաստատություններում ու տնային կառավարչություններին կից ստեղծվել և գործում են պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբեր ու պոստեր:

1. Աջակցող խմբերն ու պոստերը կոչված են օգնություն ցույց տալու պարտիական կազմակերպություններին՝ սոցիալիստական էկոնոմիկայի վերելքը ամեն կերպ ապահովելու համար մղվող պայքարում, պարտիայի ու կառավարության դիրեկտիվների փաստական կատարման սիստեմատիկ ստուգում կազմակերպելու գործում: Աջակցող խմբերի ու պոստերի աշխատանքում գլխավորը ոչ միայն թերությունների բացահայտումն է, այլ դրանց վերացումն ու կանխումը:

Աջակցող խմբերն ու պոստերը աշխատում են պարտիական կազմակերպությունների և պարտիական-պետական վերահսկողության համապատասխան կոմիտեների ղեկավարությամբ, կատարում են նրանց ցուցումներն ու հանձնարարությունները և հաշվետու են նրանց առջև:

Աջակցող խմբերն ու պոստերը օգնում են պարտիական կազմակերպություններին և պարտիական-պետական վերահսկողության օրգաններին՝

— Վերահսկողություն իրականացնել ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների կողմից արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի արտադրության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և որակի բարելավման պլանների ու առաջադրանքների կատարման, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի և դրամական միջոցների խնայողության խստագույն ռեժիմի պահպանման նկատմամբ:

— Հայտնաբերել արտադրության ներքին ռեզերվները և հասնել դրանց առավել լրիվ օգտագործմանը, վերահսկել գիտության ու տեխնիկայի, առաջավոր փորձի արմատավորմանը, ակտիվորեն ճանապարհ հարթել այն ամենի համար, ինչ նոր է և առաջադիմական.

— վճռականորեն կանխել պարտիայի ու կառավարության որոշումները կատարելու գործում անկարգապահության, տեղայնության ու պետությանը խաբելու դրսևորումները, հասնել ադմինիստրատիվ-կառավարչական ապարատի աշխատանքի բարելավմանը, նրա կատարելագործմանն ու էժանացմանը, արմատախիլ անել բյուրոկրատիզմն ու քաշքշուկը, թափթփվածությունն ու անտնտեսվարությունը.

— պայքարել սոցիալիստական սեփականության հափշտակումների, սովետական օրինականության խախտումների, կաշառակերության, պորտաբուծության և հակահասարակական այլ զանցանքների դեմ.

— բացահայտել և վերացնել աշխատավորների կուլտուր-կենցաղային ու բժշկական սպասարկման, քաղաքացիների բողոքների ու առաջարկությունների ուղղությամբ կատարվող աշխատանքի դրվածքի թերությունները, ինչպես նաև աջակցություն ցույց տալ պարտիական-պետական վերահսկողության օրգանների առջև դրված մյուս խնդիրների լուծմանը:

2. Պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբերն ստեղծում են սկզբնական պարտիական կազմակերպությունները և պարտիական-պետական վերահսկողության համապատասխան կոմիտեները ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկություններում, ուսումնական հաստատություններում և տնային կառավարչություններին կից՝ այդ խմբերի կազմում պատգամավորելով պարտիական, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներին, որոնք ընտրվում են այդ կազմակերպությունների ընդհանուր ժողովներում (խոշոր ձեռնարկությունների համար՝ կոնֆերանսներում), ինչպես նաև կոլտնտեսականների և տնային կառավարչությունների բնակիչների ընդհանուր ժողովներում:

Ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրամասերում, բաժանմունքներում, տեղամասերում, բրիգադներում, հիմնարկությունների վարչություններում ու բաժիններում աջակցող խմբերը կամ պոստերը ստեղծվում են նրանց կազմի մեջ պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների և կոլտնտեսականների ժողովների ուղարկած ներկայացուցիչներից:

Համագործարանային (համակոլտնտեսային և այլն) աջակցող խումբը ղեկավարում է տվյալ ձեռնարկությունում, կառույցում, կոլտնտեսությունում, հիմնարկությունում, ուսումնական հաստատությունում ստեղծված բոլոր խմբերի ու պոստերի աշխատանքը:

Ծանոթություն. *Աջակցող խմբեր ու պոստեր չեն ստեղծվում աշխատավորների դեպուտատների սովետների գործկոմներում, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական օրգաններում, պարտիական թերթերի ու ժուռնալների խմբագրություններում, հանրակրթական դպրոցներում:*

3. Աջակցող խմբերն ու պոստերն ընտրվում են 2 տարի ժամկետով: Խմբերի ու պոստերի քանակական կազմը որոշում են սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտիական-պետական վերահսկողության տեղական կոմիտեների հետ համատեղ՝ նայած աշխատանքի ծավալին և ձեռնարկության, կառույցի, կոլտնտեսության, սովխոզի, հիմնարկության, ուսումնական հաստատության մասշտաբին: Խմբի անդամների թիվը կարող է լինել 7-ից մինչև 50 և ավելի մարդ, իսկ պոստինը՝ 3-ից մինչև 10 մարդ: Ընթացիկ աշխատանքը վարելու համար խոշոր խմբերում ընտրվում են բյուրոներ:

4. Աջակցող խմբերում ու պոստերում առաջ են քաշվում առավել ակտիվ ու հեղինակավոր, թերությունների նկատմամբ անհաշտ և անբասիր ազնիվ ընկերներ, ինչպես կոմունիստներ, այնպես էլ անկուսակցականներ, արտադրության լավագույն աշխատողներ՝ բանվորներ, կոլտնտեսականներ, մասնագետներ, ծառայողներ, գիտնականներ, կուլտուրայի և արվեստի գործիչներ, ուսանողներ, ինչպես նաև կենսաթոշակառուներ ու տնային տնտեսուհիներ, որոնք ընդունակ են խիստ վերահսկողություն իրականացնել պարտիայի ու կառավարության որոշումների կատարման նկատմամբ: Խմբերի ու պոստերի անդամներն իրենց գործունեությունն իրականացնում են հասարակական հիմունքներով: Նրանց այդ աշխատանքը հիմնական և պատվավոր հասարակական պարտականություն է:

5. Աջակցող խումբը գլխավորում է նախագահը, իսկ աջակցող պոստը՝ ղեկավարը, որոնք համապատասխանորեն ընտրվում են աջակցող խմբի և պոստի անդամների ժողովներում բաց քվեարկությամբ: Խմբի ղեկավարը միաժամանակ պարտիական կազմակերպության քարտուղարի տեղակալն է վերահսկողության գծով: Խմբերում կարող են ընտրվել նախագահի նաև մեկ-երկու տեղակալներ:

Այն ձեռնարկություններում ու հիմնարկներում, որտեղ պարտիական կազմակերպություններ չկան, խմբերի նախագահներ կարող են լինել կոլեկտիվի վստահությունն ու հարգանքը վայելող անկուսակցական հեղինակավոր ընկերներ:

6. Աջակցող խմբերի ու պոստերի կազմում ներկայացուցիչներ ուղարկած կազմակերպություններն իրենց նախաձեռնությամբ կամ թե խմբի, պոստի առաջարկությամբ կարող են ժամկետից շուտ ետ կանչել իրենց ներկայացուցիչներին, եթե նրանք չեն արդարացրել վստահությունը:

7. Պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբերը այն կազմակերպող կենտրոններն են, որոնց շուրջն է միավորվում ամբողջ հասարակական վերահսկողությունը: Լինելով մասսայական վերահսկողության կազմակերպման հիմնական ձևը, նրանք իրենց աշխատանքը կատարում են լայն նախաձեռնության ու ինքնագործունեության հիման վրա, սերտ ու մշտական կապ պահպանելով աշխատավորների կոլեկտիվների հետ: Խմբերն աշխատում են սկզբնական պարտիական կազմակերպությունների կողմից ադմինիստրացիայի գործունեության վերահսկողության իրավունքի կենսագործման հանձնաժողովների, արհմիությունների հասարակական վերահսկողության հանձնաժողովների, «Կոմերիտական լուսարձակի» ջոկատների սերտ համագործակցությամբ, անհրաժեշտության դեպքում անց են կացնում համատեղ ստուգումներ, մշակում են առաջարկություններ ու հանձնարարականներ, ձգտում են հասնել դրանց կենսագործմանը:

Աջակցող խմբերն աշխատում են պլանով: Վերահսկողության իրականացման գործում անհրաժեշտ համաձայնեցվածություն ապահովելու, կրկնությունից ու զուգահեռականությունից խուսափելու նպատակով խմբերը կազմում են աշխատանքի պլաններ, հաշվի առնելով հասարակական կազմակերպությունների կողմից անցկացվող վերահսկողության միջոցառումները և դրանք մտցնում են պարտիական կոմիտեների (բյուրո) կամ սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովների քննարկմանն ու հավանությանը:

Պարտիական կազմակերպությունները ու պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներն աջակցող խմբերի և պոստերի ղեկավարներին ու անդամներին ծանոթացնում են պարտիայի և կառավարության կարևորագույն ցուցումներին ու որոշումներին:

8. Աջակցող խմբերն ու պոստերը վերահսկողություն իրականացնելիս իրենց աշխատանքում օգտագործում են բազմազան ձևեր ու մեթոդներ՝ ստուգումներ, արշավներ, մասսայական ստուգատեսներ, դոկումենտալ վերստուգումներ և այլն: Նրանք այդ ձևերն ու մեթոդները կիրառում են ինչպես իրենց նախաձեռնությամբ, այնպես էլ պարտիական կազմակերպությունների, պարտիական-պետական վերահսկողության կոմիտեների հանձնարարությամբ: Վերահսկողությանը լայնորեն մասնակից են դարձվում բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ, մասնագետներ, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների ակտիվը, սովխոզների և հիմնարկությունների վերահսկող-վերստուգիչ աշխատողներ: Խմբի ստուգումների արդյունքների հիման վրա մշակվում են հայտնաբերված թերությունների վերացման առաջարկություններ ու հանձնարարականներ: Խմբերն ու պոստերը պարբերաբար ստուգում են, թե այդ առաջարկություններն ու հանձնարարականները ինչպես են իրականացվում:

Աջակցող խմբերն ու պոստերը պետք է սկզբունքայնություն ու հաստատակամություն ցուցաբերեն աշխատանքում, մինչև վերջ հասցնեն սկսած գործը, խստորեն պահպանեն յուրաքանչյուր ստուգման օբյեկտիվությունը, ձգտեն խոր և բազմակողմանիորեն ուսումնասիրել նյութերը, ճշգրտորեն իմանալ փաստերը և տվյալների ստույգությունը:

9. Ձեռնարկության, կառույցի, կոլտնտեսության, սովխոզի, հիմնարկության, ուսումնական հաստատության գործունեության առավել կարևոր հարցերի գծով ամենօրյա վերահսկողություն ապահովելու համար աջակցող խմբերում կարող են ստեղծվել մշտական ու ժամանակավոր հանձնաժողովներ, սեկտորներ, ինչպես և ժամանակավոր պոստեր: Խմբերում ու պոստերում կատարվում է պարտականությունների բաշխում, խմբի և պոստի յուրաքանչյուր անդամ, որպես կանոն, պետք է ունենա կոնկրետ հանձնարարություն:

10. Աջակցող խմբերն ուղղություն են տալիս «Կոմերիտական լուսարձակի» ջոկատների, խմբերի ու պոստերի աշխատանքին՝ պարտիական-պետական վերահսկողության օրգանների վրա դրված խնդիրների կենսագործմանը սովետական երիտասարդության մասսայական մասնակցության այդ կարևոր ձևին, օգնում են «Կոմերիտական լուսարձակին», ամեն կերպ պաշտպանում նրա նախաձեռնությունը:

11. Աջակցող խմբերին լայն հնարավորություն է տրվում ադմինիստրացիայի, պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների և պարտիական-պետական վերահսկողության կոմիտեների առջև դնելու աշխատանքի բարելավման, իրենց բացահայտած թերությունների վերացման և մեղավորներին պատասխանատվության կանչելու հարցերը: Խմբերի առաջարկությունները քննության են առնվում ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկությունների, ուսումնական հաստատությունների ղեկավարների, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների կողմից:

Ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկությունների, ուսումնական հաստատությունների ղեկավարները պետք է ամեն կերպ օժանդակություն ցույց տան աջակցող խմբերին ու պոստերին նրանց գործունեության ընթացքում, անհրաժեշտ պայմաններ ստեղծեն, որպեսզի նրանք կատարեն իրենց պարտականությունները:

12. Աջակցող խմբերը կարող են ծանոթանալ ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկների, ուսումնական հաստատությունների գործունեությունը բնութագրող նյութերին, սարքավորումների, տրանսպորտային միջոցների, արդյունքների, հումքի և այլ նյութական արժեքների պահպանման վիճակին, մասնակցել տնտեսական ղեկավարների և պարտկազմակերպությունների այն խորհրդակցություններին, նիստերին, որտեղ քննարկվում են արտադրական աշխատանքի և աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերը, լսել այն անձանց բացատրությունները, որոնք մեղավոր են պարտիայի ու կառավարության որոշումների, արտադրական պլանների ու առաջադրանքների կատարումը վիժեցնելու մեջ, թույլ են տվել բյուրոկրատիզմ, անտնտեսավարություն և չարաշահումներ:

13. Այն դեպքում, երբ ստուգված օբյեկտների ղեկավարները համաձայն չեն աջակցող խմբերի և պոստերի առաջարկություններին ու հանձնարարականներին, վերջինները այդ հարցերը մտցնում են պարտիական կազմակերպությունների կամ պարտիական-պետական վերահսկողության համապատասխան կոմիտեների քննարկմանը:

14. Աջակցող խմբերն ու պոստերը կարող են հարցերով դիմել պարտիական-պետական վերահսկողության օրգաններին ընդհուպ մինչև ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեն, նրանց քննարկմանը մտցնել իրենց հետևյալ առաջարկները՝ անցկացնել տվյալ ձեռնարկության, կառույցի, կոլտնտեսության, սովխոզի, հիմնարկության, ուսումնական հաստատության ավելի խոր ստուգում համապատասխան կոմիտեի ներկայացուցիչների մասնակցությամբ, կասեցնել պաշտոնական անձերի այն կարգադրություններն ու գործողությունները, որոնք կարող են վնաս հասցնել պետության շահերին, վերացնել այն թերությունները, որ գոյություն ունեն կոոպերացված մատակարարումների, ինչպես և ամեն մի այլ հարցի գծով ուրիշ ձեռնարկությունների կողմից իրենց պարտավորությունները կատարելու գործում:

15. Աջակցող խմբերի ու պոստերի անդամները աշխատանքից չեն կարող ազատվել առանց այն կազմակերպության համաձայնության, որը նրանց ուղարկել է խմբերի ու պոստերի կազմում:

16. Աջակցող խմբերն ու պոստերը ստուգումների արդյունքների, թերությունների վերացման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների մասին աշխատավորներին լայնորեն իրազեկ են դարձնում կոլեկտիվների ժողովների, ինչպես նաև պատի, բազմատիրաժ և այլ թերթերում նյութեր հրապարակելու, դրանք տեղական ռադիոյով ու հեռուստատեսությամբ հաղորդելու միջոցով: Նրանք հետևում են, որ հրապարակվեն միայն ստուգված փաստերն ու նյութերը, որոնք նպաստում են թերությունների վերացմանը և սխալներ ու սայթաքումներ թույլ տված մարդկանց ճիշտ դաստիարակմանը:

17. Աջակցող խմբերն ու պոստերը իրենց աշխատանքի մասին պարբերաբար հաղորդումներ են անում պարտիական, արհմիութենական, կոմերիտական ժողովներում և աշխատավորների ժողովներում, կատարում են իրենց աշխատանքի հաշվառում: Հաշվառման հիմնական ձևը օրագիրն է:

18. Աջակցող խմբերը կազմակերպում են աշխատավորների կանոնավոր ընդունելություն, աչքի ընկնող տեղերում դնում են արկղներ աշխատավորների բողոքների, դիմումների ու առաջարկությունների համար. օպերատիվ կերպով քննության են առնում և անհրաժեշտ միջոցներ ձեռնարկում դրանց առթիվ:

19. Պարտիական-պետական վերահսկողության կոմիտեները, պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունները օգտագործում են աջակցող խմբերի ու պոստերի առավել աչքի ընկած անդամներին լավ աշխատանքի համար խրախուսելու գոյություն ունեցող ձևերը:



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՄԵՐ ԳՈՏՈՒ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՊՐՈՖԻԼԻ ՇՈՒՐՋԸ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Աշտարակի արտադրական վարչության պետ

*Գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման համար անհրաժեշտ է ոչ միայն ամրապնդել նյութատեխնիկական բազան, այլև լուծել մի շարք տնտեսական պրոբլեմներ, մասնավորապես խոր մասնագիտացման հարցերը։ ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան (1964 թ.) պլենումի որոշման մեջ նշված է, որ մասնագիտացումը գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման հիմնական մասն է։ Նրա նպատակն է գյուղատնտեսության գիտականորեն հիմնավորված տեղաբաշխում, տվյալ գոտում էկոնոմիկայի ճյուղերի նպատակահարմար զարգացում, հաշվի առնելով նրա բնա-կլիմայական պայմանները։*

*Որքան բարձր է գյուղատնտեսության մասնագիտացման աստիճանը, այնքան արդյունավետ են օգտագործվում արտադրողական ուժերը։ Խորացնելով աշխատանքի հասարակական բաժանումը, մասնագիտացումը նպաստում է արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և արտադրության ծավալի ավելացմանը։ Պրակտիկայում ապացուցված է, որ առանց մասնագիտացման անհնար է կազմակերպել ինտենսիվ գյուղատնտեսական արտադրություն, քանի որ ինտենսիվությունը կախված է առաջին հերթին ամեն մի կոլտնտեսության, սովխոզի հնարավորությունների ճիշտ օգտագործումից։ Գյուղատնտեսության մասնագիտացումը թույլ կտա տվյալ կոնկրետ պայմաններում նվազագույն ծախսումներով արտադրել ավելի շատ մթերքներ, հասնել ամենաբարձր արտադրողականության։*

*ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումում պարզ և որոշակի սահմանվեցին գյուղատնտեսության մասնագիտացման ուղիները, որոնք տանում են դեպի արտադրության ինտենսիվացում. այդ, առաջին հերթին ըստ գոտիների մասնագիտացումն է, տվյալ գոտում այն արտադրանքի մաքսիմալ արտադրությունը, որի համար կան առավել նպաստավոր պայմաններ։*

*Աշտարակի արտադրական վարչության տնտեսությունները գտնվում են ռեսպուբլիկայի նախալեռնային գոտում, որտեղ բացառիկ նպաստավոր պայմաններ կան խաղողագործության ու պտղաբուծության զարգացման համար։*

*Ո՞ր պտղատու կուլտուրաները, կամ ինչպիսի՞ խաղող մշակել այս կամ այն շրջանում. այս հարցը որոշելիս, առաջին հերթին, հաշվի են առնվում տն-*

ղի կլիմայական պայմանները՝ ջերմությունը, խոնավությունն ու լույսը։ Դրանցով է պայմանավորված վազի մշակման սիստեմը, սորտի ընտրությունն ու տեղաբաշխումը, ինչպես և տվյալ շրջանի խաղողագործության ու պտղաբուծության մասնագիտացումը։ Աշտարակի և Աբովյանի շրջաններում կան խաղողի և պտղատու այգիների զարգացման համար բավականին բարենպաստ կլիմայական և, առաջին հերթին, ջերմային պայմաններ։ Այդ հնարավորություն է տալիս խաղող և պտուղներ աճեցնել նույնիսկ ծովի մակերևույթից 1200—1700 մետր բարձրության վրա։

Խաղողագործության և պտղաբուծության զարգացման կարևոր գործոններից մեկը ոռոգումն է, որն աշտարակցիներին միշտ էլ մտահոգել է։ Աշտարակում շատ լեգենդներ են հյուսվել ջրի մասին. այսպես՝ կռվում ծերացած զինվորը պատյանն է դնում թշնամու դեմ հանած հաղթական սուրը և վերադառնում հայրենի գյուղ՝ Աշտարակ։ Չորացել էին այգիներն ու պարտեզները, ծառերը՝ մերկացել։ Ջուր չկար, գյուղի միակ փոքրիկ առուն ցամաքել էր վաղուց։ Դառնացած ծերունին, գավազանին հենված, հին առապարհով իջնում է Քասախի անդնդախոր ձորը, նայում փրփրադեզ ջրին, ինչ-որ պլաններ գծում, բայց մեռնում է իր երազած կարկաչահոս առվի ափին, երազկոտ ու հավատով լի հայացքը հառած Քասախի ձախ ափին տարածվող արևախանձ ու ամայի դաշտերին...

Այդ տխուր օրերը, անօգնական չարքաշ գյուղացու թշվառ վիճակը վաղուց անցել են պատմության գիրկը։

Կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության հոգատարության շնորհիվ իրականացել է աշխատավոր աշտարակցու և կոտայքցու դարերով երազած իղձը։ Պետության կողմից ջրաշինարարությանը հատկացված 13 մլն. ռուբլի կապիտալ ներդրումների շնորհիվ Արզնի-Շամիրամ ջրանցքի առաջին հերթի և Կոտայքի ջրանցքի կառուցմամբ ավելի քան տասնյոթ հազար հեկտար դարերով անմշակ ղուրը ոռոգելի են դարձել, որի շուրջ 8 հազար հեկտարն արդեն խաղողի և պտղատու կուլտուրաների ծաղկուն այգեստաններ են։

Աշտարակը և Աբովյանը ռեսպուբլիկայի այգեգործության հին շրջաններից են։ Նրանց խաղողն ու գինին, բազմապիսի մրգերը հայտնի են ոչ միայն մեր ռեսպուբլիկայում, այլև նրա սահմաններից դուրս։ Եվ բնավ էլ պատահական չէ, որ կոլտնտեսություններն ու սովխոզները առանձնահատուկ ուշադրություն են նվիրում խաղողագործության ու պտղաբուծության զարգացմանը, տարեցտարի ընդարձակում են այգիները։ Այդ բնագավառում հատկապես նշանակալից աշխատանք է կատարված վերջին ժամանակաշրջանում։ Այսպես, օրինակ, 1940 թվականի 1,5 հազար հեկտար խաղողի և 700 հեկտար պտղատու այգիների դիմաց այժմ Աշտարակի և Աբովյանի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն 5,2 հազար հեկտար խաղողի և 4 հազար հեկտար պտղատու այգիներ։

Առանձնապես ավելի մեծ աշխատանք է կատարված բազմամյա տնկարկների ընդարձակման ուղղությամբ։ Յոթնամյակի վեց տարում (1959—1964 թթ.) կոլտնտեսություններն ու սովխոզները տնկել են 3400 հեկտար խաղողի և 3200 հեկտար պտղատու այգիներ։ Դարերով անմշակ ղուրի իրացման շնորհիվ կազմակերպվել են խաղողագործական նոր տնտեսություններ, որով փոխվել է Աշտարակի և Աբովյանի շրջանների գյուղատնտեսության քարտեզը։



Վերջին տարիներին կազմակերպված նոր տնտեսություններից են №№ 36, 37, 38, 39, 40 սովխոզները, որոնք ունեն խաղողի և պտղատու այգիների ընդարձակ տարածություններ։

Խաղողի այգիների տարածության 95 տոկոսը պատկանում է Աշտարակի, Օշականի, Ոսկեվազի, Քանաքեռի, Գառնիի կոլտնտեսություններին և №№ 36, 37, 38, 39 սովխոզներին։

Այգիների ընդարձակման շնորհիվ նկատելի կերպով ավելացել են խաղողի համախառն բերքն ու ապրանքային ելույթը։ Բավական է նշել, որ 1958 թվականին 4176 տոննայի դիմաց, 1962 թվականին մթերվեց 9013 տոննա խաղող։ Խաղողագործության զարգացումը մեծ չափով խթանել է գինեգործության վերելքին։

Աբովյանի շրջանը ևս լայն հեռանկարներ ունի գինեգործության զարգացման համար։ Ոսկեհատ, Ալեգոտե սորտերից ստացվում է շամպայնի բարձրորակ գինու հումք։

Աշտարակի արտադրական վարչության գյուղատնտեսության էկոնոմիկայում իր ուրույն տեղն ունի պտղաբուծությունը, որի զարգացման համար լայն հեռանկարներ կան։ Վարչության 33 կոլտնտեսություններ ու սովխոզներ այժմ զբաղվում են պտղաբուծությամբ։ Հանրահայտ են Քանաքեռի մալաչա տանձը, կեռասը, Պտղնիի, Քարաշամբիի խնձորները, Առինջի կեռասը, Աշտարակի դեղձը, ընկույզը և բազմապիսի այլ պտուղներ։

Խաղողագործության ու պտղաբուծության զարգացումն որոշակիորեն փոխել է վարչության և նրա շատ տնտեսությունների արտադրական մասնագիտացումը։ Վարչությունում ստեղծվել են խաղողագործական, պտղաբուծական տիպի մասնագիտացված և գյուղատնտեսության մյուս ճյուղերի հետ զուգակցված տնտեսություններ։

Ըստ համախառն արտադրանքի կառուցվածքի վարչության կոլտնտեսություններում ստեղծված են արտադրական մասնագիտացման հետևյալ տիպերը՝ խաղողագործական, խաղողագործական-ծխախոտագործական, ծխախոտա-խաղողագործական, ծխախոտագործական, ծխախոտամսային- մսա-ծխախոտագործական, մսա-կաթնային, մսա-կաթնաբրդային, մսաբրդային, խառը անասնապահության և ծխախոտագործության, խառը ծխախոտագործության, մսային։ Նշված արտադրական տիպերի սահմաններում կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն էկոնոմիկական տարբեր ցուցանիշներ։

Որպես կանոն խաղողագործական և պտղաբուծական տնտեսություններում ինտենսիվ կերպով օգտագործվող հողի տեսակարար կշիռը բարձր է, քան մյուս տնտեսություններում։

Խաղողագործությունն ու պտղաբուծությունը Աշտարակի արտադրական վարչության եկամտաբեր ճյուղերից են։ Այստեղ ընդհանուր հողօգտագործման տարածությունների միայն 12 տոկոսն է ծածկված խաղողի և պտղատու այգիներով, մինչդեռ եկամուտների 30—40 տոկոսն ստացվում է արտադրության այդ ճյուղից։ Շատ տնտեսություններ խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստանում են երկուսուկեսից երեք հազար ռուբլի եկամուտ, որպիսին չի ստացվում բուսաբուծության և ոչ մի ճյուղից։ Ահա թե ինչու ռեսպուբլիկայի պետպլանը և գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրությունը գյուղատնտեսության զարգացման առաջադրանք-

ները տալիս, պետք է հաշվի առնեն յուրաքանչյուր արտադրական վարչության առանձնահատկությունները։

Ելնելով տեղի հողակլիմայական պայմաններից, Աշտարակի արտադրական վարչությունը և պարտիական կոմիտեն ապագայում ևս շարունակելու են գրոհը նոր հողեր յուրացնելու և դրանք հիմնականում խաղողի և պտղատու այգիներ դարձնելու համար։ Այս գործին խոշոր չափով կնպաստի ջրաշինարարական այն մեծ աշխատանքը, որ ծավալվել է այժմ Աշտարակի և Աբովյանի շրջաններում։ Ապարանի ջրամբարի, Արզնի-Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի կառուցումների ու Աբովյանի շրջանում կատարվող ջրաշինարարական աշխատանքները հնարավորություն կտան տնկելու հազարավոր հեկտար խաղողի և պտղատու նոր այգիներ։

Այս տարվա աշնանը Կարբիի, Օհանավանի, Ուշիի, Նազրվանի կոլտնտեսությունների անջրդի դաշտերի զգալի մասը ոռոգելի ջուր է ստանալու Արզնի-Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթից, որտեղ արդեն նախապատրաստական աշխատանքներ է տարվում բազմամյա տնկումների համար։ Նոր յուրացված հողերում գոյություն ունեցող սովխոզներից բացի կազմակերպվելու են նորերը։ Երևանից Գառնի տանող ճանապարհի թեքություններում տնկված են պտղատու այգի-անտառների առաջին տասնյակ հեկտարներ։

Հաշվի առնելով ջրաշինարարական աշխատանքների ծավալը, նախատեսված է մոտիկ ապագայում այգեգործության և պտղաբուծության զարգացման հետևյալ պլանը։

| Արտադրական վարչության կոլտնտեսություններում և սովխոզներում | Խաղողի այգիների տարածությունը (հեկտար) | | | Պտղատու այգիների տարածությունը (հեկտար) | | |
|---|---|---|---|---|---|---|
| | յոթնամյակի վերջում | հեռանկարում տնկումների մոտավոր տարածությունը | ընդամենը | յոթնամյակի վերջում | հեռանկարում տնկումների մոտավոր տարածությունը | ընդամենը |
| | 5200 | 12.800 | 18000 | 5000 | 9000 | 14000 |

Այսպիսով, մոտ ապագայում նախատեսվում է խաղողի այգիների տարածությունը հասցնել 18 հազար, պտղատու այգիներինը՝ 14 հազար հեկտարի։

Խաղողագործությունն ու պտղաբուծությունը մեծ չափով զարգանալու են, հատկապես, սովխոզներում։ Խաղողի և պտղատու այգիների խոշոր մասսիվները կկենտրոնացվեն Եղվարդի, Շամիրամի, Կոշի, Ուջանի ենթաշրջաններում։

Այգիների տարածությունների ընդարձակման զուգընթաց մեծ գործ է կատարվելու բերքատվության բարձրացման ուղղությամբ։ Բերքատվության բարձրացումը ոչ միայն խաղողի և պտղի արտադրության ավելացման կարևոր ուղերվ է, այլև աշխատանքի արտադրողականության աճման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր պայման։

Այն տնտեսություններում ու սովխոզներում, որտեղ հեկտարից 80—100 ցենտներ խաղող են ստանում, աշխատանքի արտադրողականությունը բարձր է 3—4 անգամ, ինքնարժեքը 2,5—4 անգամ ցածր է համեմատած այն տնտեսությունների հետ, ուր բերքը հեկտարից 30—45 ցենտներից չի անցնում։ Ահա թե ինչու լուրջ պայքար է ծավալվելու յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստանալ 100 ցենտներ խաղող, 76 ցենտներ պտուղ։



Խաղողի և պտղի բերքատվության ավելացման գործում կարևոր նշանակություն ունեն այգիների խնամքի ու մշակության առաջավոր մեթոդների ու ձևերի կիրառումը, ինչպես և խաղողագործության ու պտղաբուծության ճիշտ տեղաբաշխումն ըստ ենթաշրջանների, կոլտնտեսությունների, սովխոզների։

Խաղողի և պտղի արտադրության ավելացման, արտադրանքի որակի լավացման համար առաջնակարգ նշանակություն ունեն նաև սորտի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումն ըստ իրենց ագրոբիոլոգիական առանձնահատկությունների (հաշվի առնելով բնական պայմանները), բերքի ռացիոնալ օգտագործումը՝ տեխնիկական վերամշակման և այն թարմ վիճակում օգտագործելու համար։ Այդ նպատակով մշակված է արտադրական նպատակահարմար մասնագիտացում։

Աշտարակի շրջանը հանդիսանալու է Հայաստանի գինեգործական արդյունաբերությանը Խերես տիպի բարձրորակ գիններ մատակարարող հիմնական բազան։ Այն արտադրելու է Աշտարակ, Ոսկևազ, Բյուրական գիններ, հումք՝ Օշական, Հրազդան, Մադերա, Պորտվեյն և այլ գինիների համար։ Աբովյանի շրջանը հանդիսանալու է սեղանի թեթև և շամպայն գինիների հումքի բազա, որովհետև այստեղ Ոսկեհատ, Մսխալի, Ալիգոտե, Կախեթ, Ռկածիթելի սորտերից ստացվում են սեղանի թեթև և շամպայն գինիներ։ Զգալի չափով ավելացվելու է սեղանի խաղողի արտադրությունը։

Մինչև այժմ տարերայնորեն ստեղծված մասնագիտացման պատճառով աննշան տեղ են գրավել սեղանի խաղողի սորտերը. այդ սխալը շտկվելու է։ Այսուհետև արտադրված բերքի 30—35 տոկոսը կլինի սեղանի բարձրորակ խաղող, որը կմատակարարվի ինչպես մայրաքաղաքի, այնպես էլ արդյունաբերական մյուս քաղաքների բնակչությանը։ Այդ նպատակով կստեղծվեն վաղահաս, միջահաս և ուշահաս խաղողների սորտերի այգիներ։ Սեղանի խաղողի սորտերից մեծ տարածություններ են գրավելու Սև և Սպիտակ Սաթենի, Սպիտակ Արաքսենի, Երևանի Վարդագույն, Իծապտուկ, Կարմիր Կախանի, Նազելի և ուրիշ սորտերը։ Տեխնիկական սորտերից՝ Ոսկեհատ, Արենի, Մուսկաթ, Մսխալի, Ճիլար և մի քանի այլ սորտեր։

Պտղաբուծության և պտղատու կուլտուրաների սորտային ռայոնացումը որոշվելու է ոչ միայն հաշվի առնելով բնական ու տնտեսական պայմանները, այլև բնակչությանը ամբողջ տարին թարմ մրգերով ապահովելու խնդիրը։ Օրինակ, ճիշտ չէ, երբ ծիրանների բոլոր տեսակների 80 տոկոսը կազմում է Երևանի առաջին տեսակը, որի հասունացումը 12 օրից չի անցնում։ Աշտարակի և Աբովյանի պայմաններում լայնորեն կծավալվի ծիրանի, դեղձի, սալորի, կեռասի, ընկույզի տարբեր սորտերի մշակումը։ Դրա հետ միասին զգալի չափով կզարգանա և հնդավորների, հատկապես խնձորի և տանձի տարբեր տեսակների մշակությունը։

Չնայած խաղողի և պտղի արտադրության ավելացմանը և տարածությունների զգալի ընդարձակմանը, այնուամենայնիվ վարչությունում խիստ անբավարար են օգտագործվում խաղողագործության և պտղաբուծության զարգացման հնարավորությունները։

Այգեգործության և պտղաբուծության զարգացման հարցերը չի կարելի մեկուսացնել այգիների մշակության բարելավման և բերքատվության բարձրացման հարցերից։ Վերջիններս շատ կարևոր են, քանի որ մեր վերջնական

նպատակն է մեծ քանակությամբ բարձրորակ խաղողի և պտղի բերք ստանալը։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վարչության խաղողագործական և պտղաբուծական մի շարք տնտեսությունների (Օշական, Թալիշ, Փարպի, Օհանավան, Կոշ) այգիները դեռևս շատ նոր են։ Այդ նշանակում է, որ այգիներում տարիներ շարունակ մշակության աշխատանքները կատարում ենք ավելի մեծ տարածությունների վրա, իսկ փաստորեն բերք ենք ստանում մշակած տարածության միայն մի մասից։

Այդ հանգամանքը ոչ միայն անդրադառնում է բերքի քանակի վրա, այլև բարձրացնում է արտադրանքի ինքնարժեքը։ Խաղողի հին այգիների նոսրությունը վերացվելու է տաշթաղ, կամ սովորական անդալիսի միջոցով, նոր այգիներում կատարվելու է լրացուցիչ տնկումներ, պատշաճ ձևով կխնամվեն տնկած արմատակալները, ինչպես նաև բերքատվությունից զրկված ծառերը կփոխարինվեն նորերով։

Խաղողագործության և պտղաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացումը մեր կարևորագույն խնդիրներից մեկն է։ Մինչ այժմ այդ նպատակի համար ստեղծված տեխնիկան հնարավոր չէ օգտագործել քարքարոտ հողերի և թմբային այգիների մշակության համար։ Խաղողի և պտղատու այգիներում աշխատատար պրոցեսների միայն 15 տոկոսն է մեքենայացված, մնացածները կատարվում են ձեռքով, այդ խիստ բացասաբար է անդրադառնում աշխատանքի արտադրողականության վրա։

Այնպիսի աշխատատար պրոցեսներ, ինչպիսիք են՝ այգեփորը, այգեբացը, այգեբուծումը, բերքահավաքը և այլն, կատարվում են ձեռքով։ Անհրաժեշտ են բարձրորակ սրսկիչներ և փոշոտիչներ։ Ռեսպուբլիկայում շպալերների տնկաշարքերի արտադրության վատ կազմակերպման հետևանքով վարչությունում 1800 հեկտար նոր տնկված խաղողի այգիներ շպալերների վրա չեն բարձրացված, դա, անշուշտ, զգալի չափով կազդի բերքատվության վրա։

Այգիներից բարձր ու կայուն բերք ստանալու հիմնական միջոցներից է այգիների պարբերական խնամքը, որի շնորհիվ բարձրանում է այգու առատ բերքատվության ունակությունը։ Դրան կարելի է հասնել այգիների պատշաճ մշակության, ոռոգման և պարարտացման միջոցով։

Մեծ է օրգանական և հանքային պարարտանյութերի դերը այգիների, հատկապես նորատունկ այգիների բերքատվության բարձրացման գործում։ Այդ է պատճառը, որ այս տարի 2—2,5 անգամ ավելացել է այգիներին տրվող թե հանքային և թե օրգանական պարարտանյութերի քանակը։

Կարևոր նշանակություն ունի բերքը հիվանդություններից ու վնասատուներից պաշտպանելը։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ ամեն տարի խաղողի և պտղատու այգիների բերքի 30—35 տոկոսը, իսկ առանձին տնտեսություններում 50 տոկոսից ավելի փչանում է բուժման գործը վատ կազմակերպելու հետևանքով։ Հաշվի առնելով այդ, կոլտնտեսություններում և սովխոզներում մեծ աշխատանք է տարվում վնասատուների դեմ պայքարը լավ կազմակերպելու համար։

Կարծում ենք, որ ճիշտ ընտրելով գյուղատնտեսության մասնագիտացման ուղիները, մենք մեծ հնարավորություն կտանք կոլտնտեսություններին ու սովխոզներին ավելի շատ արդյունք ստանալու։

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա. ՎԻՐԱԲՅԱՆ

Հայկական ՍՍՌ պետպլանի ժողտնտպլանի բաժնի պետի տեղակալ

Յոթնամյակի անցած ժամանակաշրջանը մեր ռեսպուբլիկայի համար աննախընթաց վերելքի, նվաճումների ու բարգավաճման տարիներ էին։

Հաջողությամբ են կատարվում և գերակատարվում յոթնամյակի կոնտրոլ թվերով ու տարեկան պլաններով նախատեսված առաջադրանքները։ Արդյունաբերության համախառն արտադրանքը, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 67,6 տոկոսով, կոնտրոլ թվերով նախատեսված 64,6-ի փոխարեն, իսկ արդյունաբերության արտադրանքի ծավալի տարեկան միջին աճը կազմել է 10,6 տոկոս։ Հինգ տարում թողարկվել է 148,4 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Այդ նույն ժամանակամիջոցում առավել արագ տեմպերով են զարգացել արդյունաբերության առաջատար ճյուղերը. քիմիական արդյունաբերությունը՝ 2,1, մեքենաշինությունը՝ 2,65. զգալիորեն կզարգանան նաև գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը։

Հայաստանի աշխատավորները, հաջողությամբ կատարելով յոթնամյակի հինգ տարվա առաջադրանքները, ձեռնամուխ եղան 1964—1965 թվականների պլանների կատարմանն ու գերակատարմանը։

Յոթնամյակի վերջին երկու տարում արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա մոտ 25 տոկոսով։ Ինչպես յոթնամյակի նախորդ տարիներին, այնպես էլ 1964—1965 թվականներին, ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման տեմպերը կգերազանցեն Միության արդյունաբերության զարգացման միջին տեմպերը։ Սակայն, չնայած դրան, նախատեսված արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը որոշ չափով ցածր է յոթնամյակի կոնտրոլ թվերի մակարդակից։ Այդ հիմնականում բացատրվում է մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության որոշ ձեռնարկությունների ցածր բեռնվածությամբ։

Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարը ռեսպուբլիկայի պարտիական, սովետական ու տնտեսական օրգաններին պարտավորեցրեց մոբիլիզացնել ձեռնարկությունների կոլեկտիվների ստեղծագործական ջանքերը՝ գերակատարելու 1964—1965 թվականների պլանային առաջադրանքները, որպեսզի ապահովվի յոթնամյակի կոնտրոլ թվերի մակարդակը։

Արձագանքելով քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենասիրական նախաձեռնությանը՝ ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները պարտավորվեցին 103 տոկոսով կատարել յոթն-

ամյակի վեցերորդ տարվա առաջադրանքները, հայրենիքին տալ լրացուցիչ արտադրանք։ «103 տոկոս՝ այս է մեր բնագիծը» նշանաբանով են պայքարում ռեսպուբլիկայի աշխատավորները։ Ծավալված սոցիալիստական մրցությունը առաջին կիսամյակում տվեց դրական արդյունք։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները երկրին տվին 26 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Գերակատարվեցին արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևոր տեսակների թողարկման պլանները։

Ահա արդյունաբերության առանձին ճյուղերի անելիքներն ու խնդիրները 1964—1965 թվականներին։

ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ժողովրդական տնտեսության հիմնական և առաջատար ճյուղերից մեկն է։ «Ներկայումս երկրի էկոնոմիկայի զարգացման գործում բացառիկ կարևոր դեր է պատկանում քիմիական արդյունաբերությանը՝ որպես գյուղատնտեսության, արտադրության մյուս ճյուղերի հետագա վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն լծակի», ասված է ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ։

Այդ ասպարեզում մեծ են նաև մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների անելիքները։ Յոթնամյակի եզրափակիչ տարիներին քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա 46,2, ընթացիկ տարում՝ 24 տոկոսով։ 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, նախատեսվում է զգալի չափով ավելացնել հիմնական արտադրանքի մի շարք տեսակների թողարկումը։ Այսպես՝ սինթետիկ նյութերինն ու պլաստմասսայինը՝ 3,9, ծծմբաթթվինը՝ 3,86 անգամ, արհեստական թելերինը՝ 37, սինթետիկ կաուչուկինը՝ 31 տոկոսով և այլն։

Քիմիական արդյունաբերության հետագա զարգացման համար երկու տարում նախատեսվում են 73,4 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, ընթացիկ տարում՝ 33,7 միլիոն ռուբլու։ Շինարարական կազմակերպությունների և քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների անհետաձգելի խնդիրն է՝ ժամանակին շահագործման հանձնել նոր կարողությունները, ապահովելու համար երկրի աճող պահանջմունքները նոր, բարձրորակ սինթետիկ նյութերի, պլաստմասսաների ու հանքային պարարտանյութերի ուղղությամբ։

Շուտով Ս. Մ. Կիրովի անվան գործարանում շահագործման կհանձնվի բնական գազից ացետիլեն ստանալու առաջին ագրեգատը, իսկ մինչև տարեվերջը՝ երկրորդ և երրորդ ագրեգատները։ Շատ բան է արվելու Կիրովականի քիմկոմբինատի ցեխերի ընդլայնման, ամիակի և հանքային պարարտանյութերի արտադրության գործում բնական գազը լայնորեն օգտագործելու ուղղությամբ։

1964—1965 թվականների ընթացքում կկրկնապատկվի սինթետիկ կաուչուկի արտադրության կարողությունը. կրոտիլենի արտադրությունը կհասնի 4000 տոննայի, վինիլացետատինը կավելանա 22 հազար, պոլիվինիլային սպիրտինը՝ 1000 տոննայով։

Վիթխարի է մեծ քիմիայի խոշորագույն կառույցի՝ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի դերը ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման գործում։ Յոթնամյակի վերջին երկու տարիներում այս կառույցում կներդրվի 19,3 միլիոն ռուբլի, որը հնարավորություն կտա 1967 թվականին շահագործման հանձնելու կոմբինատը։ Կոմբինատը կարտադրի ալյումինի կա-



վահող, նատրիումի և կալցիումի մետասիլիկատներ, պոտաշ, ցեմենտ և բազմաթիվ այլ անհրաժեշտ քիմիական նյութեր։

Մեծ քիմիայի արագ զարգացմանը զուգընթաց զարկ է տրվում նաև փոքր քիմիայի զարգացմանը։ Երևանում կառուցվում է ռեակտիվների գործարան, որի դերը մեծ է ժողովրդական տնտեսության մեջ։ Այն կթողարկի տասնյակ տեսակի ռեակտիվ նյութեր, որոնք լայնորեն կօգտագործվեն մեծ քիմիայի, հատկապես քիմիական սինթեզի շատ պրոցեսներում, ինչպես նաև կենդանիների ու բույսերի շատ հիվանդությունների բուժման նպատակով։

ԼԵՌՆԱՅԻՆ ԵՎ ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱՅԻ արդյունաբերության արտադրանքը 1964—1965 թվականներին կավելանա նշանակալից չափով։ Կարողությունների ընդլայնման, ինչպես նաև նոր տեխնիկայի ու պրոգրեսիվ տեխնոլոգիայի կիրառման շնորհիվ 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում լայնորեն կընդարձակվի մոլիբդենի, սև պղնձի և գունավոր գլանվածքների արտադրությունը։

Մեծ խնդիրներ են դրված արդյունաբերության այս կարևոր ճյուղի արտադրական կարողությունների ստեղծման և ներքին ռեզերվների օգտագործման բնագավառում։ Մեծ ուշադրություն կհատկացվի Քաջարանի, Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատների կարողությունների լրիվ օգտագործմանը, ինչպես նաև Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի վերակառուցման աշխատանքների ավարտմանը։ Երկու տարվա ընթացքում նախատեսվում է կատարել մոտ 49 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմամբ պետք է բարելավել հանքավայրերի ռացիոնալ շահագործումը, կրճատել մետաղի կորուստը ամբողջ մետալուրգիական ցիկլում։

Վերջերս շահագործման հանձնվեց Ալավերդու ծծմբաթթվի նոր ցեխի առաջին հերթը, որը հնարավորություն կտա լրիվ օգտագործելու մետալուրգիական կոմպլեքսում առաջացող գազերը։ Նոր ցեխի լրիվ շահագործմամբ ավելի քան 7 անգամ կավելանա ծծմբաթթվի արտադրությունը։ Ծծմբաթթվի արտադրական բոլոր պրոցեսներն ամբողջովին մեքենայացված և ավտոմատացված են։ Անհրաժեշտ է կարճ ժամկետում յուրացնել ծծմբաթթվի արտադրության նոր տեխնոլոգիան և, միաժամանակ, շահագործման հանձնել ցեխի երկրորդ հերթը։

ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ժողովրդական տնտեսության զարգացման հիմքն է. այդ պատճառով էլ մեծ ուշադրություն է նվիրվում էներգետիկ տնտեսության կոմպլեքսային զարգացմանը։ Յոթնամյակի վերջին երկու տարում նախատեսված են 74,3 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ էներգետիկ նոր կարողություններ ստեղծելու նպատակով։ Այսուհետև առավել մեծ ուշադրություն կհատկացվի ջերմաէլեկտրակայանների կառուցմանը և 1965 թվականից սկսած մոտ երկու անգամ կկրճատվի Սևանից բաց թողնվող ջրի քանակը։ Երկու տարում ջերմաէլեկտրակայանների կարողությունները կավելանան 287 հազար կիլովատով։ Նախատեսվում է 2 տարում անցկացնել և շահագործման հանձնել 600 կիլոմետր բարձրավոլտ էլեկտրական հաղորդալարեր։ Մեծ աշխատանքներ են ծավալվելու Տաթևի հիդրոէլեկտրակայանի և Արփա-Սևան ջրանցքի կառույցներում։

Ժողովրդական տնտեսության պահանջները բավարարելու նպատակով 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի ար-

տադրությունը կավելանա 113 տոկոսով։ Ռեսպուբլիկայի պահանջը լրիվ բավարարելու համար նախատեսվում է եղբայրական Ադրբեջանից 1964 թվականին ստանալ 1270, իսկ 1965 թվականին՝ 1640 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ վճռական դեր է խաղում ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինության, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման գործում։ Յոթնամյակի երկու տարում մեքենաշինության արտադրանքի ծավալը կավելանա 26,7 տոկոսով, այդ թվում էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 17, հաստոցաշինությանը և գործիքաշինությանը՝ 50, սարքաշինությանը՝ 39 տոկոսով։

Չնայած դրան, մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության զարգացման երկու տարվա միջին տեմպը, նախորդ տարիների համեմատությամբ, որոշ չափով դանդաղում է։ Այդ մասամբ բացատրվում է որոշ տեսակի, հատկապես կոնստրուկցիոն և էլեկտրատեխնիկական պողպատների, ինչպես նաև կոմպլեկտավորման իրերի պակասով։

Մյուս պատճառներից մեկն էլ այն է, որ մեր մեքենաշինության որոշ ձեռնարկություններ շարունակում են թողարկել այնպիսի մեքենաներ, սարքեր ու ապարատներ, որոնք իրենց տեխնիկական մակարդակով ետ են մնում ժողովրդական տնտեսության բուռն աճի պահանջմունքից։ Մեր ժամանակներում արդյունաբերության զարգացման համար անհրաժեշտ են ավելի ու ավելի մեծ թվով պրոգրեսիվ հաստոցներ՝ ավտոմատներ և կիսավտոմատներ, հատուկ ագրեգատային և բարձր ճշգրիտ հաստոցներ, արտադրության ավտոմատացման առավել կատարելագործված սարքեր ու ապարատներ և բազմաթիվ այլ պրոգրեսիվ էլեկտրական մեքենաներ։

Այժմ ռեսպուբլիկայում թողարկվող մետաղահատ հաստոցների 50 տոկոսից ավելին խառատային ունիվերսալ հաստոցներ են, մինչդեռ այդ տիպի հաստոցների հարաբերակցությունը ՍՍՌՄ-ում 1961 թվականին կազմել է 30,4, իսկ ԱՄՆ-ում 1960 թվականին՝ 13,6 տոկոս։

Մեր մեքենաշինարարների առաջնահերթ խնդիրն է՝ մշակել և արագ յուրացնել նոր, ժամանակակից մեքենաների, էլեկտրոնային կիսահաղորդչային սարքերի, ավտոմատացման միջոցների և այլ սարքավորումների արտադրությունը, որը հնարավորություն կընձեռի լրիվ օգտագործելու ձեռնարկությունների կարողությունները, դրանով իսկ կապահովվի կոնտրոլ թվերով նախատեսված առաջադրանքների կատարումը։

1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա մեքենաշինության արտադրանքի մի շարք հիմնական տեսակների թողարկումը. մետաղահատ հաստոցներինը՝ 118, խոշոր էլեկտրական մեքենաներինը՝ 175, գեներատորներինը՝ 112, մինչև 100 կիլովատ կարողությամբ էլեկտրաշարժիչներինը՝ 120, կենտրոնախույս պոմպերինը՝ 116, ավտոմատացման սարքերինը՝ 135,5 տոկոսով և այլն։

Մեծ ուշադրություն կնվիրվի գործիքաշինության հետագա զարգացմանը։ Միութենական կառավարության որոշմամբ 1965 թվականին կավարտվի ալմազային գործիքների գործարանի կառուցումը, որը կապահովի Միության հարավային տնտեսական շրջանների սպասարկումը բարձրորակ ու չափազանց կարևոր սինթետիկ ալմազե գործիքներով։ Կավարտվի Լուսավանի գոր-



ծիքաշինական գործարանի գործիքային արտադրության կոմպլեքսը, կավելանան Երևանի գործիքաշինական գործարանի կարողությունները։

Մեծ անելիքներ ունեն ռեսպուբլիկայի մեքենաշինարարները քիմիական մեքենաշինության զարգացման, պարտիայի դեկտեմբերյան պլենումի որոշումների կատարման բնագավառում։ Կիրովականի մեքենաշինական գործարանն արդեն սկսել է թողարկել պլաստմասսաներ վերամշակող մի քանի նոր տեսակի մեքենաներ։

Մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության զարգացման համար երկու տարում նախատեսվում են ավելի քան 38 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։ Այդ ներդրումները հնարավորություն կտան զգալի չափով ավելացնելու մեքենաշինական ձեռնարկությունների արտադրական կարողությունները, այդ թվում՝ մետաղահատ հաստոցներինը՝ 2100 միավորով, գործիքներինը՝ 9,2 միլիոն, ավտոմատացման միջոցներինը՝ 5,2 միլիոն, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներինը՝ 8 միլիոն ռուբլով և այլն։

Մեքենաշինարարների հիմնական խնդիրն է նաև մոտ ժամանակում ապահովել կենցաղային սառնարանների թողարկումը։ Այժմ Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանում մեծ ջանքեր են գործադրվում այդ ուղղությամբ։

Մեքենաշինության մեջ լայնորեն կօգտագործվեն պլաստմասսաները և սինթետիկ այլ նյութեր. այդ հնարավորություն կընձեռի թեթևացնելու մեքենաների ու սարքերի քաշը, տնտեսելու մեծ քանակությամբ թանկարժեք գունավոր ու սև մետաղներ։ Կոմպլեքսային մեքենայացման կենթարկվեն արտադրության առանձին ճյուղեր, կծավալվի նաև միջճյուղային կոոպերացումը։

Մեծ անելիքներ ունեն ռեսպուբլիկայի մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտներն ու կոնստրուկտորական բաժինները՝ նոր, առավել կատարյալ մեքենաների, սարքերի ու ավտոմատացման միջոցների արագ յուրացման ասպարեզում։

ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ զարգացման տեմպերն ավելի բարձր են, քան նախատեսված է կոնտրոլ թվերով։ Անցած հինգ տարում մի շարք հիմնական շինանյութերի արտադրությունը զգալի չափով գերակատարվել է։ 1965 թվականին կարտադրվեն նախատեսվածից 295 հազար խորանարդ մետրով ավելի երկաթբետոնե կոնստրուկցիաներ, 135 հազար տոննայով ավելի ցեմենտ։ Զգալի չափով կավելանա ուղիղ հատված քարի, սանտեխնիկական և հախճապակյա իրերի արտադրությունը, իսկ համախառն արտադրանքի ծավալը կաճի 20 տոկոսով։

Կավելանա և թեթև լցանյութերի՝ պեռլիտի, հրաբխային և այլ անհրաժեշտ նյութերի արտադրությունը։ Կմեքենայացվեն հանքավայրերի արտադրական պրոցեսները՝ շինանյութերի արտադրությունը նոր, առավել բարձր ինդուստրիալ հիմքերի վրա դնելու նպատակով։

Շինանյութերի արդյունաբերության և շինարարական ինդուստրիայի զարգացման համար նախատեսվում է երկու տարում ներդնել 40,6 միլիոն ռուբլի։

ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ հետագա զարգացման համար նախատեսված միջոցառումները հնարավորություն կտան 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ նրա արտադրանքն ավելացնել 10,5 տոկոսով, այն դեպքում, երբ անցած հինգ տարում միջին տեմպը կազմել է 4,8 տոկոս։ Այդ ժամանակաշրջանում թեթև արդյունաբերության ձեռնարկությունները երկրին

պակաս են տվել 18,2 միլիոն մետր բամբակյա գործվածքներ, 14,6 միլիոն քառակուսի դեցիմետր փափուկ կաշի, 110 հազար քառակուսի դեցիմետր արհեստական կաշի։

Յոթնամյակի առաջադրանքների թերակատարումը հետևանք է այն բանի, որ շատ ղեկավարներ, մտահոգվելով միայն համախառն արտադրանքի պլանների կատարմամբ, մոռանում են ապահովել նաև նախատեսված ասորտիմենտի քանակը։ Բացի դրանից, ժողտնտխորհի թեթև արդյունաբերության վարչությունը և արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարները պատշաճ ուշադրություն չեն նվիրել թեթև արդյունաբերության ձեռնարկությունների ներքին ռեզերվների հայտաբերմանն ու դրանց լրիվ օգտագործմանը։

Մյուս հիմնական թերություններից մեկն էլ այն է, որ անբավարար չափով են օգտագործվում սինթետիկ նյութերը, հատկապես արհեստական մանրաթելերը, կաշվին փոխարինող պլաստմասսաները, որոնք իրենց որակով, դիմացկունությամբ և արտաքին տեսքով նույնիսկ գերազանցում են բնական հումքի շատ տեսակների։ Կիրովականի արհեստական մանրաթելերի գործարանում թողարկվող 6,2 հազար տոննա արհեստական մանրաթելերից միայն 600 տոննան, կամ 10 տոկոսն է օգտագործվում ռեսպուբլիկայում։

Միայն գիտության և արդյունաբերության աշխատողների համագործակցությամբ կարելի է կարճ ժամանակում լայնորեն օգտագործել քիմիական արդյունաբերության անսպառ հնարավորությունները, զգալի չափով ավելացնել սպառման առարկաների թողարկումը և բավարարել ժողովրդի աճող պահանջմունքները։

1964—1965 թվականներին թեթև արդյունաբերության գործող ձեռնարկությունների կարողություններն ընդարձակելու համար նախատեսվում է 17,4 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ, որի շնորհիվ զգալի չափով կավելանա կոշիկի, տրիկոտաժի, գուլպայի արտադրությունը։ Այս տարի շահագործման կհանձնվեն դաշնամուրի ֆաբրիկայի երկրորդ հերթը և Իջևանի գորգի կոմբինատը, իսկ 1965 թվականին հիմնականում կավարտվի Երևանի մետաքսյա գործվածքների կոմբինատի, Կամոյի և Լենինականի ֆաբրիկաների վերակառուցումը։ Կավելանան թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կարողությունները. երկու տարում կոշկի արտադրությունը կաճի 2,22 միլիոն զույգով, իսկ տրիկոտաժեղենինը 20,3 միլիոն հատով։

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ հետագա արագ վերելքի ապահովումը ամբողջ պարտիայի, ամբողջ ժողովրդի անհետաձգելի խնդիրն է։

ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումը նոր ուղիներ ու հեռանկարներ բացեց երկրի գյուղատնտեսության արագ զարգացման համար։ Այժմ խնդիր է դրվում գյուղատնտեսությունը վարել նոր, առաջավոր եղանակով, աշխատանքի և նյութական միջոցների նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունք ստանալու համար։

Որպեսզի գյուղատնտեսության աշխատողները պատվով կատարեն իրենց առաջադրանքները, անհրաժեշտ է գիտության արժեքավոր հետազոտություններն ու արտադրության առաջավորների ուսանելի փորձը համարձակորեն ներդնել գյուղատնտեսական արտադրության մեջ։ Երկամյա պլանով նախատեսվում է մեծ չափով ավելացնել տեխնիկական կուլտուրաների՝ խաղողի, պտուղների, բանջարեղենի արտադրությունը, զարգացնել անասնապահությունը։



Նատ բան է արվելու ոռոգելի հողերի ընդլայնման, նրանց ճիշտ օգտագործման, ինչպես նաև ջրաշինարարության ուղղությամբ։ Բերքատու տարածությունների ավելացման և բերքատվության բարձրացման շնորհիվ 1965 թվականին խաղողի արտադրությունը կհասնի 231 հազար, պտուղներինը՝ 81 հազար, բանջարեղենինը՝ 123 հազար տոննայի։

Մեծ ծավալ կստանա կապիտալ շինարարությունը գյուղում։ Գյուղատնտեսության զարգացման համար նախատեսվում է երկու տարում ներդնել 106 միլիոն ռուբլի։

1964—1965 թվականներին շահագործման կհանձնվեն Մանթաշի և Ապարանի ջրամբարները, Գյուլլի Բուլաղի, Գետափ-Աղավնաձորի, Այրում-Ծոճկանի և մի շարք այլ ջրհան կայաններ։ Այդ հնարավորություն կտա ոռոգելի հողատարածությունները երկու տարում ընդարձակելու 14,7 հազար հեկտարով։ Զգալի աշխատանքներ են նախատեսված անասնապահության հետագա զարգացման և նրանց մթերատվության բարձրացման ուղղությամբ։

Անասնապահության զարգացման գլխավոր և վճռական պայմանը կերի կայուն բազայի ամրապնդումն է. այդ իսկ պատճառով լուրջ ուշադրություն կհատկացվի կերային կուլտուրաների արտադրության ավելացմանը։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները, ոգեշնչված պարտիայի դեկտեմբերյան ու փետրվարյան պլենումների որոշումներով, ձեռնամուխ են եղել գյուղատնտեսության հետագա վերելքին։

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ բնագավառում նախատեսվում է բարձրացնել հանրակրթական ուսումնական հաստատությունների տեխնիկական բազան։ Գրեթե ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում կկառուցվեն նոր կահավորված բազմաթիվ դպրոցներ 37,9 հազար աշակերտական տեղով, իսկ նախադպրոցական հիմնարկություններում երեխաների թիվը կավելանա 7,6 հազարով։

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա 16 հազարով, հասնելով 66 հազարի։

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել նոր կադրերի պատրաստման որակին, բարելավել ուսումնադաստիարակչական աշխատանքները ուսումնական հաստատություններում։ Զգալի աշխատանքներ են նախատեսված առողջապահության բնագավառում։ Երկու տարում հիվանդանոցային մահճակալների թիվը կավելանա 1945-ով, հանգստյան տներն ու սանատորիաները կընդարձակվեն 575 տեղով։ Կբարձրանա բնակչության բուժսպասարկման կուլտուրան։

Մեծ է գիտության ու տեխնիկայի նվաճումների դերը ժողովրդական տընտեսության զարգացման գործում։

Նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի առաջընթացն ապահովում է աշխատատար պրոցեսների մեքենայացումը, արտադրության կատարելագործումը. դրա հիման վրա բարելավվում են ձեռնարկությունների տնտեսական ցուցանիշները, բարձրանում են թողարկվող արտադրանքի որակն ու աշխատանքի արտադրողականությունը։ Երկու տարում ժողովրդական տնտեսության մեջ կիրականացվեն 600 խոշոր տեխնիկական միջոցառումներ, որոնք հնարավորություն կտան տնտեսելու մոտ 10 միլիոն ռուբլի։

Ձգալի միջոցառումներ են նախատեսված աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և ինքնարժեքի իջեցման ուղղությամբ։

Երկու տարում աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ կբարձրանա 10,3, շինարարության մեջ՝ 13,1 տոկոսով։ Արտադրական ծախսերն այս տարի կպակասեն 2,1, իսկ 1965 թվականին՝ 1,4 տոկոսով։

ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ վճռական դեր է խաղում ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա առաջընթացում։

Յոթնամյակի անցած հինգ տարում ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել է 952 միլիոն ռուբլի, կոնտրոլ թվերով նախատեսված 852 միլիոն ռուբլու փոխարեն։ Երկու տարում նախատեսվում է կատարել ավելի քան 650 միլիոն ռուբլու կապիտալ շինարարություն, այդ թվում այս տարի՝ 313 միլիոն ռուբլու, որը գրեթե հավասար է յոթնամյակի անցած չորս տարվա կատարվածին։

Այսպիսով յոթնամյակի ընթացքում կապիտալ շինարարության ընդհանուր ծավալը կկազմի մոտ 1603 միլիոն ռուբլի, պլանով նախատեսված 1323 միլիոն ռուբլու դիմաց։

Կապիտալ շինարարության առաջադրանքների հաջող կատարման, շինարարության ժամկետների կրճատման համար անհրաժեշտ է աշխատանքային հիմնական ռեսուրսները, ինչպես նաև տեխնիկական, նյութական ու ֆինանսական բոլոր միջոցները կենտրոնացնել գործարկվելիք օբյեկտներում։

Կառուցել արագ, էժան և որակով, այս է շինարարության աշխատողների հիմնական խնդիրը։

Ձեռնամուխ լինելով ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան ու փետրվարյան պլենումների որոշումների կենսագործմանը, ռեսպուբլիկայի աշխատավորները, ոգևորված երկրի էկոնոմիկայի զարգացման հեռանկարներով, ջանք չեն խնայի հաջողությամբ կենսագործելու պարտիայի առաջադրած մեծ ու հոյակապ խնդիրները։



# Այցելում ենք ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԷՍՏՈՆԻԱՆ ԱՅՍՕՐ

Ա. ՎԱԴԵՐ

Էստոնիայի կոմպարտիայի Կենտկոմի երկրորդ քարտուղար

1964 թվականի հուլիսի 21-ին Սովետական Էստոնիայի աշխատավորները նշեցին սովետական իշխանության վերականգնման 24-րդ տարեդարձը։ Սովետական մյուս ռեսպուբլիկաների աշխատավորների հետ միասին նրանք կատարեցին ևս մեկ առաջընթաց քայլ դեպի կոմունիզմ տանող լենինյան լուսավոր ուղիով։

Սովետական իշխանության վերականգնման տրադիցիոն տոները Լիտվայում, Լատվիայում և Էստոնիայում նշվեցին ՍՍՌՄ Գերագույն սովետի IV սեսիայի առաջ բերած համաժողովրդական մեծ վերելքի պայմաններում։ Ն. Ս. Խրուշչովի «Ժողովրդի բարեկեցության բարձրացման բնագավառում ՍՄԿՊ ծրագրի կատարման միջոցառումների մասին» զեկուցումը, կոլտնտեսականներին կենսաթոշակ ու նպաստ նշանակելու և բնակչությանն անմիջականորեն սպասարկող ժողովրդական տնտեսության ճյուղերի աշխատողների աշխատավարձը բարձրացնելու վերաբերյալ օրենքներն ամենաջերմ և կենդանի արձագանք գտան ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորների շրջանում։ Սեսիայի նյութերում վառ կերպով արտահայտված է պարտիայի ու կառավարության մշտական հոգատարությունը ժողովրդի բարօրության նկատմամբ, դրանցում արտացոլված է ՍՄԿՊ ծրագրի կենսագործման համար մղվող անդուլ պայքարը։

Սովետական իշխանության տարիներին առաջընթաց վիթխարի քայլ կատարեցին Սովետական Էստոնիայի էկոնոմիկան ու կուլտուրան։ Դրանում ակնառու կերպով երևում է շահագործման կապանքներից ազատագրված աշխատավոր ժողովրդի ստեղծագործ ջանքերի արգասիքը։

Եթե բուրժուական Էստոնիայի արդյունաբերության հիմնական ճյուղը թեթև ու սննդի արդյունաբերությունն էր, ապա սովետական ժամանակաշրջանի համար բնորոշ է ծանր արդյունաբերության արագ վերելքը։ 1963 թվականին ծանր արդյունաբերության տեսակարար կշիռը կազմեց ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի մոտ 55 տոկոսը։ Համեմատու-

թյան համար արժե հիշատակել, որ 1940 թվականին ծանր արդյունաբերության տեսակարար կշիռը Էստոնիայի ամբողջ արդյունաբերության մեջ 25 տոկոսից չէր անցնում։ Դա համոզիչ կերպով վկայում է, որ բուրժուական Էստոնիայի էկոնոմիկան մեծ չափով կախված էր արևմտյան տերությունների էկոնոմիկայից։

Էստոնիայի ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը սովետական իշխանության տարիներին աճել է ավելի քան 15 անգամ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը զարգանում է իրական հնարավորությունների, բնական ռեսուրսների հիման վրա։ Հաջողությամբ է զարգանում էներգետիկան, որի համար բազա են ծառայում այրվող թերթաքարերը։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1963 թվականին հասավ 5,3 միլիարդ կիլովատ-ժամի, իսկ 1940 թվականի համեմատությամբ աճեց 27 անգամ։ Մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Սովետական Էստոնիան գրավում է առաջին տեղը միութենական ռեսպուբլիկաների մեջ և առաջին տեղերից մեկը ամբողջ աշխարհում։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ զգալի տեղ է գրավում թերթաքարի հանույթն ու վերամշակումը։ Բավական է ասել, որ անցյալ տարի բնակչության մեկ շնչին ընկնող թերթաքարերի հանույթը կազմեց 10,2 տոննա։ Թերթաքարն օգտագործվում է ոչ միայն որպես վառելիք ջերմաէլեկտրակայաններում ու արդյունաբերական ձեռնարկություններում, այլև որպես հումք՝ քիմիական արդյունաբերության մեջ։ Գիտնականները շարունակում են ուսումնասիրել թերթաքարերի՝ որպես քիմիական արդյունաբերության սկզբնահումքի, հատկությունները և հաջող փորձեր են կատարում այդ ուղղությամբ։ Ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիայի քիմիայի ինստիտուտը հետազոտել է թերթաքարի օրգանական նյութի կառուցվածքը և նրա քիմիական ու ջերմային քայքայման օրենքները։ Քիմիական գիտությունների դոկտոր Տ. Ֆայնհոլդը մշակել է սինթետիկ լվացող նյութերի արտադրության տեխնոլոգիան։ Քիմիական գիտությունների դոկտոր Ա. Ֆոմինան մեծ աշխատանք է կատարել երկհիմք կարբոնաթթուների ուսումնասիրության ուղղությամբ։

Բուրժուական Էստոնիան հանքային պարարտանյութեր գրեթե չէր արտադրում։ Չնայած մեծ քանակությամբ հումքի՝ ֆոսֆորիտների առկայությանը, 1939 թվականին արտադրվում էր 8—10 հազար տոննա ֆոսֆորային ալյուր, իսկ այժմ ռեսպուբլիկայում արտադրվում են ավելի քան 600 հազար տոննա սուպերֆոսֆատ, 100 հազար տոննա ծծմբաթթու և այլ քիմիական նյութեր։

Բուռն տեմպերով են աճում մեքենաշինությունը, գործիքաշինությունը, շինանյութերի արդյունաբերությունը։ Միայն վերջին տարիներին կառուցվել ու վերակառուցվել են ավելի քան 250 ձեռնարկություններ ու արտադրամասեր, այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպես Մերձբալթյան ԳՐԷՍ-ը, Վ. Ի. Լենինի անվան թերթաքար վերամշակող կոմբինատը, «Մաարդու» քիմկոմբինատը և այլն։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում Էստոնական ՍՍՌ արդյունաբերական արտադրությունը զարգանում է այնքան բուռն թափով, որ արդյունաբերության որոշ ճյուղերում աշխատուժի սուր պակաս է զգացվում։ Մեկընդմիշտ անցյալի գիրկն է անցել բանվոր դասակարգի պատուհասը՝ գործազրկությունը, որը խրոնիկական բնույթ էր կրում բուրժուական Էստոնիայում։



Արդյունաբերական ձեռնարկությունների բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, ղեկավարները, սկզբնական պարտիական կազմակերպությունները սիստեմատիկորեն զբաղվում են արտադրության հետագա կատարելագործման հարցերով։ Բավական է ասել, որ վերջին տասը տարում արդյունաբերության մեջ արմատավորված է ավելի քան 15 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնք ժողովրդական տնտեսությանը տվել են մոտ 10 միլիոն ռուբլու պայմանական խնայողություն։

Թեթև և սննդի արդյունաբերության հետագա զարգացման շնորհիվ ավելացել է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ 1940 թվականի համեմատությամբ, 1963 թվականին բամբակեղենի մանվածքի արտադրությունն ավելացել է 4,3 անգամ, բրդե գործվածքներինը՝ 3,4, կոշկեղենինը՝ 8,3 անգամ և այլն։

Առանձնապես մեծ զարգացում է ստացել ձկնեղենի արդյունաբերությունը։ Ձկան որսը 1940 թվականի 22,8 հազար տոննայից, 1963 թվականին հասել է 132 հազար տոննայի, կամ ավելացել է 5,8 անգամ։ Այսպիսին են արդյունաբերության բնագավառի մի քանի հիմնական ցուցանիշները։ Այդ թվերի հետևում մենք տեսնում ենք Սովետական Էստոնիայի նոր բանվոր դասակարգի ամենօրյա աշխատանքը, մի դասակարգ, որն աչքի է ընկնում աշխատանքային բարձր կուլտուրայով, յուրացրել է նոր տեխնիկան ու տեխնոլոգիան։ Ռեսպուբլիկայի սոցիալիստական մրցության ավանգարդում միշտ էլ ընթանում են թերթաքարերի ավազանի աշխատավորները։ Կոմունիստական-երիտասարդական անցահատ բրիգադներից մեկը ղեկավարում է ԼԿԵՄ Կենտկոմի անդամ Է. Պրիյվիտսը։ Վերջերս այդ բրիգադը սահմանեց շտրեկի անցահատման նոր ռեկորդ, ամսական անցնելով 815 գծամետր։ Թերթաքարի ավազանի ամբողջ պատմության ընթացքում աշխատանքի այսպիսի արտադրողականության դեռ ոչ մի բրիգադ չի հասել։

Սովետական իշխանության տարիներին Էստոնիան դարձավ ինդուստրիալ ռեսպուբլիկա։ Դա չի նշանակում, իհարկե, որ գյուղատնտեսությունն անցնում է հետին պլան։ Գյուղատնտեսությունը կոլեկտիվ մեթոդով վարելու շնորհիվ ռեսպուբլիկան մսի, կաթի, ձվի արտադրությամբ գերազանցել է 1940 թվականի մակարդակը։ Ընդ որին կարևոր է ընդգծել, որ գյուղական վայրերում ապրող բնակչության թիվը խիստ կրճատվել է։ Այսպես, եթե 1939 թվականին գյուղական վայրերում ապրում էր բնակչության 66 տոկոսը, ապա այժմ միայն 39 տոկոսը։ Այլ կերպ ասած, գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունն աճել է 2,5 անգամ։

Ինչ վերաբերում է բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությանը, ապա Էստոնական ՍՍՌ-ն գերազանցել է ԱՄՆ-ի մակարդակը։ 1962 թվականին բնակչության մեկ շնչի հաշվով Էստոնիայում արտադրվել է կաթ երկու անգամ, իսկ միս երեք անգամ ավելի, քան ԱՄՆ-ում։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն առանձնապես բուռն տեմպերով է զարգանում 1953 թվականից հետո, երբ պարտիան ստեղծեց դրա համար անհրաժեշտ բոլոր պայմանները։ Սոցիալիստական գյուղատնտեսության մեջ համատարած կերպով մուտք են գործել մեքենայացումն ու էլեկտրականությունը։ Ռեսպուբլիկայում տրակտորների ու բեռնատար ավտոմեքենաների պարկը 1939 թվականի համեմատությամբ աճել է գրեթե 10 անգամ։ Էլեկտրաէներ-

գիայի սպառումը 1940 թվականի համեմատությամբ 1963 թվականին ավելացել է 58 անգամ։

Բարձր ցուցանիշների են հասել ռեսպուբլիկայի առաջավոր տնտեսությունները։ Պայդեսի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության «Էստոնիա» կոլտնտեսությունում (վարչության նախագահ ընկ. Մարրանդի) 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրվում է 670 ցենտներ կաթ, 50,4 ցենտներ միս։ Կոլտնտեսությունն ամեն տարի գերակատարում է պետության միս, կաթ, ձու, հացահատիկ և կարտոֆիլ վաճառելու պլանը։ Հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունն այդ տնտեսության մեջ կազմել է հեկտարից 24,5 ցենտներ, կարտոֆիլինը՝ մոտ 200 ցենտներ, եգիպտացորենի կանաչ մասսայինը՝ 396 ցենտներ, շաքարի ճակնդեղինը՝ 400 ցենտներ։

Մի այլ տնտեսությունում՝ Տարտուի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության հենակետային-ցուցադրական սովխոզում (դիրեկտոր ընկ. Կոնիյարվ) հեկտարից ստացվել է 26,9 ցենտներ հացահատիկ, վարելահողի յուրաքանչյուր հեկտարից՝ 4350-ական կերային միավոր, 100 հեկտար հողատարածության հաշվով՝ 865 ցենտներ կաթ և 237,9 ցենտներ միս։

Լավագույն տնտեսությունների ցուցանիշները, առաջավոր դաշտավարների ու անասնաբույծների աշխատանքի արդյունքները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ Էստոնիայի գյուղատնտեսական արտադրությունը հետագա զարգացման մեծ հնարավորություններ ունի։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ներկայումս ջանքեր են գործադրում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունն է՛լ ավելի բարձրացնելու համար։

Սովետական Էստոնիայի էկոնոմիկայի անշեղ վերելքն այն հաստատուն հիմքն է, որի վրա հաջողությամբ զարգանում է էստոն ժողովրդի կուլտուրան։

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է ռեսպուբլիկայի քաղաքների ու ավանների դեմքը, կառուցվել են շատ նոր տներ, ակումբներ, կուլտուրայի տներ, կենցաղային նշանակություն ունեցող օբյեկտներ, այլ կերպ ասած ստեղծվել են բնակչության բարեկեցիկ կյանքի և բեղմնավոր աշխատանքի համար բոլոր պայմանները։ Ամբողջովին բուժված են այն խոր վերքերը, որ պատճառել էին ֆաշիստները պատերազմի դաժան տարիներին։

Էստոնական ՍՍՌ 10 հազար բնակչին ներկայումս ընկնում է հանրակրթական դպրոցի 1635 սովորող և բուհերի 134 ուսանող։ Այս տվյալները զգալիորեն գերազանցում են մի շարք զարգացած կապիտալիստական երկրների համապատասխան ցուցանիշները։ Բուրժուազիայի տիրապետության ժամանակաշրջանի համեմատությամբ միջնակարգ հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը աճել է 3,5 անգամ, տեխնիկումներում ու միջնակարգ մասնագիտական դպրոցներում սովորողներինը՝ 9 անգամ, բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողներինը՝ 4,9 անգամ։

Սովետական Էստոնիայի աշխատավորների կուլտուրական պահանջմունքների աճման մասին է վկայում նաև այն փաստը, որ 1000 բնակչի հաշվով տպագրվում են 1120 ժուռնալ ու թերթ։ Այսպիսով, բնակչության մեկ շնչին ընկնող հրատարակությունների քանակությամբ Էստոնական ՍՍՌ-ն միութենական ռեսպուբլիկաների մեջ գրավում է առաջին տեղը։

Սովետական իշխանության տարիներին լայն զարգացում են ստացել կինո-



ֆիկացիան, ռադիոհաղորդումը և հեռուստատեսությունը։ 1963 թվականին ռեսպուբլիկայում կար 480 կինոսարքավորում կամ 8,6 անգամ ավելի, քան 1940 թվականին։ 1963 թվականի վերջերին յուրաքանչյուր հազար մարդուն ընկնում էր 350 ռադիոընդունիչ և հեռուստացույց։ Հեռուստացույցների թիվը ռեսպուբլիկայում հասել է հարյուր հազարի։ Սովետական մարդկանց բարեկեցության բարձրացումը կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության մշտական հոգատարության առարկան է։ Այդ հոգատարությունը մըշտապես զգում են նաև Սովետական Էստոնիայի աշխատավորները։ Ներկայումս բնակչության մեկ շնչի հաշվով ռեսպուբլիկայում 3,5 անգամ ավելի շատ ապրանք է վաճառվում, քան 1940 թվականին։

Սովետական իշխանության տարիներին Էստոնիայում իսկական կուլտուրական ռևոլյուցիա կատարվեց։ Ռեսպուբլիկայում կա (դպրոցական գրադարանների հետ միասին) 2800 գրադարան՝ մոտ 20 միլիոն օրինակ գրքերի ֆոնդով։ Գրադարանների շուրջն է համախմբվել ավելի քան 650 հազար ընթերցող, այսինքն՝ յուրաքանչյուր երկու բնակչից մեկը։

Հաջողությամբ է զարգանում գիտությունը։ Սովետական իշխանության տարիներին ստեղծված է գիտությունների ակադեմիա, որի գիտահետազոտական ինստիտուտներն, ինչպես և ժողտնտխորհի ճյուղային ինստիտուտներն իրենց ավանդն են մուծում ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման գործում։ Այսպես, օրինակ, նոր շինանյութերի արտադրության բնագավառում մեծ նշանակություն ունեն սիլիկալցիտի ինստիտուտի գիտնականների կատարած աշխատանքները։ Մի խումբ գիտնականներ քիմիական գիտությունների թեկնածու Լյայատսի ղեկավարությամբ մշակել են իզոպրենից ցիտրալ ու այլ արժեքավոր նյութեր, իսկ դրանցից Ա, Ե, Կ խիստ կարևոր վիտամինները ստանալու եղանակը։ Այդ եղանակի տնտեսական արդյունավետությունը չափազանց բարձր է։

Կարելի է բերել գիտնականների կողմից գիտական ու տեխնիկական պրոբլեմների մշակման նաև այլ օրինակներ։ Ռեսպուբլիկայում աճել ու գործում է նոր ինտելիգենցիա՝ ժողովրդական տնտեսության մասնագետներ, գիտության և կուլտուրայի գործիչներ։ Եթե 1940 թվականին Էստոնիայում կար բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ 14,6 հազար մասնագետ, ապա 1962 թվականի վերջերին նրանց թիվը հասավ 68,8 հազարի։ Այդ ժամանակամիջոցում ինժեներների ու տեխնիկների թիվն ավելացավ 5 անգամ, իսկ միջնակարգ կրթություն ունեցող մասնագետների թիվը՝ 5,3 անգամ։

Շնորհակալ ու բեղմնավոր աշխատանք է կատարում ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիան։ Նրա գործունեությունն աշխուժացավ հատկապես արվեստի ու գրականության գործիչների հետ պարտիայի և կառավարության ղեկավարների ունեցած հիշարժան հանդիպումներից և ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո։

Ներկայումս ստեղծագործական ինտելիգենցիայի համար գլխավորն ու բնորոշը նպատակի ու խնդիրների պարզորոշությունն է։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ ստեղծագործական կյանքի զարկերակը երբեք այնպես համաչափ չի խփել, ինչպես այժմ։ ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո անցած վերջին մեկ տարում Էստոնիայի գրականությունը հարստացավ այնպիսի հիանալի երկերով, ինչպիսիք են Յու. Սմուլի «Ճապոնական ծովը, դեկտեմբեր», Պ. Կուուսբերգի «Անդրես Լապետեուսի հետ պատահած դեպքը»,

Վ. Բեկմանի «Արևելյան Եվրոպայի լույսը» և այլն։ Նոր ստեղծագործություններով հարստացավ նաև երաժշտական արվեստը։

Ստեղծագործական ինտելիգենցիայի համար բնորոշ է նոր ուժերի երևան գալը։ Այսօր արվեստի ու գրականության շատ բնագավառներում տոն են տալիս այն մարդիկ, որոնց անունները երկու տարի առաջ դեռևս հայտնի չէին թե ընթերցողներին և թե հանդիսատեսներին։ Առանձնապես ուրախալի է այն, որ ստեղծագործող երիտասարդությունը ձգտում ունի դեպի ժամանակակից թեմատիկան։

ՍՄԿՊ ծրագրում ասված է. «Կոմունիզմի կուլտուրան իր մեջ կուտակելով և զարգացնելով լավագույն այն ամենը, ինչ ստեղծել է համաշխարհային կուլտուրան, կդառնա մարդկության կուլտուրական զարգացման նոր, բարձրագույն աստիճանը։ Նա կմարմնավորի հասարակության հոգևոր կյանքի ամբողջ բազմազանությունը և հարստությունը, նոր աշխարհի բարձր գաղափարայնությունը և հումանիզմը։ Դա կլինի անդասակարգ հասարակության, համաժողովրդական, համամարդկային կուլտուրա»։

Պարտիայի ծրագրի այդ պահանջը կատարելու համար վիթխարի նշանակություն ունի ազգային կուլտուրաների փոխազդեցությունն ու փոխադարձ հարստացումը։

Վերջին տարիներս էստոնական ՍՍՌ-ում իրականացվել են մի շարք միջոցառումներ, որոնց նպատակն է եղել էլ ավելի ընդլայնել ու ամրապնդել կուլտուրական կապերը եղբայրական ռեսպուբլիկաների հետ։ Մենք նկատի ունենք մոլդավական արվեստի շաբաթը էստոնիայում և էստոնական արվեստինը՝ Մոլդավիայում, որոնք անցկացվեցին 1963 թվականին։ Մոլդավիայի արվեստի վարպետներն ու գեղարվեստական կոլեկտիվները ելույթներ ունեցան ռեսպուբլիկայի բազմաթիվ բնակավայրերում։ Մոլդավիայի գունեղ արվեստը անջնջելի տպավորություն թողեց։

Գնալով հաճախակի են դառնում արվեստի վարպետների այցելությունները միութենական ռեսպուբլիկաները։ Միայն էստոնական պետական ֆիլհարմոնիան 1963 թվականին ռեսպուբլիկայի սահմաններից դուրս տվել է 368 համերգ, որոնց ներկա է եղել ավելի քան 200 հազար մարդ։

Թատերական կոլեկտիվների, նվագախմբերի ու երգչախմբերի ռեպերտուարում գնալով ավելի մեծ տեղ են գրավում եղբայրական միութենական ռեսպուբլիկաների կոմպոզիտորների ստեղծագործությունները։ Դրան շատ բանով են նպաստում այդ ռեսպուբլիկաների ռադիոյի և հեռուստատեսության՝ էստոնիայում անցկացվող օրերը։ Այսպես, անց են կացվել Լիտվական ՍՍՌ, Ադրբեջանական ՍՍՌ, Վրացական ՍՍՌ, Հայկական ՍՍՌ և այլ ռեսպուբլիկաների ռադիո-հեռուստատեսային հաղորդումները։

Ունկնդիրների շրջանում մեծ հետաքրքրություն առաջ բերին «Երաժշտական նշանավոր ստեղծագործություններ» սերիայի ռադիոհաղորդումները, որոնց մեջ մտցված էին Տերտերյանի «Հայրենիք» վոկալ-սիմֆոնիկ ցիկլը, Եղիազարյանի՝ «Հրազդան» սիմֆոնիան, Պրոկոֆևի «Պատերազմ և խաղաղություն», «Սերը երեք նարինջների նկատմամբ», Դանկևիչի «Բոգդան Խմելնիցկի», Տարաձեի «Հյուսիսային հարսը» և այլ օպերաների մոնտաժային տրանսլացիաները։

Երաժշտական կյանքում նշանակալի տեղ են գրավում էստոնական կոմպոզիտորների ստեղծագործությունները՝ Է. Տամբերգի «Լուսնային օրատո-



րիան», Յա. Կոխի «Ունիվերմագ», Է. Տամբերգի «Տղան և թիթեռը», Խ. Յուրասալուի «Փողոցը» երեք փոքրիկ բալետները, Է. Արրոյի երկերը և այլն։

Էստոնական ՍՍՌ կուլտուրական կյանքում զգալի տեղ է գրավում գեղարվեստական ինքնագործունեությունը։ Ռեսպուբլիկայում գործում են 718 պետական, արհմիութենական, կոլտնտեսային կուլտուրայի տներ ու ակումբներ և մոտ հազար կարմիր անկյուններ, որոնց կից ստեղծված են գեղարվեստական ինքնագործունեության մոտ 8500 կոլեկտիվներ ու խմբակներ։ Այս վերջիններն ընդգրկում են ավելի քան 120 հազար բանվոր, ծառայող և նրանց ընտանիքի անդամներ։ Միայն 1963 թվականին գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվները տվել են ավելի քան 56 հազար ներկայացում ու համերգ, որոնց ներկա է եղել շուրջ 1,5 միլիոն մարդ։ Այդ կոլեկտիվների ռեպերտուարում հիմնականում մտնում են սովետական հեղինակների երկերը և սովետական ժողովուրդների ստեղծագործությունը։

Էստոնական ՍՍՌ-ում սիրում են ինքնագործունեությունը և ամենօրյա ուշադրություն հատկացնում նրան։ Մենք ձգտում ենք բազմազան դարձնել բնակչության գեղարվեստական ինքնագործունեության մեջ ներգրավելու ձևերը։ Այդ կապակցությամբ հետաքրքրական կլիներ նշել գեղարվեստական ինքնագործունեության այն ստուգատեսը, որ անցկացվեց հեռուստատեսությամբ 1963 թվականին և տևեց մի քանի շաբաթ։ Այդ ստուգատեսին մասնակցեց ավելի քան 10 հազար մարդ։

Չի կարելի լռությամբ անցնել երգի այն տրադիցիոն տոների կողքով, որոնք ժողովրդի երգի ու պարի արվեստի ստուգատեսների նշանակություն ունեն։ Երգի տոները մեզ մոտ ամեն տարի անց են կացվում տերիտորիալ հատկանիշով, ըստ ռեսպուբլիկայի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների, շրջանների ու քաղաքների։ Երգի ռեսպուբլիկական տոնն անց է կացվում հինգ տարին մեկ անգամ։ Հաջորդ այդպիսի տոնը հարմարեցված է Էստոնիայում սովետական իշխանության հաստատման 25-րդ տարեդարձին, այսինքն՝ տեղի է ունենալու 1965 թվականի հուլիսին, բայց արդեն այժմվանից սկսվել է նրա նախապատրաստությունը։ Այդ ուղղությամբ կատարվող աշխատանքի թափի մասին է վկայում այն ուշագրավ փաստը, որ ռեսպուբլիկական հավաքական երգչախմբին մասնակցելու է շուրջ 35 հազար մարդ։

Այս տարվա մայիսի վերջին հունիսի սկզբին Էստոնական ՍՍՌ-ում անցկացվեց հայկական արվեստի շաբաթ, որը մեծ հաջողություն ունեցավ, դարձավ սովետական ազգային արվեստի իսկական տոն, շատ բանով նպաստեց երկու եղբայրական ռեսպուբլիկաների ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, նրանց կապերի հետագա ընդլայնմանը։

Հայկական ՍՍՌ գեղարվեստական կոլեկտիվները եղան ռեսպուբլիկայի գրեթե բոլոր խոշոր կենտրոններում՝ 23 քաղաքներում, բանվորական ավաններում և գյուղական բնակավայրերում։ Նրանց համերգներին ու այլ միջոցառումներին ներկա եղավ ավելի քան 120 հազար մարդ։

Էստոնիայի աշխատավորները կարողացան ծանոթանալ Հայկական ՍՍՌ լավագույն գեղարվեստական կոլեկտիվների ու կատարողների բարձր արվեստին։

Հայկական արվեստի շաբաթվա ընթացքում Հայկական ՍՍՌ պատվիրակությունը, որին գլխավորում էր ՀԿՊ Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Հովհ. Բաղդասարյանը, մի շարք հանդիպումներ ունեցավ Էստոնիայի աշխա-

տավորների հետ։ Անմոռանալի էին Տարտուի համալսարանում, Սաարեմաա կղզում, Հիյումաաում և այլ վայրերում տեղի ունեցած հանդիպումները։ Հայաստանի պատվիրակության ներկայացուցիչները Տարտուի համալսարանին հանձնեցին հայ մեծ լուսավորիչ և գրող Խաչատուր Աբովյանի մարմարե կիսանդրին, այն մարդու, որը 130 տարի առաջ ավարտել էր Տարտուի համալսարանը։ Էստոնիայի կոմպարտիայի Կենտկոմը և Մինիստրների սովետը որպես նվեր Հայկական ռեսպուբլիկային հանձնեցին Խ. Աբովյանի արխիվի իսկական փաստաթղթերը, որոնք պատմական մեծ արժեք են ներկայացնում։

Հարկ է նշել, որ Տարտուի համալսարանը Ռուսաստանի հնագույն բարձրագույն ուսումնական հաստատություններից մեկն է, որտեղից դուրս են եկել մեր երկրի շատ ականավոր գիտնականներ։ Խաչատուր Աբովյանի հետ միասին Տարտուի համալսարանում կրթություն են ստացել մոտ 200 հայեր, որոնց մեջ եղել են բանաստեղծներ, գիտնականներ և թարգմանիչներ։

Այժմ Տարտուի համալսարանը նոր կադրերի դարբնոց է, որտեղ սովորում են մեր երկրի շատ ժողովուրդների ներկայացուցիչներ։

Հայկական արվեստի շաբաթվա ժամանակ Էստոնիայում էին գտնվում Հայաստանի ստեղծագործական միությունների շատ ներկայացուցիչներ՝ կոմպոզիտորներ, գրողներ, նկարիչներ, կինոաշխատողներ։ Նրանք նույնպես շատ բարեկամական հանդիպումներ ունեցան գործարաններում, սովխոզներում ու կոլտնտեսություններում։ Իրենց էստոնական կոլեգաների հետ միասին նրանք քննարկում էին ստեղծագործական զանազան պրոբլեմներ, եղբայրական սովետական ժողովուրդների կուլտուրաների փոխադարձ հարստացման ու մերձեցման ուղիները։ Էստոնական ՍՍՌ գրողների միությունը, օրինակ, հայ գրողների հետ միասին հայ գրականության երեկոներ անցկացրեց գրողների տանը, Ֆ. Ռ. Կրեյցվալդի անվան գրականության թանգարանում, ընթերցողների հետ հանդիպումներ ու ստեղծագործական զրույցներ կազմակերպեց գրախանութներում, կոլտնտեսություններում, պիոներական ճամբարներում։

Արվեստի շաբաթվա օրերին պոեզիայի մեր երկրպագուները, գրողներն ու բանաստեղծները կարողացան մոտիկից ծանոթանալ Հայաստանից եկած իրենց կոլեգաների հետ, որոնց թվում էին Սիլվա Կապուտիկյանը, Հրաչյա Հովհաննիսյանը, Գևորգ Էմինը, Աշոտ Գրաշին և թատերագիր Գրիգոր Տեր-Գրիգորյանը։

Հայաստանի նկարիչներն այցելեցին մեր ռեսպուբլիկայի նկարիչների արվեստանոցը, Տալլինի նկարչական կոմբինատը, պետական ազգագրական ու նկարչական կոմբինատը, Պետական ազգագրական ու նկարչական թանգարանները։ Ռեսպուբլիկայում շրջագայելու ժամանակ արված ուրվանկարներից հայ նկարիչները «Տալլին» հյուրանոցում հանպատրաստից ցուցահանդես կազմակերպեցին։

Եղբայրական Հայաստանի կինոարվեստը պրոպագանդելու նպատակով ռեսպուբլիկայի կինոթատրոններում անցկացվեց հայկական գեղարվեստական ու դոկումենտալ ֆիլմերի ֆեստիվալ։ Ընդամենը ցուցադրվեց 19 ֆիլմ, որոնք դիտեցին ավելի քան 40 հազար մարդ։ Տալլինի արվեստի տանը կազմակերպվեց հայկական գեղանկարչության ու գծանկարչության ցուցահանդես, իսկ «Գիտելիք» ընկերության դահլիճներում՝ հայկական լուսանկարչության ու գրքի ցուցահանդես։ Տալլինում, ինչպես և մյուս քաղաքներում, կազմակերպվեց հայ գրականության և հուշանվերների վաճառք։ Էստոնական ՍՍՌ-ում անցկացված հայկական արվեստի շաբաթը վերածվեց եղբայրական ժողովուրդների բարեկամության հիանալի տոնի։ Հունիսի 7-ի եզրափակիչ «Բարեկամության համերգում» ծրագրի մի քանի համարներ կատարվում էին մեր ռեսպուբլիկաների կոլեկտիվների միացյալ ուժերով։ Այսպես, օրինակ, «Հարսանիք կոլտնտեսությունում» էստոնական ժամանակակից պարը կատարեցին Հայաստանի ժողովրդական երգի ու պարի վաստակավոր անսամբլը և Էստոնիայի ժողովրդական պարի անսամբլը։



Հաջող ելույթների և Էստոնիայի աշխատավորներին եղբայրական հայ ժողովրդի արվեստի նվաճումներին ծանոթացնելու համար Էստոնական ՍՍՌ Գերագույն սովետի նախագահությունը պատվոգրերով պարգևատրեց Հայկական ՍՍՌ գեղարվեստական մի շարք կոլեկտիվների։ Եղբայրական Հայաստանի արվեստի ականավոր գործիչներին հանձնվեցին Էստոնիայի կոմպարտիայի Կենտկոմի, Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի պատվո ուղերձներ։

Սխալ կլիներ, սակայն, Հայաստանի ու Էստոնիայի կուլտուրական կապերը հանգեցնել միայն արվեստի շաբաթին։ Տալլին, Տարտու, Պյառնու և այլ քաղաքներում առաջ էլ գաստրոլներ են տվել հայկական շատ կոլեկտիվներ, որոնք հետո մասնակցեցին արվեստի շաբաթին։

«Էստոնիա» համերգային դահլիճում բազմիցս հնչել են հայ կոմպոզիտորների երգերը՝ Սովետական Միության հայտնի արտիստներ Գոհար Գասպարյանի և Պավել Լիսիցյանի, Հայկական ՍՍՌ և ՌՍՖՍՌ ժողովրդական արտիստուհի Զարուհի Դոլուխանյանի, Հայկական ՍՍՌ ժողովրդական արտիստ Արթուր Այդինյանի կատարմամբ։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները լավ են ճանաչում Օհան Դուրյանին, որը շատ բան արեց մեր հասարակայնությանը Կ. Օրբելյանի, Ա. Հարությունյանի, Ա. Բաբաջանյանի, Ջ. Տեր-Թադևոսյանի և Հայաստանի մյուս կոմպոզիտորների ստեղծագործություններին ծանոթացնելու համար։

Միևնույն ժամանակ Սովետական Էստոնիայի շատ կոլեկտիվներ բազմիցս գաստրոլների են մեկնել Երևան։

Մեր նկարիչներից շատերը՝ Գ. Ռեյնդորֆը, Է. Օկասը, Ա. Հոյդրեն, Կ. Կալյուն, Է. Կիտսը, Է. Տիկեմետսը, Պ. Ուլասը, Է. Վալտերը, Է. Էյպմանը և ուրիշներ ստեղծագործական գործուղման են մեկնել արևոտ Հայաստանի գեղատեսիլ վայրերն ու իրենց գործերում արտացոլել հայ ժողովրդի աշխատանքն ու Հայաստանի բնությունը։ Նրանցից շատերը ծանոթացել են ՍՍՌՄ ժողովրդական նկարիչ, լենինյան մրցանակի լաուրեատ Մարտիրոս Սարյանի ստեղծագործություններին։

Ուրախալի է նշել, որ Տալլինում էստոներեն լեզվով լույս են տեսել հայ կլասիկ ու ժամանակակից գրողների շատ երկեր, որոնց տպաքանակը հասնում է մոտ 200 հազար օրինակի։ Էստոնական ընթերցողը հնարավորություն է ստացել ծանոթանալու Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանի» նշանավոր վեպին։ Մի քանի անգամ վերահրատարակվել են Վախթանգ Անանյանի «Սևանի ափին» և «Հովազաձորի գերիները» երկերը։ Էստոնիայում հայտնի են Հովհաննես Թումանյանի և մյուս հայ բանաստեղծների ու արձակագիրների ստեղծագործությունները։ Հայկական արվեստի շաբաթվա կապակցությամբ Էստոնիայում հրատարակվեց «Կիրճերի ձայնը» հայկական նովելների ժողովածու։

Էստոնացի երեխաները հաճույքով են կարդում Սիլվա Կապուտիկյանի «Մաշան ճաշում է» գիրքը:

Տարտուի բանաստեղծուհի Այրա Կաալը, գրողներ Յան Կրոսը, հայր ու որդի Պաուլ Ռումմները և շատ ուրիշներ հաճախ եղել են Հայաստանում, վաղուց ծանոթ են եղբայրական ռեսպուբլիկաների գրողներից ու բանաստեղծներից շատերի հետ:

Այս տարվա սեպտեմբերին Հայաստանում կանցկացվի էստոնական արվեստի շաբաթ: Դրան լրջորեն նախապատրաստվում են էստոնիայի տղամարդկանց պետական ակադեմիական երգչախումբը, պետական ֆիլհարմոնիայի էստրադային նվագախումբը և փողային կվինտետը, կանանց «Լայնե» վոկալ անսամբլը, Տալինի պիոներների տան մանկական երգչախումբը և գեղարվեստական ինքնագործունեության մի քանի կոլեկտիվներ:

Հայ բարեկամները կլասիկների և էստոնական ժողովրդական երգերը կարող են լսել ՍՍՌՄ ժողովրդական արտիստներ Տիյտա Կուուզիկի և Գեորգ Օտսի, սոլիստ-վոկալիստներ Վերա Նեելուսի, Ուրվե Տաուտսի, Այնո Կյուլվանդի, Ալեքսանդր Պյուվիի, Հենդրիկ Կրումի, Էվալդ Տորդիկի, Լիդա Պանովայի կատարմամբ, կունկնդրեն էստոնական ՍՍՌ ժողովրդական արտիստ, ջութակահար Վլադիմիր Ալումյաեին և էստոնական ՍՍՌ արվեստի վաստակավոր գործիչներ Աննա Կլասին ու Բրունո Լուկին, կդիտեն բալետի սոլիստներ Տիյու Ռանդվիյրի, Յուլե Ուլայի, Տամարա Կոպտիկովայի, Յուրի Լասի, Հենդրիկ Կերգեի, օրգանիստ Ռալֆ Ուուսվյալի և շատ ուրիշների ելույթները:

Էստոնիայի արվեստի ու գրականության աշխատողները Սովետական Հայաստանում ունենալիք իրենց ելույթը դիտում են որպես լուրջ քննություն:

Եկող տարի մեր ռեսպուբլիկան նշում է փառապանծ մի հոբելյան՝ Էստոնիայում սովետական իշխանության հաստատման 25-ամյակը: Այդ հոբելյանի համար են պատրաստում իրենց ստեղծագործությունները գրողները, նկարիչներն ու կոմպոզիտորները: Նախատեսված է տոնի նախօրյակին Էստոնիայում անցկացնել ռուս ժողովրդի արվեստի շաբաթ: Էստոնիան պատմական մեծ կապեր է ունեցել ռուս ժողովրդի հետ, ռուսական կուլտուրան հարստացրել և հարստացնում է էստոնական ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան:

Սովետական Էստոնիայի աշխատավորները եղբայրական ժողովուրդների համերաշխ ընտանիքում, այդ ժողովուրդների և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնությամբ, հարազատ կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, հաջողությամբ զարգացնում են իրենց էկոնոմիկան ու կուլտուրան, որոնք կազմում են ամբողջ սովետական ժողովրդի էկոնոմիկայի ու կուլտուրայի բաղկացուցիչ մասը և ավանդ են հանդիսանում մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման ընդհանուր գործում:



# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

Ընդառաջելով երիտասարդ գիտական աշխատողների ցանկություններին, խմբագրությունը ամսագրում բացում է **Երիտասարդ գիտական աշխատողի ամբիոն** խորագրով նոր բաժին, որտեղ հոդվածներ կտպագրվեն պաշտպանության պատրաստվող դիսերտացիաներից: Խմբագրությունը հրապարակելու է ընթերցողների լայն շրջանների համար հետաքրքրություն ներկայացնող գիտության տարբեր բնագավառներին վերաբերող այն նյութերը, որոնք ունեն գործնական ու տեսական արժեք և մշակված են գիտական բավարար խորությամբ:

## ԻՐԱՎԱ՞ՑԻՆ ԷՆԳԵԼՍՆ ԷՐ

Հ. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ

Մատերիայի շարժման տարբեր ձևերի փոխներթափանցման քննարկման սխալ մեթոդոլոգիան, մարդկային պատմության անցումային ժամանակաշրջանի հասկացության նենգափոխումը՝ մարդկային հասարակության զարգացման ավարտուն ձևերի հասկացությամբ, բնորոշեցին Էնգելսի Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը գրքի քննադատության բնույթն ու էությունը անհատի պաշտամունքի տիրապետության ժամանակաշրջանում:

Այդ սխալ հայացքները բոլորովին չէին համապատասխանում մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին:

Իսկ ինչո՞ւմ էին ոմանք մեղադրում Ֆ. Էնգելսին: Այն բանում, թե իբր նա շփոթում է հասարակական արտադրության երկու տեսակները՝ «մարդու արտադրությունը» և կենսամիջոցների արտադրությունը և, որ «պետք է նկատի ունենալ», խրատում է, օրինակ, Կ. Վ. Մորոզը, թե ընտանիքը հասարակական արտադրության հենց այնպիսի գործոն չէ, ինչպիսին է կենսամիջոցների հայթայթման եղանակը:

Սակայն Էնգելսը երբեք այդ կարծիքին չի եղել: Այդ սխալ կարծիքը Էնգելսին վերագրելու համար սովորաբար բերվում էր կոնտեքստից պոկված այն ցիտատը, թե պատմության մեջ որոշիչ մոմենտը, վերջին հաշվով, անմիջական կյանքի արտադրությունն ու վերարտադրությունն է— մի կողմից, կենսամիջոցների արտադրությունը, մյուս կողմից՝ հենց իր՝ մարդու, արտադրությունը, սերնդի շարունակումը. «Հասարակական կարգերը, որոնց մեջ ապրում են որոշ պատմական դարաշրջանի և որոշ երկրի մարդիկ, պայմանա-

վորվում են արտադրության այդ երկու տեսակներով— մի կողմից՝ աշխատանքի զարգացման աստիճանով, մյուս կողմից՝ ընտանիքի զարգացման աստիճանով» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, երկու հատորով, հ II, էջ 210)։ Այս մեջբերումը կատարելուց հետո մի ընդարձակ եզրահանգում էր արվում, թե իբր, ըստ Էնգելսի, «որպես հասարակական կյանքը որոշող սկզբունք հավասարապես հանդես են գալիս ինչպես արտադրության եղանակը, այնպես էլ ընտանիքը», թե դա ճիշտ չէ, թե ընտանիքը երկրորդային երևույթ է, թե դա Էնգելսի միակ արտահայտությունն է, թե նրա հաջորդ երկերում այդպիսի բան չկա, թե հենց իր գրքում մերժվում է այդ անճշտությունը, թե դա չի արտահայտում Էնգելսի հայացքների էությունը և այլն, և այլն (տե՛ս, Կ. Վ. Մորոզ «Էնգելսի «Ընտանիքի մասնավոր սեփականության և պետության ծագումը» աշխատության մասին», Մ. 1949 թ., էջ 12)։ Բայց Էնգելսից վերցրած այդ կտորի մեջ անգամ չպետք է արվեն այն հետևությունները, որպիսիք վերագրվում են նրան։

Էնգելսը գրում է որոշակի, նախնադարյան, պատմական դարաշրջանի մասին, որը պայմանավորված է աշխատանքի զարգացման որոշ, առանձնահատուկ աստիճանով, և ոչ թե վերացական, առհասարակ հասարակական ու տնտեսական դարաշրջանների մասին, ոչ թե զարգացման պատմական ձևերի ընդհանուր վերացական օրենքի մասին։

Խճճելով այդ հարցը, Էնգելսի քննադատներն ըստ էության, նախնադարյան հասարակության զարգացման յուրահատուկ ձևերն աշխատում էին բացատրել այն օրենքներով, որոնք հատուկ են զարգացման ավելի բարձր աստիճանի վրա կանգնած հասարակությանը։ Այդ պատճառով էլ Էնգելսի գրքից մեջբերվող կտորի երկրորդ մասը, սովորաբար, բաց էին թողնում։ Բայց հենց այդ մասն է ամբողջականություն ու դիալեկտիկական բովանդակություն տալիս Էնգելսի՝ առաջաբանում շարադրած մտքերին։ «Որքան ավելի քիչ է զարգացած աշխատանքը, որքան ավելի սահմանափակ է նրա արտադրանքների քանակը, ուրեմն նաև հասարակության հարստությունը, այնքան ավելի տիրապետող ազդեցություն են ձեռք բերում հասարակարգի վրա ազգակցական կապերը։ Մինչդեռ ազգակցական կապերի վրա հիմնված այդ հասարակության տրոհման մեջ հետզհետե ավելի ու ավելի է զարգանում աշխատանքի արտադրողականությունը, իսկ դրա հետ միասին զարգանում են մասնավոր սեփականությունն ու փոխանակությունը, հարստության տարբերությունները, ուրիշի աշխատանքային ուժից օգտվելու հնարավորությունը, որով և դասակարգային հակասությունների հիմքը,— առաջ են գալիս նոր սոցիալական տարրեր, որոնք սերնդե-սերունդ ջանք են թափում՝ հին հասարակարգը հարմարեցնել նոր պայմաններին, մինչև որ, վերջապես, այդ երկուսի անհամատեղելիությունը լիակատար հեղաշրջում է առաջացնում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս. Ընտիր երկեր, հ. 2, էջ 210—211)։

Էնգելսի՝ վերը բերված այդ ամփոփ մտքերից հետևում է, որ նա նախնադարյան հասարակության տնտեսակարգը, կառուցվածքը բաժանել է երկու մասի՝ հին հասարակարգ, որը հիմնված էր կապի տոհմական ձևերի վրա և նոր հասարակարգ, որը հիմնված էր կապի նոր սոցիալական ձևերի վրա, որոնց մեջ զարգանում են ընդհուպ մինչև մեր ժամանակները գրի առնված ամբողջ պատմության բովանդակությունը կազմող դասակարգային հակասությունները (նույն տեղը, էջ 211)։



Նախնադարյան հասարակության պատմությունը Էնգելսի մատնանշած
այդ տոհմական կապերի վրա հիմնված «հին հասարակարգի» լինելիությունն
է, անցումը նրանից դեպի նոր սոցիալական հարաբերություններ։ Այսպիսով,
նախնադարյան հասարակության պատմությունն ուսումնասիրում է տոհմա-
կան և նոր սոցիալական հարաբերությունների լինելիությունը, այսինքն՝ ան-
ցումը կենդանական վիճակից դեպի պատմական հարաբերությունները՝ տոհ-
մական հարաբերությունների տնտեսական բովանդակությունը և դրանց մա-
հացումը բացահայտելու միջոցով։
Էնգելսն իր գրքի առաջաբանում այդ անցումը բնորոշել է որպես տոհմա-
կան հարաբերությունների վրա հիմնված հին հասարակության ընդերքում նոր
սոցիալական տարրերի՝ մասնավոր սեփականության և փոխանակության,
հայտնվելը, որոնք արդյունք էին աշխատանքի արտադրողականության զար-
գացման՝ այնպիսի պայմանների, երբ հասարակարգը կախված էր տոհմական
կապերից։ Նոր սոցիալական տարրերի ծագման հետ միասին ծագեցին ու
զարգացան նոր պայմաններ, հասարակական-տնտեսական նոր օրինաչափու-
թյուններ, որոնք ձգտում են «հին հասարակարգը հարմարեցնել» զարգացման
նոր պայմաններին։ Դրա հետևանքով ծագում է շարժման հակասություն, և
տոհմական միավորումների վրա հանգչող «հին հասարակությունը պայթում
է» և իր տեղը զիջում նոր հասարակությանը, նոր հասարակական հարաբե-
րություններին։
Եվ այսպես, Էնգելսն ընդգծում է նախնադարյան հասարակության լինե-
լության և զարգացման հասարակական-տնտեսական յուրահատուկ պրոցեսն
իր պատմական ձևի մեջ, հատկապես, անցումը տոհմական հարաբերություն-
ներից դեպի դասակարգային հարաբերությունների զարգացումը. ուստի Ըն-
տանիքի... ծագումը գրքի առաջին հրատարակության առաջաբանում նրա այն
եզրակացությունը, որ մարդկանց հասարակական կարգերը պայմանավորվում
են արտադրության երկու տեսակով՝ աշխատանքով և ընտանիքով, վերաբե-
րում է միայն նախնադարյան հասարակությանը և նշում է մարդկային հա-
սարակության զարգացման անցումային պայմանների առանձնահատկու-
թյունները։
Չընդգծել անցումային ժամանակաշրջանի յուրահատուկ պայմանները,
կամ ժխտել զարգացման անցումային օրինաչափությունները, որոնք արտա-
հայտվում են արտադրության երկու տեսակների՝ աշխատանքի և ընտանիքի,
փոխազդեցության մեջ, նշանակում է հետազոտել ոչ թե նախնադարյան հա-
սարակական պատմական հարաբերությունները, այլ դրանք նենգափոխել անի-
րական, մտացածին, նախնադարյան ժամանակաշրջանում երբեք իրականում
գոյություն չունեցած հարաբերություններով։
Իրո՞ք Էնգելսի առաջաբանը չի համապատասխանում գրքի բովանդակու-
թյանը, ինչպես այդ մասին գրել են մի քանի սովետական փիլիսոփաներ։
Ըստ Էնգելսի տոհմը նախնադարյան մարդկանց միավորման մի ձև է, որը
ծագեց ու զարգացավ առավելապես սոցիալ-պատմական օրինաչափություն-
ների ներգործությամբ։ Տոհմական հասարակությունում դեռևս գործում էր
բնական ընտրանքը, որը, վերջին հաշվով, նեղացնում էր այն անձանց հա-
րաբերությունների շրջանակը, որոնց թույլատրվում էր սեռական կապերի մեջ
գտնվել միայն որոշ խմբերին պատկանող մարդկանց հետ։ Խմբամուսնու-
թյունը տեղի տալով զուգամուսնության, ի վերջո հանգավ մենամուսնական ըն-

տանիքին։ Մենամուսնական ընտանիքի զարգացումն արդեն պայմանավոր-
ված է բացառապես մարդկանց հասարակական հարաբերությունների պատմա-
կան ձևերով. «Բնական ընտրանքը,— գրում էր էնգելսը,— ամուսնական հա-
մակեցությունից շարունակաբար բացառելով մարդկանց, արդեն կատարել-
վերջացրել էր իր գործը. այս ուղղությամբ նրան այլևս ոչինչ չէր մնում անե-
լու։ Ուրեմն, եթե նոր հասարակական շարժիչ ուժեր չսկսեին գործել, ապա ոչ
մի հիմք չէր լինի, որպեսզի զուգամուսնությունից ընտանիքի մի նոր ձև առաջ
գար։ Բայց այդպիսի շարժիչ ուժեր սկսեցին գործել (Կ. Մարքս, և Ֆ. էնգելս,
Ընտիր երկեր, հ. 2, էջ 266)։

Այդ նոր շարժիչ ուժերը, ի տարբերություն նախորդների, երբ պատմական
գործոնների հետ մեկտեղ որոշակի դեր էր կատարում բնական ընտրանքը,
արտահայտվում էին բացառապես հասարակական հարաբերություններով,
զարգացման պատմական օրինաչափություններով։ Տոհմի ծագումը էնգելսը
վերագրում է վայրենության միջին աստիճանին, նրա ծաղկումը՝ բարբարոսու-
թյան ստորին աստիճանին, իսկ քայքայումը միջին աստիճանին, հետևաբար,
նոր հասարակական հարաբերություններն առաջ են գալիս բարբարոսության
միջին և վերջին աստիճանների սահմանագլխին, երբ տեղի ունեցավ աշխա-
տանքի առաջին խոշոր հասարակական բաժանումը և երբ աստիճանաբար
նախնադարյան հասարակություն թափանցեցին ապրանքային հարաբերու-
թյունները։

Պարզ է, որ էնգելսը նոր շարժիչ ուժեր ասելով հասկանում էր մասնավոր
սեփականատիրական, ապրանքային, արժեքային հարաբերությունները։

Այսպիսով, գրքի բովանդակության մեջ, ինչպես և առաջաբանում, բնո-
րոշելով մարդկային պատմության զարգացման նախասկզբնական ժամանա-
կաշրջանը, էնգելսը, ելնում է փոխադարձաբար ներգործող երկու գործոնից՝
աշխատանքի և ընտանիքի զարգացման աստիճանից, մարդկային հասարակու-
թյան լինելության պատմական և բնական գործոնների փոխադարձ ներգոր-
ծությունից՝ բացառելով (հանելով) երկրորդ (ընտանիքի... և զարգացման
կենսաբանական օրինաչափությունների) գործոնը և վերջինս ստորադասելով
զարգացման հասարակական օրինաչափություններին՝ մասնավոր սեփակա-
նատիրական հարաբերություններին անցնելիս։

Շարժիչ ուժերի երկու ձևերի տարբերակումը արդյոք բացառո՞ւմ է
մոնիստական հայացքը նախնադարյան պատմության նկատմամբ, ինչպես
փորձում էին ներկայացնել էնգելսի «քննադատները»։

Այդ հարցին պատասխանելու համար անհրաժեշտ է պարզել, թե էնգելսն
արդյոք ժխտո՞ւմ էր առհասարակ արտադրության նախնադարյան եղանակը,
մասնավորապես, նախնադարյան պատմության զարգացման տնտեսական
շարժիչ ուժը։

Գրքի առաջին իսկ հրատարակության առաջաբանում էնգելսը նշում է
«հին հասարակարգի» գոյությունը նախնադարյան պատմության նախասկզբ-
նական ժամանակաշրջանում։ Դրանից հետևում է, որ էնգելսը չէր ժխտում
նախնադարյան հասարակության տնտեսական հիմքը, այլ միայն ընդգծում էր
արտադրության նախնադարյան եղանակի առանձնահատկությունը, պատմա-
կան առաջընթաց ձևերի առանձնահատկությունները նախնադարյան հասա-
րակության լինելության ու զարգացման ժամանակաշրջանում, այն է՝ աշխա-



տանքի զարգացումը տոհմական կապերի շրջանակներում, որոնք բնորոշում
էին այդ ժամանակաշրջանի հասարակարգը։

Այդ ժամանակաշրջանում ընդհանրության բնական գործոնը միահյուս-
վում է տնտեսության կոմունիստական ձևերի հետ, որպիսի հանգամանքը
ստեղծում է հարաբերությունների նախնադարյան հասարակական-տնտեսա-
կան ձևը։ Այդ տնտեսաձևի պայմաններում առանձին անհատը զարգացման
պատմական ընթացքով դեռ չի առանձնանում, իսկ զարգացման բուն իսկ
պատմական ընթացքը միահյուսված է մարդկային հասարակության լինելու-
թյան բնական ձևերի հետ։ էնգելսի խոսքերով ասած՝ «Որքան էլ վեհատեսիլ
են երևում մեզ այդ դարաշրջանի մարդիկ, նրանք այնուամենայնիվ միմյան-
ցից բոլորովին չեն տարբերվում. ինչպես Մարքսն է ասում, նրանք դեռ կախ-
ված են նախնադարյան հասարակության պորտաթելից» (Կ. Մարքս և Ֆ. էն-
գելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 321)։

Պատմական և բնական մոմենտների հենց այդ փոխադարձ կապով է պայ-
մանավորված նախնադարյան հասարակության գոյացման ու զարգացման
բնապատմական պրոցեսը, մի հասարակություն, որն էնգելսը ամբողջությամբ
վերցրած բնորոշում է որպես տնտեսության կոմունիստական ձևերի տիրապե-
տության ժամանակաշրջան։ Տնտեսության այդ կոմունիստական ձևերը պատ-
մական թատերաբեմից անհետանում են բարբարոսության միջին աստիճա-
նում՝ բնական ընտրանքի չքացման հետ միասին։

Նախնադարյան պատմության զարգացման շարժիչ ուժերի երկու հաջոր-
դական ձևերը պայմանավորված են կենդանական վիճակից մարդկային հա-
սարակության առաջացման յուրահատուկ պայմաններով։ Այդ պայմաններն
են որոշում մարդկային հասարակության զարգացման երկու հաջորդական
էտապները և անցումը մեկ՝ չզարգացած հասարակական-տնտեսական աստի-
ճանից դեպի մի այլ՝ ավարտուն հասարակական-տնտեսական աստիճան։
Բայց, ինչպես առաջին աստիճանը (կոմունիստական տնտեսություն), այնպես
էլ երկրորդ աստիճանը (մասնավոր սեփականատիրական հարաբերություն-
ներ) բնորոշվում են զարգացման հասարակական-տնտեսական ձևերով, որոնք
պայմանավորվում են կենդանական վիճակից տոհմական հասարակության
անցնելու և տոհմական հարաբերություններից մարդկանց կապերի բացառա-
պես սոցիալական ձևերին անցնելու սահմանագծերով։ Հետևաբար, էնգելսի
Ընտանիքի... ծագումը գրքում ոչ միայն պահպանվում է նախնադարյան հա-
սարակության լինելիության և զարգացման նկատմամբ մոնիստական պատ-
մահայեցողությունը, այլև նրա այդ հայացքը միակ ճիշտն է հասարակության
զարգացման անցման էտապի մեկնաբանման տեսակետից։

Նախնադարյան հասարակության պատմության նկատմամբ մոնիստական
հայացքին չի հակասում, այլ ընդհակառակը, այդ հայացքն է հաստատում
նաև էնգելսի դրույթը զարգացման պատմական և կենսաբանական մոմենտ-
ների այն փոխադարձ ներգործության մասին, որ տեղի էր ունենում արտա-
դրության նախնադարյան եղանակի շրջանակներում, որտեղ նախասկզբնա-
կան ժամանակաշրջանի զարգացումը որոշող օրենքը մնում է զարգացման հա-
սարակական-տնտեսական հիմքը, բայց այդ տնտեսական հիմքի առանձնա-
հատկությունը պայմանավորված է ոչ միայն աշխատանքային կապերի, այլև
արենակցական կապերի ձևերով։

Սկզբում էնգելսի մեր շոշափած դրույթը սկզբունքային նշանակություն

ունի նախնադարյան հասարակության տնտեսական հարաբերությունների զար-
գացման պատմությունը հասկանալու համար։

Ըստ Մարքսի և Էնգելսի բնական ընդհանրության շրջանակներում արտա-
դրողական գործունեության զարգացումը առաջ բերեց աշխատանքի տնտեսա-
կան ձևեր։ Աշխատանքի այդ հասարակական տնտեսական ձևը ամրապնդեց
բնական հոտային միասնությունը պատմական հիմքի վրա, կապերի պատմա-
կան ձևեր ստեղծելով հոտային մարդկային համագործակցության մեջ։ Աշխա-
տանքի հենց այդ ձևն էլ հոտը և մարդու նախնիներին դուրս բերեց կենդանա-
կան վիճակից։ Բայց այդ ձևը մարդուն կենդանական թագավորությունից դուրս
բերեց զարգացման մի որոշակի պրոցեսում, որի ընթացքում առաջատար
դերերից մեկը՝ օգնականի դերը, խաղում էր բնական ընտրանքը։ Բնական
ընտրանքը սահմանափակում էր կոմունիստական տնտեսական միավորի մեջ
համախմբված մարդկանց կապերի սեռական, բնական ձևերը։ Այդ սահմանա-
փակումը, կապված լինելով տնտեսական հարաբերությունների հետ, միա-
ժամանակ մարդկանց միջև կապի որոշակի ձևեր էր սահմանում ինչպես հա-
մայնքի ներսում, այնպես էլ տարբեր համայնքների միջև։ Նշված սահմանա-
փակումը այնուհետև կարգավորեց մարդկանց հարաբերությունների որոշակի
ձևերը, որոնք հաստատվում էին սովորություններով ու ավանդություններով,
հետևաբար, դարձավ կոլեկտիվի կողմից գիտակցված և սանկցիա ստացած
մարդկային կապերի որոշակի ձև։

Այսպիսով բնական ընտրանքի՝ սեռական կապերի, արյունապղծության
սահմանափակման, հետևապես հասարակական կապերի կարգավորման
ազդեցության տակ տեղի ունեցավ տոհմի ծագումը։ «Իսկ թե ինչ վիթխարի
ազդեցություն ունեցավ այդ առաջընթացը, ապացուցում է տոհմի անմիջա-
կանորեն նրանից ծագած, բայց իր սկզբնական նպատակից շատ առաջ անցած
կազմակերպությունը, որը երկրագնդի եթե ոչ բոլոր բարբարոս ժողովուրդների,
ապա նրանց մեծամասնության հասարակական կարգի հիմքն է...» (Կ. Մարքս
և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 218)։ Հետևաբար, տոհմը՝ որպես հասա-
րակական կազմակերպության ձև, ծագեց բնապատմական օրինաչափություն-
ների զարգացման շնորհիվ, յուրահատուկ հասարակական-տնտեսական հա-
րաբերությունների առաջացման հիման վրա։ Նախնադարյան հասարակական-
տնտեսական հարաբերությունների շրջանակներում կենսաբանական գործոն-
ների ու օրինաչափությունների դերը հանգում էր պատմական հարաբերու-
թյունների առաջացմանն ու զարգացման խթանմանը, ուստի կենսաբանական,
բնական օրինաչափությունները, մարդկային հասարակության առաջացման
ընդհանուր պրոցեսում հանդես գալով որպես պատմական զարգացման շար-
ժիչ ուժերի մոմենտներից մեկը, որոշում էին քանակական կուտակման անընդ-
հատությունը, հասարակական պատմական հարաբերությունների առաջացու-
մը, նպաստելով անընդհատի և ընդհատի դիալեկտիկական փոխներգործու-
թյանը հասարակության առաջացման և զարգացման պրոցեսում։

Էնգելսն իր գրքում այդ կոնկրետ պրոցեսը նկարագրել է հետևյալ կերպ.
սկզբում սեռական կապերի սահմանափակում տեղի ունեցավ սերունդների
միջև («արյունակցական ընտանիք»), հետագա զարգացման ընթացքում սե-
ռական կապերից բացառվեցին նաև եղբայրներն ու քույրերը, միևնույն մոր
զավակները, որպիսի հանգամանքը հասցրեց խմբային ամուսնությանը։ Սե-
ռական կապի արգելքը հետնորդների միջև, իսկ այնուհետև միևնույն ծնող-



ների (մոր) զավակների միջև, որպես իր իսկ հակադրություն, ստեղծեց արե-
նակցական կապեր, երբ տրոհվում էին ընտանեկան կամ տնային կոմունիստա-
կան համայնքները, դուստր համայնքներն արդեն կազմակերպվում էին այն
հաշվով, որ սեռական կապեր չէին թույլատրվում ծնողների և զավակների կամ
միևնույն ծնողների զավակների միջև։

Արենակից ազգականների շրջանում ամուսնությունն արգելվեց, որը մի
կողմից, ենթադրում էր արենակիցների միջև կապի որոշակի ձև (արգելված
օբյեկտի, ամուսնության ճանաչում), իսկ մյուս կողմից՝ այլ տոհմերի հետ
շփման ձև։ Այսպիսով, տոհմի սահմանված շրջանակը «հետզհետե ավելի ու
ավելի է ամրապնդվում ընդհանուր հասարակական և կրոնական բնույթ ունե-
ցող այլ հաստատություններով և տարբերվում միևնույն ցեղի մյուս տոհմե-
րից» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II էջ 253)։

Հասարակական կապերի ծագման՝ մեզ հետաքրքրող պրոբլեմի տեսակե-
տից տոհմային հարաբերություններն այսպիսով, առաջացել և պահպանվել են,
այլ պատճառներից զատ, նաև արենակցական կապերի շնորհիվ։ Նախնադար-
յան կոմունիստական տնտեսության պայմաններում սեռական կապերի ու արե-
նապղծության սահմանափակումը արտահայտվում էր սովորույթների ու ա-
վանդությունների ձևով։ Քանի դեռ աշխատանքն այնքան զարգացած չէ (աշ-
խատանքի սեռա-հասակային բաժանման ժամանակ), որպեսզի մարդիկ հա-
մախմբվեին կոլեկտիվ ձևով և փոխանակության համար ավելցուկ մթերքներ
արտադրեին, ուրեմն և կապի սոցիալական ձևեր հաստատեին համայնքի ներ-
սում կամ առանձին համայնքների միջև, բնական ընտրանքը ամրացնում էր
ընդհանրությունը և կոլեկտիվների միջև կապի որոշակի ձևեր էր ստեղծում,
հող նախապատրաստելով բացառապես սոցիալական հարաբերություններ,
կապի տնտեսական ձևեր հաստատելու համար։

Այսպիսով, այն պնդումը, թե իբր Էնգելսի Ընտանիքի... ծագումը գրքի
բովանդակությունը չի համապատասխանում նրա առաջաբանին, անհիմն է։
Գրքում բերված յուրաքանչյուր փաստը հաստատում է Էնգելսի ամփոփիչ
եզրակացությունները, որ նա տվել է առաջին հրատարակության առաջաբա-
նում։

Բանն ամենևին էլ Էնգելսին վերագրվող մեխանիկական սխալները չեն.
հարցը մարքսիստական մտածողության մի կարևոր թեզին է վերաբերում, որի
փոխարեն առաջ է քաշվում միանգամայն հակադիր կարծիք։ Այդ կարծիքը
առանձնապես ցայտուն կերպով ձևակերպվեց Մ. Ռոզենտալի և Պ. Յուդինի
խմբագրությամբ 1952 թվականին լույս տեսած Համառոտ փիլիսոփայական
բառարանում: Նրանց տերմինոլոգիայով ասած՝ Էնգելսի հայացքների «անճըշ-
տությունը» և «սխալականությունը» դարձավ «էական սխալ», իսկ Մորգանի—
Էնգելսի պերիոդիզացիայի աստիճանները իբր թե չեն համապատասխանում
պատմական մատերիալիզմի հասկացություններին [1]։

[1] «Սակայն իր գրքում Էնգելսը վերարտադրում է հասարակությունը վայրենության, բար-
բարոսության և քաղաքակրթության աստիճանների բաժանող մորգանյան սխեման, որը չի
համապատասխանում պատմական մատերիալիզմի հասկացություններին։ Բացի այդ, գրքի ա-
ռաջաբանում Էնգելսը թույլ է տվել էական սխալ, նշելով, թե մարդկանց հասարակական հաս-
տատությունները որոշվում են արտադրության երկու տեսակով՝ աշխատանքի զարգացմամբ և ըն-
տանիքի զարգացմամբ»։ Համառոտ փիլիսոփայական բառարան, Մ. Ռոզենտալի և Պ. Յուդինի
խմբագրությամբ, 3-րդ հրատ. էջ 410։

Պատմական մատերիալիզմի հիմունքներից մեկի՝ մարդկային հասարակության զարգացման անցումային ժամանակաշրջանի նկատմամբ էնգելսի հայացքի և անհասի պաշտամունքի ժամանակաշրջանում տիրապետող տեսակետի տարբերության հետևանքն այն մեղադրանքն էր, թե նախնադարյան հասարակության պատմության Մորգանի—էնգելսի պերիոդիզացիան իբր կտրված է զարգացման համաշխարհային-պատմական կոնկրետ պրոցեսից, «մարդկության ամբողջ պատմության պերիոդիզացիայի հիմքից՝ արտադրության եղանակից», թե իբր դա մթագնում է «նախնադարյան պատմության այն մի քանի հանգուցային մոմենտները, որոնք նախ և առաջ կապված են նախնադարյան հասարակական հարաբերությունների բուն պատմության հետ» և այլն, և այլն [1]։

Առաջ եկավ մի թյուր հասկացություն. պատմական մատերիալիզմի հիմնադիրներից մեկի՝ էնգելսի որոշ հայացքները հայտարարվեցին պատմական մատերալիզմին անհամապատասխան, այն էնգելսի, որի գիրքը Լենինը համարում էր մեկը «ժամանակակից սոցիալիզմի հիմնական երկերից, որի յուրաքանչյուր ֆրազին կարելի է վստահությամբ վերաբերվել»։

Էնգելսի մոտ «պատմական մատերիալիզմին չհամապատասխանող» հայացքների ծագումը վերագրվում էր այն բանին, որ նա իբր թե անքննադատաբար վերապատմել է մարդկային հասարակության գոյացման վաղ ժամանակաշրջանի վերաբերյալ Մորգանի տված բնութագրությունը։ Դա մի թյուրըմբռնում է, որով փորձում էին Ֆ. էնգելսի հայացքները հաշտեցնել նախնադարյան հասարակության ծագման վերաբերյալ գոյություն ունեցող էլեկտիկ կոնցեպցիայի հետ։

Տարերային մատերիալիստ Լ. Մորգանի Հին հասարակություն գիրքը, որը հրատարակվեց 1877 թվականին, միայն «փաստական հիմք» ծառայեց այդ գրքի հրատարակությունից ավելի քան 20 տարի առաջ Մարքսի և էնգելսի կողմից լիովին մշակված և ձևակերպված մատերիալիստական աշխարհայացքի, մասնավորապես սեփականության նախնադարյան ձևերի և նախնադարյան հասարակության առաջացման տեսության համար։ Էնգելսը 1884 թվականի ապրիլի 26-ին Կ. Կաուցկուն ուղարկած նամակում գրում էր, «Մորգանը իր նախապատմությամբ մեզ տալիս է մինչև այժմ գոյություն չունեցող փաստական հիմք» (Կ. Մարքս և Ֆ. էնգելս, Նամակներ կապիտալի մասին, 1948, էջ 242, ռուսերեն)։

Լ. Մորգանի գրքի օգտագործումը ոչ մի չափով չի անդրադարձել արտադրության նախնադարյան եղանակի առաջացման ու զարգացման վերաբերյալ Մարքսի և էնգելսի ուսմունքի պատմական և տնտեսագիտական եզրակացությունների վրա, այլ սոսկ հաստատել է այդ եզրակացությունները։

Էնգելսն իր գրքում մատնանշել է, որ Մորգանի առաջարկած մարդկային նախապատմության պերիոդիզացիան կմնա ուժի մեջ, քանի դեռ նյութի զգալի ընդլայնումը չի ստիպի փոփոխություններ մտցնել նրանում։ Դրանով իսկ էնգելսը սոսկ ընդգծում էր այդ պերիոդիզացիայի փաստական նյութը, սխեմատիկ կառուցվածքը («սիստեմը»), պերիոդիզացիա, որը նա Ընտանիքի... ծագումը գրքում օգտագործել է որպես «փաստական նյութ», բայց ոչ երբեք

[1] Տես «Советская этнография», 1946, 1, էջ 25, «Вопросы истории», 1955, 1, էջ 135, «Советская этнография», 1950 № 3, առաջնորդող հոդվածը և այլն։



որպես Մորգանի տնտեսագիտական կամ պատմագիտական հայացք [1]։ Այդ հիմնավորելու համար օգտագործելով այն դրույթը, թե իբր Ընտանիքի... ծագումը գրքում էնգելսի արտահայտած պատմական և տնտեսագիտական հայացքները հնացել են և վերանայում են պահանջում, նշանակում է «ապացուցել» անապացուցելին։

Այն վկայակոչումը, թե Մորգանն իր գրքով մոլորեցրել է Մարքսին ու էնգելսին, որոնք «անքննադատաբար վերապատմել են» Մորգանին, իհարկե, լուրջ չէ, իսկ գիտական տեսակետից, մեղմ ասած, թյուրիմացություն է։

Ոչ այլ ոք, քան էնգելսն է գրել Մորգանի գրքի հենց քննադատական մեկնաբանության անհրաժեշտության մասին. «Անհեթեթություն կլիներ Մորգանին շարադրել «օբյեկտիվորեն» և ոչ թե մեկնաբանել նրան քննադատաբար և, օգտագործելով հենց նոր ձեռք բերված արդյունքները, դրանք չշարադրել մեր հայացքների ու արդեն ունեցած եզրակացությունների կապակցությամբ» (Կ. Մարքս և Ֆ. էնգելս, Նամակներ կապիտալի մասին, 1948 թ., էջ 242, ռուսերեն)։

Մարքսի մահից հետո էնգելսի ունեցած նամակագրությունից երևում է, որ նա հսկայական նշանակություն էր տալիս նախնադարյան հասարակության պրոբլեմների մշակմանը։ Առաջնահերթ նշանակություն տալով Մարքսի Կապիտալի բոլոր հատորների հրատարակությանը, էնգելսը դրա հետ միասին անհրաժեշտ գտավ 1884 թվականին գրելու Ընտանիքի... ծագումը, որի լույսընծայման նկատառումներից մեկը այդ հարցի վերաբերյալ Կաուցկու սխալ հայացքներն էին։

Մարքսը դեռևս 1857—1858 թթ. գրած Քաղաքատնտեսության քննադատության հիմնական գծերը աշխատության ձեռագրում սեփականության կապիտալիստական ձևի ծագման կապակցությամբ սկզբունքորեն պարզեց և շարադրեց իր հայացքները արտադրության նախնադարյան արտադրական հարաբերությունների առաջացման ուղիների ու օրինաչափությունների վերաբերյալ։

1880 թվականին, կոնսպեկտավորելով Լ. Մորգանի Հին հասարակություն գիրքը, Մարքսը, քաղվածքներ ու նշումներ է կատարել Մորգանի գրքի հենց այն հատվածներից, որոնք, մի կողմից, հաստատում, իսկ մյուս կողմից՝ փաստական հիմք են տալիս արտադրության նախնադարյան եղանակի վերաբերյալ մատերիալիստական ուսմունքը պարզաբանելու համար, նպաստում են արենակցական կապերի տնտեսական բնույթը լուսաբանելուն, օգնում են դրսևորելու նախնադարյան մարդկանց տնտեսական կյանքը (Մարքսի-էնգելսի արխիվ, հատոր IX, 14, 16—17, 25, 32, 40, 42—48, 79 և այլ էջեր)։

Վ. Զասուլիչին ուղղված նամակների սևագիր օրինակներում, որոնք գրվել են 1881 թվականին, Մարքսը շարունակում է զարգացնել այն տեսակետը, որ ինքն արտահայտել է «Կապիտալ»-ի առաջին հատորի էջերում 1867 թվականին, իսկ մինչև այդ՝ Քաղաքատնտեսության քննադատության շուրջը աշխատության մեջ՝ նախնադարյան հասարակության նյութական արտադրության

[1] «Տնտեսագիտական հիմնավորումը,— գրում էր էնգելսը գրքի առաջաբանում,— որը Մորգանի առաջադրած նպատակների համար բավական էր, իսկ իմ նպատակների համար միանգամայն անբավարար, իմ կողմից բոլորը նորից վերամշակվել է», Կ. Մարքս և Ֆ. էնգելս, Ընտիր երկեր, երկու հատորում, II հատոր, Հայպետհրատ, 1950 թ., էջ 211։

տնտեսական նախադրյալների մասին, որոնք արտահայտվում են տնտեսական գործունեության պրոցեսում միավորված մարդկանց՝ արտադրության միջոցների նկատմամբ ունեցած վերաբերմունքի ձևերում, ձևեր, որոնք առաջանում են ոչ թե աշխատանքի հանրայնացման հետևանքով, այլ բնապատմական զարգացման շնորհիվ, երբ տնտեսական ձևն այս կամ այն չափով սահղծվում է բնական ճանապարհով, բայց միևնույն ժամանակ հանդիսանում է զարգացման արդյունք։

Նույն հայացքներն էր պաշտպանում և էնգելսը։ 1875 թվականին, մինչև Մորգանի գրքի հրատարակությունը, նա Լավրովին ուղղած իր նամակում գրում էր. «Հասարակական բնազդը կարևորագույն լծակներից մեկն էր կապիկից մարդու փոխարկման գործում»։ 1876 թվականին Աշխատանքի դերը... աշխատության մեջ էնգելսը նշել է, որ «մեր կապկանման նախնիները... հասարակական կենդանիներ են եղել... և որ չի կարելի մարդու ծագումը բխեցնել... ոչ-հասարակական մերձավորագույն նախնիներից»։ 1883 թվականին Կաուցկուն ուղղված նամակում էնգելսը, զարգացնելով այդ միտքը, գալիս է այն համոզման, որ սեփականության նախնադարյան ձևերը ընդհանրության նախնադարյան, բնական ձևերից գենետիկորեն զարգացող մոմենտներ են. «որտեղ գոյություն ունի ընդհանրություն,— գրում էր էնգելսը,— լինի դա հողի կամ կանանց կամ որևէ այլ ընդհանրություն, այնտեղ դրանք անպայման նախնադարյան, կենդանական աշխարհից անցած սեփականության ձևեր են (Մարքս-էնգելսի արխիվ, հատոր I (6) էջ 219)։ Վերջապես Ընտանիքի...ծագումը գրքում էնգելսը հանրագումարի բերեց իր և Մարքսի այդ հայացքները և ձևակերպեց նախնադարյան մարդկանց անցման ու զարգացման օրինաչափությունը։

Այսպիսով, Մարքսը և էնգելսը մարդկային հասարակության առաջացման պրոցեսը դիտում էին որպես պատմական զարգացման օրինաչափ պրոցես, որպես արտադրության նախնադարյան եղանակի առաջացման պրոցես։ Ուստի նախնադարյան հասարակության վաղ էտապների հետազոտման հարցադրման մեջ ելակետային դրույթը արտադրության նախնադարյան եղանակի երկու կողմերի որոշումն էր, այն է՝ 1. նյութական արտադրության՝ աշխատանքի և նրա զարգացման հասարակական տեխնիկական կողմի և 2. պատմական ձևերի, արտադրական, սեփականատիրական հարաբերությունների ձևերի որոշումը, որոնց գենեզիսը կապված է ընդհանրության բնական ձևերի, նախնադարյան հասարակության հասարակական կազմակերպության ձևերի հետ։





# ԱՅՑԵԼԵՔ ԺՈՂՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

## Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Մոսկվայում գործող ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսն իրավամբ համարվում է գիտության ու առաջավոր փորձի համաժողովրդական համալսարան։ Ամեն օր երկրի տարբեր տեղերից և արտասահմանից այստեղ են գալիս տասնյակ հազարավոր մարդիկ, որոնց համար ցուցահանդեսում ուսանելի շատ բան կա։ Նրանք այս հրաշալի ցուցահանդեսում տեսնում են մեր երկրի հոյակապ նվաճումներն ու զարգացման փայլուն հեռանկարները։

Այնքան բովանդակալից, հարուստ ու բազմազան են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պավիլիոնները, ցուցադրական հրապարակներն ու թեմատիկ ցուցահանդեսները, որ մեկ հոդվածի շրջանակներում հնարավոր չէ հանգամանորեն պատմել նրանց բոլորի մասին։ Ուստի մենք այստեղ հիմնական գծերով կխոսենք միայն այն պավիլիոնների մասին, ուր ցուցադրվում են մեր ծաղկող գյուղատնտեսության հաջողությունները, ժողովրդական տնտեսության այդ կարևոր բնագավառի գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը։



Մեր երկրի էկոնոմիկայի բոլոր բնագավառներում, այդ թվում և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հոյակապ նվաճումների մասին ընդհանուր պատկերացում է տալիս ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի Կենտրոնական պավիլիոնը։

Ահա այդ պավիլիոնի գյուղատնտեսության բաժինը։ Այստեղ մենք ուշիուշով ծանոթանում ենք երկրում եղած 38,8 հազար կոլտնտեսությունների և 9,2 հազար սովխոզների գրաված բնագծերին, նրանց բազմամիլիոն բանակի գործունեության արդյունքի ընդհանուր հանրագումարին։ Ոգևորիչ և հուսադրող են բերքատվության ու անասնաբուծության մթերատվության ավելացման, հանրային տնտեսության զարգացման, գյուղի աշխատավորների բարեկեցության բարձրացման բնագավառներում ձեռք բերված հաջողությունները, որոնք տրված են թվերի ու փաստերի լեզվով։

Նայում ենք թվերին ու մտովին պատկերացնում այն թռիչքը, որ տեղի է ունեցել գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Այդ թռիչքը մեծ է, ու նշանակալից, հատկապես, վերջին տարիներին, 1953 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում։

Գյուղատնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները գունեղորեն ցուցադրելու հետ միասին, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսն իր այցելուներին լայնորեն ծանոթացնում է պարտիայի ծրագրից բխող այն խնդիրների հետ, որ ՍՄԿՊ XXII համագումարը, պարտիայի Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումները դրել են գյուղատնտեսության աշխատողների առջև։ Այդ խնդիրները վիթխարի են ու հոյակապ. դրանց իրագործմամբ մեր երկրում կստեղծվի մթերքների լիակատար առատություն, կապահովվի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը։ Այստեղից էլ այն մեծ հետաքրքրությունը, որ նկատվում է այցելուների մոտ՝ այդ խնդիրներին վերաբերվող իլյուստրացիոն նյութերը դիտելիս։ Նրանք սիրով են տեղեկանում, որ ՍՍՌՄ-ում հացահատիկի արտադրությունը 1970 թվականին հասնելու է 14—16, իսկ 1980 թվականին՝ 18—19 միլիարդ փթի, մսի արտադրությունը (սպանդային քաշով) 1970 թվականին հասնելու է 20—25, իսկ 1980 թվականին՝ 30—32 միլիոն տոննայի. կաթի արտադրությունը 1970 թվականին՝ հասնելու է 115—135, իսկ 1980 թվականին՝ 170—180 միլիոն տոննայի։ Այդ նույն ժամանակամիջոցում շաքարի ճակնդեղի արտադրությունը համապատասխանորեն հասնելու է 10:12 միլիոն տոննայի և այլն։

Այդպիսի հոյակապ նախագծումների իրականացումն ապահովելու վերաբերյալ ցուցահանդեսում տեսնում ենք իլյուստրացիոն հետաքրքրական նյութեր, որոնք ասում են հետևյալը.

— հանքային պարարտանյութերի արտադրությունը ՍՍՌՄ-ում 1964 թվականին կհասնի 25 միլիոն տոննայի, 1970 թվականին՝ 70—80 միլիոն տոննայի.

— հացահատիկային կուլտուրաների ցանքատարածություններին 1964 թվականին կտրվի 7 միլիոն տոննա հանքային պարարտանյութեր, որոնք լրացուցիչ կերպով կտան 14—20 միլիոն տոննա հացահատիկ.

— 1,2 միլիարդ փութ լրացուցիչ հացահատիկ կստացվի նոր ոռոգվող հողերից.

— 1964—1965 թվականներին երկրի գյուղատնտեսությունը կստանա 540 հազար տրակտոր: Կյուրացվեն 100 տեսակի մոդեռնացված և նոր մեքենաներ.

— էլեկտրաէներգիայի ծախսումը կաճի 1,5 անգամ.

— 1964 թվականին արտադրական նպատակներով ծախսվելու է 5 միլիարդ 400 միլիոն ռուբլի, որը գյուղատնտեսության մեջ ամենախոշոր կապիտալ ներդրումն է սովետական իշխանության պատմության մեջ:

Այսպիսի ցուցադրական նյութերը մեզ մեկ անգամ ևս համոզում են այն բանում, որ գյուղատնտեսության հուժկու վերելքի վերաբերյալ պարտիայի նախագծումները կիրագործվեն հաջողությամբ։ Այդ առումով հետաքրքրական շատ բան ենք տեսնում։ «Հացահատիկ», «Հողագործություն», «Տեխնիկական կուլտուրաներ», «Եգիպտացորեն», «Կարտոֆիլ և բանջարեղեն» և մյուս պավիլիոններում, ցուցադրական մի շարք հրապարակներում ու թեմատիկ ցուցահանդեսներում։ Այս տեղերում լայնորեն ցուցադրվում են գիտության նվաճումներն ու առաջավոր տնտեսությունների փորձը։ Դրանք լավագույն օրինակ են բոլորի համար և ապացույցն այն բանի, որ բուսաբուծական ու անասնաբուծական մթերքների արտադրությունը մեծ չափերով ավելացնելու համար մեզ մոտ կան բոլոր պայմաններն ու հնարավորությունները։



Ծանոթանանք դրանցից մի քանիսի հետ.

«Հացահատիկ» պավիլիոնում եղած էքսպոնատներից, դիագրամներից և ցուցադրական այլ նյութերից տեղեկանում ենք, թե ինչպես ագրոտեխնիկական կանոնների ճիշտ կիրառման շնորհիվ երկրի բազմաթիվ առաջավոր կոլտնտեսություններ ու սովխոզներ հեկտարից միջին հաշվով ստանում են 26—36 ցենտներ հացահատիկ։ Ավելի բարձր, ռեկորդային բերք են ստանում առանձին տնտեսություններ, գիտահետազոտական ինստիտուտների փորձնական կայաններ, մեքենայացված բրիգադներ ու օղակներ, որոնք հողին տալիս են պահանջվող քանակությամբ հանքային պարարտանյութեր։

Բերքատվության բարձրացման ուղղությամբ հանքային պարարտանյութերի խաղացած խոշոր դերի մասին պարզ պատկերացում է տալիս պավիլիոնի պատին փակցված ցուցափեղկերից մեկը, ուր կարդում ենք.

— Հեկտարին 5 ցենտներ հանքային պարարտանյութ տալու դեպքում, աշնանացան ցորենի բերքատվությունն ավելանում է՝ Հյուսիսային Կովկասում 15—17, Միջին սևահողային շրջանում՝ 10, Ուկրաինայի անտառային ու դաշտավարական շրջաններում՝ 12 ցենտներով:

Հանքային պարարտանյութերի հետ միասին բերքատվության բարձրացման գործում որոշակի դեր է խաղում կենսաբանական գիտությունը, սելեկցիայի նվաճումների լայն օգտագործումը։ Սովետական սելեկցիոներների գործադրած ջանքերի և արգասաբեր աշխատանքի շնորհիվ ցորենի նախկին սորտերին փոխարինելու են եկել բարձր բերքատու այնպիսի սորտեր, ինչպիսիք են «Բեզոստայա—1», «Միրոնովսկայա—808», «Սարատովկա—29», «Միրոնովսկայա—264», «Կզիլ բաս» և այլն։

«Հացահատիկ» պավիլիոնում լայն տեղ է հատկացված ցորենի նոր սորտերի և, հատկապես, ակադեմիկոս Լուկյանենկոյի բուծած «Բեզոստայա—1» սորտի ցուցադրմանը, որը պարարտացված հողերի յուրաքանչյուր հեկտարից տալիս է 54,2, իսկ չպարարտացված հողերի հեկտարից՝ 32,0 ցենտներ հացահատիկի միջին բերք։ Այն առավել բարձր բերք է տալիս (հեկտարից մինչև 90 ցենտներ) ջրովի առանձին հողերում։ Ընդսմին, այդ ցորենի բույսը բոլորովին չի պառկում։ Նրանից ստացված ալյուրը ունի հացաթխման հիանալի հատկություն։

«Բեզոստայա—1» աշնանացան ցորենի սորտը ցուցադրման է ներկայացրել Ռուսաստանյան ֆեդերացիայի Կրասնոդարի երկրամասի Լենինի շքանշանակիր «Կուբան» սովխոզը, որը 770 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 45,2 ցենտներ ցորենի միջին բերք։ Երկրամասի կոլտնտեսություններն ու սովխոզները այդ հրաշալի սորտը հետևողականորեն արմատավորում են արտադրության մեջ, որի շնորհիվ տարեկան լրացուցիչ կերպով ստանում են 60 միլիոն փութ որակյալ ցորեն։

Այս նոր սորտը, որով 1963 թ. կատարվել է ավելի քան 4 միլիոն հեկտար ցանք, առաջին անգամ շրջանացվել է 1959 թվականին։ Մի քանի տարի անց, 1963 թվականին այն շրջանացվել է Հյուսիսային Կովկասում, Անդրկովկասում, Հարավային Ղազախստանում, Ուկրաինական, Մոլդավական և Կիրգիզական ռեսպուբլիկաներում։ Ավելի վաղ շրջանացված սորտերի համեմատությամբ նոր շրջանացված սորտը հեկտարից ապահովում է 1,4—12,6 ցենտներ բերքի ավելացում, հեկտարից 30,0—47,9 ցենտներ բերքի դեպքում։

Լայն ցուցադրման է ներկայացված նաև ուկրաինացի հայտնի սելեկցիո-

ներ Ռեմեսլոնի բուծած «Միրոնովսկայա—808» աշնանացան ցորենի սորտը, որը հեկտարից տալիս է մոտավորապես 60 ցենտ. բերք։ Բազմաթիվ են այնպիսի արժեքավոր սորտերը, որոնց նմուշները տեսնում ենք պավիլիոնում։ Սերմնաբուծության բարելավման գործում իրենց ավանդն են մուծել նաև մեր ռեսպուբլիկայի սելեկցիոներները, որոնց ստեղծած ցորենի «Ալմարգարիտ», «Եղվարդի—4», «Վարդենիկ—9» և այլ սորտերը աչքի են ընկնում իրենց թե՛ բերքատվությամբ և թե՛ որակով։

Այցելուներին այս պավիլիոնը ծանոթացնում է հացահատիկի արտադրության ասպարեզում գիտության նվաճումներին ու առաջավոր փորձին, որոնց ամենուրեք արմատավորումը բացառիկ կարևոր նշանակություն ունի հացահատիկային տնտեսության զարգացման համար։

Դիտում ենք մյուս պավիլիոնները. մեզ վրա անջնջելի տպավորություն է թողնում շաքարի ճակնդեղի, բամբակի, կարտոֆիլի և գյուղատնտեսական այլ կուլտուրաների մշակությունը մեքենայացնելու, բերքատվությունը բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու առաջավոր փորձը, որոնց կրողները հայտնի են ամբողջ երկրում։ Ահա նրանցից մեկը՝ Կուբանի տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների փորձարկման ինստիտուտի օղակավար Վ. Ա. Սվետլիչին, որը մշակել է առանց ձեռքի աշխատանք ծախսելու շաքարի ճակնդեղի արտադրության տեխնոլոգիա և ցույց տվել դրա՝ գործնականում կիրառելու հնարավորությունը։

Անվանի մեխանիզատորի օղակում ընդգրկված 6 մարդուց յուրաքանչյուրը մշակում է 28 հեկտար ճակնդեղ (հիշենք, որ իր ժամանակին հայտնի ճակնդեղագործուհի Մ. Դեմչենկոն մշակում էր 0,4 հեկտար), իսկ օղակի անդամները միասին վերցրած՝ 170 հեկտար։ Օղակը 1963 թվականին (որը բերքատվության համար անբարենպաստ տարի էր) յուրաքանչյուր հեկտարից ստացել է 267 ցենտներ ճակնդեղ, կամ մեկ մարդու հաշվով արտադրված է 7565 ցենտներ. մեկ ցենտների արտադրության վրա ծախսված է 9,2 րոպե։

Նշենք, որ դրանից ավելի բարձր բերք ստացած մյուս առաջավոր օղակների համեմատությամբ, ուր տիրապետում է ձեռքի աշխատանքը, ընկ. Սվետլիչնու օղակը մեկ մարդու հաշվով 9—15 անգամ շատ ճակնդեղ է ստացել։ Սակայն դա դեռ բոլորը չէ։ Այստեղ արտադրված մեկ ցենտներ ճակնդեղի ինքնարժեքը կազմում է 48 կոպեկ, իսկ գնման գինը 2 ռ. 70 կոպեկ է։

Այսպիսով, ընկ. Սվետլիչնու օղակը մեկ հեկտարի հաշվով ստացել է 720 ռ. 90 կոպեկի շաքարի ճակնդեղ։ Եթե դրանից հանենք արտադրության բոլոր ծախսերը, որոնք կազմում են 128 ռ. 16 կոպեկ, ապա պարզ կդառնա, որ շաքարի ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 592 ռ. 74 կոպեկ եկամուտ։

— Այդ ամենը,— բացատրում է էքսկուրսավարը,— շաքարի ճակնդեղի մշակությունը կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու արդյունք է։

Մեքենայական աշխատանքը խոշոր արդյունք է տալիս նաև բամբակագործության բնագավառում։ Այդ առթիվ «Տեխնիկական կուլտուրաներ» պավիլիոնում ուշագրավ ցուցադրական նյութեր կան Սովետական Ուզբեկստանի բամբակագործների փորձից։ Այստեղ բամբակի մշակության և բերքահավաքի աշխատանքները մեքենայացնելու շնորհիվ 1963 թվականին (ձեռքի աշխատանքի համեմատությամբ) տնտեսվել է 587.000 տոննա բամբակի հումք, 6936 հազար ռուբլի և 8670,0 հազար մարդ-օր։



Բամբակի մշակության կոմպլեքսային մեքենայացման ասպարեզում առավել աչքի ընկնող բրիգադների ու օղակների փորձը ցույց է տալիս, որ հայրենի արդյունաբերության թողարկած տեխնիկայի հիման վրա կարելի է լուծել բամբակագործության մեքենայացման խնդիրը։

Միանգամայն հնարավոր է լուծել նաև կարտոֆիլի մշակության մեքենայացումը։ Այդ է ապացուցում Մոսկվայի մարզի Սոլնեչնոգորսկի շրջանի մեքենափորձնական կայանի Վ. Ի. Կուզնեցովի օղակի հրաշալի փորձը։ Երեք հոգուց բաղկացած այս օղակը ցանում է 157 հեկտար կարտոֆիլ և դրա մշակության բոլոր հիմնական աշխատանքները կատարում է առանց ձեռքի աշխատանքի։ Փաստորեն օղակի յուրաքանչյուր անդամ մշակում է 52 հեկտար կարտոֆիլ, այսինքն այնքան, որքան ձեռքի աշխատանքի պայմաններում մշակում են 40 մարդ։

Ընկ. Կուզնեցովի օղակը յուրաքանչյուր հեկտարից ստանում է 160 ցենտներ կարտոֆիլ, կամ մեկ մարդու հաշվով արտադրվում է 8373 ցենտներ։ Արտադրված մեկ ցենտներ կարտոֆիլի վրա աշխատանքային ծախսումները կազմում են 54 րոպե, իսկ ինքնարժեքը 2 ռ. 54 կ.։ Պետությունը գնած մեկ ցենտներ կարտոֆիլի դիմաց վճարում է 10 ռուբլի, որից 7 ռուբլի 46 կոպեկը մնում է զուտ եկամուտ։

Ցուցահանդեսում հատուկ տեղ է հատկացված նաև դաշտերի թագուհու՝ եգիպտացորենի կոմպլեքսային մեքենայական մշակության փորձին։ Եգիպտացորենի մշակության մեքենաների ցուցադրման հրապարակում մենք սիրով ենք ծանոթանում Գոմելի մարզի Խոյնիկիյի արտադրական վարչության «Հոկտեմբեր» կոլտնտեսության Սոցիալիստական աշխատանքի հերոս Կոտույի օղակի ցուցանիշներին, որոնց նվիրված է մի ցուցափեղկ։ Այդտեղից իմանում ենք, որ օղակը մեքենաներով մշակում է 250 հեկտար եգիպտացորեն, որի յուրաքանչյուր հեկտարից ստանում է 548 ցենտներ կանաչ մասսա։

Մեծ հետաքրքրություն է առաջացնում Կուբանի անվանի մեխանիզատոր Վ. Յա. Պերվիցկու օղակի փորձը։ Օղակի երեք մեխանիզատորները մշակում են 445 հեկտար եգիպտացորեն։ Նրանցից ամեն մեկը առանց ձեռքի աշխատանքի ծախսումների մշակում է 148 հեկտար եգիպտացորեն, որի յուրաքանչյուր հեկտարից ստանում է 51,5 ցենտներ հատիկ։ Մեկ ցենտներ հատիկի արտադրության համար աշխատանքային ծախսումները կազմում են ընդամենը ութ րոպե։ Սա արդեն խոշոր հաջողություն է և ուսանելի փորձ բոլորի համար։

Բազմաթիվ են այդպիսի հրաշալի օրինակները, որոնք ցույց են տալիս գյուղատնտեսությունը բարձր արտադրողականությամբ վարելու ուղին։ Եվ իզուր չէ, որ արագորեն տարածվում է դրանց փորձն ու երկրում տարեցտարի ավելանում մեքենայացված օղակների թիվը։ Բավական է ասել, որ միայն Բելոռուսիայում 1962 թվականին եղած 200 մեքենայացված օղակների փոխարեն, 1963 թվականին կազմակերպված է 519 օղակ, որոնք մեկ տարվա ընթացքում համարյա կրկնապատկել են մեքենաներով մշակվող ցանքատարածությունները։



Մեքենաները լայն մուտք են գործում նաև անասնապահության բնագավառ։ Ցուցահանդեսի՝ անասնաբուծությանը նվիրված պավիլիոններում,

հրապարակներում, ինչպես նաև գոմերում ամեն մի այցելու տեսնում է, թե
ինչպես աշխատատար պրոցեսների մեքենայացման միջոցով հնարավոր է
լուրջ հաջողությունների հասնել անասնաբուծական մթերքների արտադրու-
թյան ավելացման, դրանց ինքնարժեքի իջեցման և անասնաբուծության եկա-
մտաբերության բարձրացման գործում: Այդ տեսակետից հետաքրքրական է
Ռոստովի մարզի «Պրոլետարսկայա դիկտատուրա» սովխոզի Գ. Պ. Պլոտնի-
կովի բրիգադայի փորձը: Աշխատատար պրոցեսների մեքենայացման և խո-
զերի խնամքի առաջավոր ձևերի գործադրման շնորհիվ մեկ աշխատողի հաշ-
վով այս բրիգադան արտադրել է 1364 ցենտներ միս. մեկ ցենտներ քաշաճի
ինքնարժեքը կազմել է 26 ռ. 50 կ.: Սովխոզը ամեն մի ցենտներ խոզի մսի
դիմաց փաստորեն ստացել է 54 ռ. 65 կոպեկ եկամուտ: Դա հրաշալի ցու-
ցանիշ է:

Արժեքավոր է նաև Զապորոժյեի մարզի Վասիլևսկի շրջանի «Պերեմոգա»
սովխոզի փորձը: Սովխոզը 1963 թվականին 100 հեկտար հողատարածության
դիմաց արտադրել է 557 ցենտներ կաթ: Այստեղ կովերի մի մասը պահվում
է անկապ վիճակում, որը լավ արդյունք է տալիս: Անասուններին խնամելու
այս առաջավոր ձևը առավել հնարավորություն է տվել կոմպլեքսային մեքե-
նայացման ենթարկելու աշխատատար պրոցեսները: Դրա շնորհիվ զգալի չա-
փով կրճատվել են կերի նախապատրաստման ու բաշխման, գոմաղբի տեղա-
փոխման և մյուս աշխատանքների վրա կատարվող ծախսերը, իջել է կաթի
ինքնարժեքը և շատացել մեկ կովից ստացվող եկամուտը: Այսպես, եթե
1960—1963 թվականներին կապված վիճակում պահվող յուրաքանչյուր կովից
սովխոզը ստացել է 330 ռուբլի եկամուտ, ապա անկապ վիճակում պահվող
կովից՝ 431 ռուբլի:

Հենց այստեղ, ցուցահանդեսի տիպային նախագծերով կառուցված գո-
մերում ու դրանց հարակից շենքերում այցելուները գործնականում ծանոթա-
նում են կովերի խնամքի ու կթի կոմպլեքսային մեքենայացմանը: Այցելուները
հատկապես հետաքրքրությամբ են դիտում ու ծանոթանում ՍԻԴԵ—16 «Յոլոչ-
կա» կթի ագրեգատի աշխատանքին: Այս ագրեգատն իր ունեցած 8 կթի ա-
պարատներով երկու խմբով մեկ անգամից կթում է 16 կով: Ագրեգատին սպա-
սարկում են 2 հոգի, որից մեկը կթվոր է: Ձեռքով կթի համեմատությամբ այս
ագրեգատը կթվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է
ավելի քան 4 անգամ:

Երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում օգտագործվող բազմա-
թիվ մեքենաներ ու մեխանիզմներ շարժման մեջ են դրվում էլեկտրաէներգիայի
միջոցով, որը թեթևացնում է դաշտերում ու ֆերմաներում աշխատող միլիո-
նավոր մարդկանց գործը: Էլեկտրիֆիկացիան բարձրացնում է արտադրության
կուլտուրան, արմատապես փոխում է գյուղի արտաքին դեմքը, բարեկեցիկ է
դարձնում նրա աշխատավորների կենցաղը:

«Գյուղատնտեսության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը» նոր պա-
վիլիոնում հարուստ ցուցադրական նյութեր կան այդ բոլորի մասին: Դրանցից
տեղեկանում ենք, որ 1963 թվականին գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներ-
գիայի ծախսումը կազմել է 17 միլիարդ կիլովատ-ժամ, կամ 6 անգամ շատ,
քան 1953 թվականին:

Սրանից 10 տարի առաջ կոլտնտեսություններն ու սովխոզները պետական
էլեկտրացանցից ստանում էին իրենց ծախսած էլեկտրաէներգիայի միայն



33 տոկոսը: Անցյալ տարի այդ բաժինը հասավ մինչև 60 տոկոսի, իսկ 1965
թվականին կհասնի 80 տոկոսի: Մոտակա տարիներին գյուղի էլեկտրամատա-
կարարումը հիմնականում կապահովվի երկրի պետական միասնական էներ-
գետիկ սիստեմից: Դա սովետական պետության կողմից գյուղին ցույց տրվող
խոշոր օգնության վառ օրինակներից մեկն է:

Այժմ մեր գյուղատնտեսությունն ստանում է 24 միլիարդ կիլովատ-ժամ
էլեկտրաէներգիա, որից 14 միլիարդ կիլովատ-ժամը օգտագործվում է ար-
տադրական նպատակներով: Շատ տնտեսություններ էլեկտրաէներգիան խե-
լացիորեն օգտագործելու շնորհիվ որոշակի հաջողությունների են հասել ար-
տադրության աշխատատար պրոցեսների մեքենայացման գործում: Այդ առ-
թիվ ցուցանիշների ցուցափեղկերից մեկում կարդում ենք.

Լիտվական ՍՍՌ-ի կոլտնտեսություններում ու սովխոզներում 1963 թվա-
կանին խոշոր եղջերավոր անասունների ջրամատակարարումը մեքենայացվել
է 70, խոզերինը՝ 100, թռչուններինը՝ 80 տոկոսով. կերաբաշխումը մեքենա-
յացվել է՝ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 9,8, խոզերինը՝ 35,5 տոկոսով,
գոմաղբի տեղափոխումը՝ համապատասխանորեն 11:33,3 տոկոսով, իսկ կո-
վերի կիթը՝ 45,5 տոկոսով:

Նման օրինակներ են բերված մի շարք ռեսպուբլիկաներից, մարզերից ու
երկրամասերից:

***

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում լայն
ցուցադրված են գյուղատնտեսական բազմաթիվ նոր մեքենաներ ու մեխա-
նիզմներ, որոնք անընդհատ հոսքով մուտք են գործում կոլտնտեսային ու սով-
խոզային արտադրության մեջ:

«Գյուղատնտեսության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը» պավիլիո-
նում այցելուների ուշադրությունն է գրավում պարարտանյութեր շաղ տվող
«ՌՍՒ—4» կախովի մեքենան: Փոշի պարարտանյութեր շաղ տալիս այս մեքե-
նան ընդգրկում է 8, իսկ գրանուլացված պարարտանյութեր շաղ տալիս՝ 12
մետր տարածություն: Գրանուլացված պարարտանյութեր շաղ տալիս, մեքե-
նան մեկ ժամում պարարտացնում է 10 հեկտար: Այն ունի մեկ ուրիշ առա-
վելություն ևս: Հատուկ հարմարանքների միջոցով քամուց պաշտպանում է
պարարտանյութերը և դրանցից կորուստ թույլ չի տալիս:

Հանքային պարարտանյութերի արտադրության մեծ չափով ավելացումը
և ռացիոնալ օգտագործումը պահանջում են մեքենայացման ենթարկել դրանց
բեռնման, բեռնաթափման և շաղ տալու բոլոր պրոցեսները: Դրա համար էլ
հարց է դրված ոչ միայն ճիշտ օգտագործել թողարկվող հատուկ տեխնիկան,
այլև վերափոխել ու այդ նպատակին ծառայեցնել նաև եղած մեքենաներից:
Այս գործում իրենց արժանի ավանդն են մուծել Կրասնոդարի և Ստավրոպոլի
երկրամասերի կոլտնտեսությունների, սովխոզների ու «Գյուղտեխնիկայի»
բաժանմունքների մեխանիզատորները, որոնք առանձին մեքենաների վրա
պատրաստել են իրենց կառուցվածքով հասարակ, բայց պարարտանյութեր
շաղ տալու համար ձեռնտու մի քանի տեսակ մեխանիզմներ: Ուշագրավ է
Կրասնոդարի երկրամասի Կավկազսկի շրջանի «Լենինի ճանապարհով» կոլ-
տնտեսությունում պատրաստված պարարտանյութեր շաղ տվող երկթևանի

հարմարանքը, որն ագրեգատավորվում է Տ—38 կամ «Բելոռուս» տրակտոր-
ներին։ Դրա բեռնատարողությունը 2 տոննա է. շաղ տալու լայնությունը՝
25—30 մետր, օրվա միջին արտադրողականությունը՝ 107 հեկտար։
Հրաշալի է կվովում արտադրված «ԳԱՆ—8» ագրեգատը, որը փոխարինում
է մի քանի մեքենաների։ Ագրեգատը մեկ հերթափոխում մշակում է 80—100
հեկտար և հողին տալիս է ոչ միայն հեղուկ պարարտանյութեր, այլև պայքա-
րում է մոլախոտերի դեմ՝ ցանքը մշակելով հերբիցիդներով։
Այս տարի Խարկովի, Մինսկի, Լենինգրադի և երկրի այլ քաղաքների մե-
քենաշինարարները ցուցահանդես են ուղարկել տարբեր մարկաների նոր
տրակտորներ, որոնք աչքի են ընկնում իրենց ունիվերսալությամբ, արագա-
շարժությամբ ու հզորությամբ։
Մինսկի մեքենաշինարար գյուղատնտեսական արտադրության համար
առաջարկում են անիվավոր ունիվերսալ շարահերկ նոր տրակտորներ։ Դրան-
ցից է «ՄՏԶ—50-ը», որը նախատեսված է հողի նախացանքային, ինչպես նաև
ցանքի և բույսերի միջշարային տարածությունների մշակման համար։ Այդ
նույն տրակտորը կարելի է օգտագործել որպես փոխադրամիջոց և ստացիոնար
մեքենաների շարժիչ ուժ։
Գյուղատնտեսական տարբեր աշխատանքների (վար, անընդմեջ կուլտի-
վացիա, հողի նախացանքային մշակում, ցանք, բերքահավաք և այլն) արա-
գացման նպատակին է ծառայում Տ—125 անիվավոր տրակտոր-քարշակը, որը
նույնպես դասվում է նոր տեխնիկայի շարքին։
Ցուցադրվող նոր տրակտորների մեջ իր ուրույն տեղն է գրավում 220
ձիաուժանոց «Կիրովեց—Կ—700» գերհզոր տրակտորը, որը հատկապես նա-
խատեսված է օգտագործելու ինչպես խոպանի, այնպես էլ տափաստանային
շրջանների հողերում։
Հողագործների համար լավ նվեր է Տագանրոգի կոմբայնի և «Ռոստսել-
մաշ»-ի մասնագիտացված գործարաններում ստեղծված ՍԿ—4 ինքնագնաց
կոմբայնը, որի կոնստրուկցիան ստեղծելու և մասսայական արտադրությունը
կազմակերպելու համար մի խումբ մասնագետներ գլխավոր կոնստրուկտոր
Խ. Ի. Իզակսոնի հետ միասին 1964 թվականին արժանացան Լենինյան մըր-
ցանակի։
ՍԿ—4 ինքնագնաց կոմբայնին միացվում է ԺՎՆ—10 կցովի գլանավոր
հնձիչը։ Այն նախատեսված է հացահատիկային կուլտուրաներ հնձելու և հրնձ-
ված մասսան մեկ կամ երկու կույտի վերածելու համար։ Հնձիչի արտադրո-
ղականությունն է՝ ժամում 5,5 հեկտար։
Հացահատիկի բերքահավաքի լայն ընդգրկման այդպիսի տեխնիկայի
կիրառումը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում
հացահատիկի ինքնարժեքը և նվազեցնում նրա կորուստը։ ԺՎՆ—10 հնձիչով
հացահատիկային կուլտուրաները հնձելիս, աշխատանքի արտադրողականու-
թյունը, ԺՐԲ—4,9 հնձիչի համեմատությամբ, աճում է 1,3 անգամ, իսկ կույ-
տերը հավաքելիս՝ 2,2 անգամ։
Հաշվի առնելով այդ, մեր արդյունաբերությունն անընդհատ ավելացնում
է այդպիսի տեխնիկայի թողարկումը։ Այս տարի գյուղատնտեսության աշխա-
տողները կստանան 11,7 հազար ԺՎՆ—6 և 9,6 հազար ԺՎՆ—10 հնձիչ։ Դրանց
գործադրումը հնարավորություն կտա հնձելու 22 միլիոն հեկտար հացահատ-



կային կուլտուրաներ և ազատելու ավելի քան 80 հազար տրակտոր՝ այլ աշ-
խատանքների համար։
Գյուղատնտեսական տեխնիկայի զարգացման ու կատարելագործման հա-
Գյուղատնտեսական տեխնիկայի զարգացման ու կատարելագործման հա-
մար նոր, չտեսնված հեռանկարներ է բացում ռադիոէլեկտրոնիկան։ Այդ ուղ-
ղությամբ այցելուները հետաքրքրական շատ բան են տեսնում «Ռադիոէլեկ-
տրոնիկա» պավիլիոնում։ Այստեղ կան բազմաթիվ սարքեր ու հարմարանք-
ներ, որոնք իրենց համար ճանապարհ են հարթում գյուղատնտեսության մեջ։
Վերցնենք, թեկուզ, էլեկտրոնային ապարատները, որոնց միջոցով հնարավոր
է կենտրոնական դիսպետչերական վահանից մշտական կապ պահպանել վե-
րահսկվող 8 կետերի հետ։ Պրակտիկայում դա ապահովում է գյուղատնտե-
սական արտադրության էլեկտրիֆիկացման ավտոմատացումն ու հուսալիու-
թյունը։
Որոշ ժամանակ աշխատելուց հետո, գյուղատնտեսական մեքենաներն ու
մեխանիզմները կարիք են զգում նորոգման։ Նախքան նորոգումը պետք է
հայտաբերել դրանց թերությունները, ծանոթանալ մեքենաների վիճակին։ Դրա
համար հարկ է լինում մեքենաները քանդելու, որը բավական ժամանակ է
խլում և ծախսեր պահանջում։ Այդ գործը թեթևացնելու նպատակով մեր գիտ-
նականները կիբեռնետիկական հատուկ սարքավորում են ստեղծել, որի օգնու-
թյամբ մեքենաների տեխնիկական վիճակը ստուգվում և եղած թերություննե-
րը հայտաբերվում են առանց մեքենաները քանդելու, միայն աղմուկի ու տա-
տանումների հիման վրա։
Մեր փառապանծ գիտնականներն ու ինժեներները արգասաբեր աշխա-
տանք են կատարել և հաջողությունների հասել գյուղատնտեսական մեքենա-
ները ավտոմատ կերպով վարելու էլեկտրոնային սարքեր ստեղծելու ուղղու-
թյամբ։ Նրանք այդպիսի սարքեր են ստեղծել նաև սերմերը ցանքի համար
նախապատրաստելու, ջերմոցներում սածիլների վրա ուլտրամանուշակագույն
ճառագայթներ սփռելու, թռչնաբուծական ֆերմաներում լուսավորությունը
կարգավորելու և այլ նպատակների համար։
Այս ամենը սովետական առաջավոր գիտության հոյակապ նվաճումներն
են, որոնց խելացի ու նպատակահարմար օգտագործումը բոլոր տնտեսու-
թյունների ղեկավարների, մասնագետների, գյուղատնտեսության ողջ աշխա-
տողների առաջնահերթ խնդիրն է։ Այս գործում նրանց մեծ օգնություն է ցու-
ցաբերում Մոսկվայում գործող ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվա-
ճումների ցուցահանդեսը, որն ամեն օր իր տասնյակ հազարավոր այցելուներին
ծանոթացնում է ոչ միայն գիտության նվաճումներին ու առաջավոր փոր-
ձին, այլև սովորեցնում է, թե դրանք ինչպես պետք է ներդնել արտադրու-
թյան մեջ։

***

Ցուցահանդեսի այցելուները Մոսկվա ժամանելուն պես արժանանում են
ջերմ ընդունելության. էքսկուրսիոն բյուրոյի ընկերները նրանց իսկույն ուղեկ-
ցում են մոտակա «Золотой колос» հյուրանոցը, որն ունի 16 խոշոր կորպուս-
ներ՝ իրենց բոլոր հարմարություններով։
Հարմարություններն ու պայմանները հրաշալի են նաև ցուցահանդեսում.
այցելուն այստեղ կարող է հաճախել ցանկացած պավիլիոնը և մանրամասն-

րեն ծանոթանալ ցուցադրական նյութերին, բացատրություններ ստանալ մասնագետներից, կինոնկարներ դիտել առանձին թեմաների վերաբերյալ, օգտվել մասնագիտական գրքույկներից ու բյուլետեններից, մասնակցել դասախոսություններին ու կոնսուլտացիաներին։

Ժամանակը տնտեսելու և ռացիոնալ կերպով օգտագործելու համար յուրաքանչյուր այցելու կարող է պավիլիոնից-պավիլիոն գնալ կամ ցուցահանդեսի ընդարձակ տերիտորիան շրջագայել տրոլեյբուսով, ավտոգնացքով և փոքր ավտոբուսներով։ Ցանկացած պահին նա կարող է օգտվել նաև ցուցահանդեսի տերիտորիայի տարբեր մասերում գտնվող նախաճաշարաններից, թեյարաններից, կաֆեներից, զովացուցիչ ջրերի ավտոմատներից, ճաշարաններից, ռեստորաններից, գրքերի ու թերթերի կրպակներից, վերանորոգման արհեստանոցներից, արդյունաբերական ապրանքների խանութներից և մշտական գործող տոնավաճառից։

Այցելուները կարող են այստեղ անցկացնել նաև իրենց երեկոյան հանգիստը՝ զբոսնել բուրավետ պուրակներում, դիտել գունավոր կինոնկարներ, մասնակցել տարբեր տեսակի խաղերին, ժամանակակից պարերին (իսկ եթե պարել չգիտե, կարող են հաճախել պարերի ուսուցման դասերին) և այլն։

Այսպիսի հրաշալի պայմաններ ունեցող ցուցահանդեսում, ցավոք, մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային ու սովխոզային արտադրության աշխատողներից դեռևս քիչ են լինում։ Մենք բոլոր տնտեսությունների ղեկավարներին, գյուղատնտեսության մասնագետներին և մյուս աշխատողներին խորհուրդ ենք տալիս ու բարեկամաբարասում՝ այցելեցեք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսը՝ գիտության նվաճումների ու առաջավոր փորձի այդ համաժողովրդական համալսարանը, որը ձեզ շատ բան կսովորեցնի և կօգնի պրակտիկ աշխատանքները հաջողությամբ կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու բնագավառում նորանոր հաջողությունների հասնելու։



## ՎԱՏԻԿԱՆԸ «ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ» ԵՐՐՈՐԴ ՆՍՏԱՇՐՋԱՆԻ ՆԱԽԱԴՌԱՆԸ

Կ. ԼԵՎՈՆՅԱՆ

Դարերի ընթացքում խոր արմատներ գցած կաթոլիկական եկեղեցին և նրա կենտրոնը՝ Վատիկանը ինչպես միշտ, այսօր էլ զինվորագրված «աշխարհիս ուժեղների» բանակին, իր բոլոր ջանքերը ծառայեցնում է հակակոմունիստական պայքարին։ Կաթոլիկ եկեղեցու քաղաքականության և գաղափարախոսության նման ուղղությունը բնորոշող ոչ վերջին պատճառներից մեկը կողոպտած և դիզած հարստություններից զրկվելու վախն է։ Կաթոլիկ եկեղեցին կապիտալիստական աշխարհի անկապտելի մասն է դարձել։ Ինքը՝ Վատիկանը, խոշոր կապիտալիստական տրեստի դեր է խաղում։

Դեռ հին ժամանակներից Հռոմում գոյություն ունի Banco di Santo Spirito («Սուրբ հոգու բանկ»), որը ամուր թելերով կապված է մեկ այլ, կաթոլիկական՝ «Հռոմեական բանկի» և «Իտալական առևտրական բանկի» հետ։ Այս բանկերը մասնակցում են միջազգային արդյունաբերական և ֆինանսական նշանավոր գործարքներին։ Վատիկանի հսկողության տակ է գտնվում Իտալիայի ամբողջ դրամագլխի երեք քառորդը, որը կազմում է ավելի քան 400 միլիարդ լիրա։ ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Իսպանիայի, Փորթուգալիայի, Շվեյցարիայի, Արգենտինայի, Բրազիլիայի և շատ այլ երկրների արդյունաբերության բազմազան ճյուղերում ներդրված են 35 միլիարդ ֆրանկի վատիկանյան միջոցներ։ Միայն ԱՄՆ-ում կաթոլիկ եկեղեցուն պատկանող ունեցվածքից և ձեռնարկություններից ստացվող շահույթը տարեկան կազմում է մոտ մեկ միլիարդ դոլար։ Բուրժուական մամուլի տվյալներով Վատիկանի վալյուտային և ոսկյա ֆոնդը 1952 թվականին կազմել է 11 միլիարդ դոլար։ Այս կլորիկ գումարը շատ ավելին է, քան Իտալիայի, Անգլիայի և Ֆրանսիայի ոսկու պաշարը միասին վերցրած։

Եվ, չնայած այսպիսի նյութական հզորության, չնայած կղերականների և եկեղեցու սպասարկուների աշխարհով մեկ ցրված բազմաքանակ բանակի, կաթոլիկական պարտիաների, օրդենների, կազմակերպությունների լայն ցանցի ամենաակտիվ գործունեության, Վատիկանն այսօր կանգնել է այնպիսի դժվարությունների առաջ, որոնց լուծումը հրամայական պահանջ է դարձել իր հետագա գործունեությունը շարունակելու, վերջին հաշվով գոյությունը պահպանելու համար։ Կաթոլիկ գաղափարախոսները, ոչ առանց հիմքի, գտնում են, որ մահացու վտանգ է կախվել եկեղեցու գլխին։ Այդ վտանգը, ինչպես իրենք են արտահայտվում, «անաստված կոմունիզմի», «մատերիալիստական աթեիզմի» վտանգն է։ Կաթոլիկ վանական Սինետո Պելայան Հռոմում վերջերս լույս

տեսած «Հոգևորականները մարդիկ են» գրքում խոստովանում է. «Եկեղեցին վեր է ածվել հետադիմական քաղաքական պարտիայի: Նա իր բախտը սերտորեն կապել է կապիտալիստների և կալվածատերերի հետ: Այդ բանը մեկուսացրել է նրան ժողովրդից, նրան անուղղելի վնաս հասցրել»:

Փաստերը, իրոք, անհերքելի կերպով ապացուցում են, որ կաթոլիկ եկեղեցին, ինչպես նաև բոլոր մյուս եկեղեցիներն ու կրոնները, գնալով կորցնում են հավատացյալներին, որոնք գիտական աշխարհայացքի լույսի տակ հեռանում, հրաժարվում են եկեղեցուց: Իտալական կոմպարտիայի «Ռինաշիտա» ամսագիրը տվյալներ է բերում այն մասին, որ այժմ «ամենազոր» հռոմեական-կաթոլիկական եկեղեցին ընդգրկում է,— այն էլ անվանապես,— միայն մարդկության 18 տոկոսը. մինչդեռ վատիկանյան առաջին ժողովի օրերին՝ 1869—1870 թվականներին, 25 տոկոս էր:

Ծայր առած այս քայքայման առաջն առնելու համար էլ Վատիկանը, մի կողմից ավելի է ուժեղացնում հակակոմունիստական պայքարը, մյուս կողմից՝ ճգնում նոր, ավելի ճկուն մեթոդներ կիրառել, սրբագրել, նորոգել որոշ քարացած տրադիցիաներ:

Հակակոմունիստական պայքարի աշխուժացման ցայտուն օրինակներ են տալիս ԳՖՌ-ի կաթոլիկական գործիչները: Ամեն ամիս ԳՖՌ-ի եպիսկոպոսների ժողովը մշակում է բոլոր եկեղեցիներում կարդացվող քարոզների պլանները: Օրինակ, 1961 թվականի վերջերին բոլոր կաթոլիկական եկեղեցիներում արարողություններ և քարոզներ կարդացվեցին «Ջգոնություն անաստված կոմունիզմի հանդեպ» թեմայով: Երկրում մեկ ստեղծված են մշտական գործող կրոնական-քաղաքական դասընթացներ և սեմինարներ տարբեր խավերի համար, ինչպես օրինակ, աշխատող կանանց, երիտասարդ մայրերի, ամուրիների, քաղաքապետների, բունդեսվերի սպաների և զինվորների, դպրոցականների, նորապսակների, կաթոլիկական բանվորական շարժման անդամների և այլոց համար: Այդ սեմինարներում մարդկանց գիտակցության մեջ ներարկվում է հակակոմունիզմի, ռասսայականության, ռևանշիզմի թույնը:

Այս ամենին զուգահեռ կաթոլիկ եկեղեցին փորձում է հավատացյալներ նվաճել, ցույց տալով իրեն որպես աշխատավորների «բարեկամ»: 81 երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների հայտարարությանը, ինչպես նաև ՍՄԿՊ ծրագրին ի պատասխան, Հովհաննես XXIII պապը լույս ընծայեց «Մատեր էթ մագիստրա» էնցիկլիկան: Այս փաստաթղթում կաթոլիկ եկեղեցու պատմության մեջ առաջին անգամ Վատիկանը պաշտոնապես չեզոք դիրք բռնեց կապիտալիզմի և կոմունիզմի միջև, հայտարարելով իրեն «երրորդ ուժ»: Հովհաննես XXIII-ը փորձում էր համոզել, որ հնարավոր է բարելավել աշխատավորության վիճակը, «ավելի արդարացի բաշխել երկրային բարիքները» առանց դասակարգային պայքարի, առանց գոյություն ունեցող սիստեմի արմատական սոցիալական վերափոխության: «Վաշինգտոն պոստ» թերթի կարծիքով այդ էնցիկլիկան պետք է «Առաջատար տեղ գրավեր կրոնական խրատների շարքում, որոնց նպատակն է կապիտալիզմն ընդունելի դարձնել մարդկանց գիտակցության համար»: Այսպիսով, կաթոլիկական եկեղեցու սոցիալական վարդապետության իդեալը, որքան էլ որ պապը «չեզոքության» փորձեր անի, եղել և մնում է բարելավված, «ուղղված» կապիտալիզմը: Սա կրոնական գունավորում ստացած ռեֆորմիզմի սոցիոլոգիան է:

Ոչ հակակոմունիստական պայքարի աշխուժացումը, և ոչ էլ սոցիալական



երեսպաշտության նորագույն դրսևորումները ցանկացած արդյունքը չտվեցին: Վատիկանը, Հովհաննես XXIII-ի ընտրվելուց անմիջապես հետո, 1959 թվականից սկսեց պատրաստվել «Տիեզերական ժողովի», որը, նրա նախաձեռնողների կարծիքով, կոչված է լուծելու եկեղեցու առջև ծառացած դժվարությունները:

Ներկա «Տիեզերական ժողովը», որի առաջին նստաշրջանը կայացավ 1962 թվականի աշնանը, իսկ երկրորդը՝ 1963 թվականի սեպտեմբեր-հոկտեմբերին, հերթական քսանմեկերորդ «Տիեզերական ժողովն» է քրիստոնեության պատմության մեջ: Բոլոր այդ ժողովները միշտ էլ հրավիրվել են եկեղեցու համար ամենածանր, վճռական պահերին, լուծելու համար կարևորագույն հարցերի այս կամ այն խումբը: Ներկա ժողովը, որը միևնույն ժամանակ կոչվում է Վատիկանյան երկրորդ ժողով, այդ տեսակետից բացառություն չի կազմում:

Հենց իրենք՝ կաթոլիկական եկեղեցու իշխանները, չեն թաքցնում այդ ժողովի նպատակները: «Գալիք ժողովը,— ասել է Պարենտե եպիսկոպոսը, Հռոմում կայացած նախապատրաստական կոնֆերանսներից մեկում,— կկայանա այնպիսի մի իրադրության մեջ, երբ մատերիալիստական գաղափարախոսության կողմից վտանգվող աշխարհը, կյանքի բոլոր բնագավառներում վերապրում է բազմաքանակ և խոր ճգնաժամեր: Ժողովի նպատակն է՝ վերադարձնել եկեղեցու փառքը, ամրապնդել կրոնական զգացմունքները, պաշտպանել ճշմարտության և աստծո իրավունքները»:

«Տիեզերական ժողովի» նախապատրաստական աշխատանքները տևեցին մոտ երեք տարի, գրվեցին և տեղերն ուղարկվեցին ավելի քան 1000 նամակներ: Ստացված պատասխանները կազմեցին 16 հատոր, 10.000 էջից բաղկացած: Ժողովի շուրջ բարձրացվեց այնպիսի աղմուկ, որն ընդգրկեց բուրժուական-պրոպագանդիստական բոլոր միավորները՝ մամուլը, ռադիոն, դրան նվիրվեցին երեկույթներ, ցերեկույթներ, միտինգներ և այլն: Այդ աղմուկի նպատակը մեկն է՝ բարձրացնել կաթոլիկական եկեղեցու սասանված վարկը:

Հետաքրքրական է նշել, որ ժողովի նախապատրաստական աշխատանքներում մեծ տեղ է հատկացվել Ասիայի և Աֆրիկայի երկրների ներկայացուցիչներին լայնորեն ներգրավելու հարցին: Արդեն բավականին երկար ժամանակ, կաթոլիկ եկեղեցին, զգալով իր դիրքերի աստիճանական խարխլումը Ասիայում և Աֆրիկայում, փորձում է «բարեկամության» խաղեր խաղալ այդ աշխարհամասերի ժողովուրդների հետ: Նույնիսկ վերջերս բանը հասավ այնտեղ, որ տանգանիկացի նեգր Ռուգամբվան ստացավ կարդինալի կոչում: Կաթոլիկ եկեղեցու այսօրինակ քաղաքականության հիմնական նպատակն է խոչընդոտել, վիժեցնել ազգային-ազատագրական շարժումը: Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի դեմ տարվող աշխատանքի ղեկավարությունը դրված է հավատո տարածման միաբանության վրա, որը հատուկ խնդիր ունի՝ թույլ զարգացած երկրներում կաթոլիկ եկեղեցու համար պատրաստել ազգային կադրեր: ԱՄՆ-ի իմպերիալիստները հաճույքով են օգտվում այդ միաբանության ծառայություններից և խոշոր գումարներ տրամադրում նրան: Այսպես, եթե 1901 թվականին այդ նպատակին հատկացվել է 77000 դոլար, ապա 1952-ին այն հասավ 6,111,038 դոլարի:

Պատմությունը ցույց է տալիս, սակայն, որ Վատիկանի «քրտնաջան» գործունեությունն Ասիայի և Աֆրիկայի երկրներում չի տալիս սպասված արդյունքը: Շատ ու շատ վայրերից վտարվում են կաթոլիկ օտարազգի կրոնավորները, միսիոներները: Վատիկանը Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների ազ-

գային-ազատագրական պայքարը նույնպես վերագրում է կոմունիստների «խռովություններին»: «Մենք, դժբախտաբար, գիտենք,— ասում էր Պիոս XII պապը իր էնցիկլիկաներից մեկում,— որ Աֆրիկայի շատ վայրերում աթեիստական մատերիալիզմը պառակտում և խառնակչություն է տարածել, մի ժողովրդին և ցեղին ուրիշի դեմ լարել և օգտագործել գոյություն ունեցող դժվարություններն այն նպատակով, որպեսզի գայթակղի մարդկանց հրաշափառ միրաժներով և նրանց սրտերի մեջ ապստամբության սերմեր նետի»:

Պիոս XII-ի հակակոմունիզմի քաղաքականությունը, սակայն, շատ ճակատային էր, ու, մանավանդ Աֆրիկայի երկրներում, ձախողանք ձախողանքի հետևից էր կրում, որովհետև ժողովուրդները պապական եկեղեցու «հակակոմունիզմի» քաղաքականության տակ հեշտությամբ տեսնում էին նույն եկեղեցու շահագրգռությունը գաղութատիրության հարատևման գործում:

***

Ինչպես ցույց տվեցին «Տիեզերական ժողովի» առաջին և երկրորդ նստաշրջանները, վատիկանյան շրջանակներում միասնություն չկա միջազգային քաղաքականության, եկեղեցու ներքին կյանքի մի շարք հարցերի վերաբերյալ: Պետք է արձանագրել, որ այդ նստաշրջանները միմյանցից տարբերվում էին շեշտված կերպով: Տարբերությունը գալիս էր այն բանից, որ առաջին նստաշրջանը տեղի էր ունենում Հովհաննես XXIII պապի կենդանության օրոք, իսկ երկրորդ նստաշրջանի ժամանակ Հռոմի պապն էր արդեն Պողոս VI-ը: Անշուշտ, Վատիկանի քաղաքականության սկզբունքային հարցում, որի էությունն է հակակոմունիզմը, կողմերը չէին վիճում: Վեճն ընթանում էր տակտիկական տեսանկյունից՝ շարունակե՞լ արդյոք քաղաքականությունը նույն քարացած, տրադիցիոն, ճակատային ձևով, որի վերջին արտահայտիչն էր Պիոս XII-ը, թե՞ վերանորոգել տակտիկան, հարմարվել ժամանակի պահանջներին: Այս իմաստով «Տիեզերական ժողովը» բաժանվեց երկու հիմնական մասի, որոնց պայմանականորեն կարելի է անվանել «առաջադիմականներ» և «տրադիցիոնիստներ»: Ժողովի առաջին նստաշրջանում, 1962 թվականին, կշեռքի նժարը տատանվում էր հօգուտ «առաջադիմականների», որոնց ոգեշնչողն էր Հովհաննես XXIII պապը, իսկ երկրորդում, 1963 թվականին, արդեն նկատելի էր «տրադիցիոնիստների» ուժեղ ճնշումը:

Հրավիրելով «Տիեզերական ժողով», Հովհաննես XXIII-ը ձգտում էր փրկել եկեղեցին, նոր պայմաններին հարմարվելու, ժողովրդի վրա եկեղեցու ազդեցությունը պահելու համար նոր միջոցներ ու ձևեր գտնելու ճանապարհով: Այդ ձգտումը դրսևորվեց բոլոր հարցերի քննարկման ժամանակ և, մասնավորապես, պատարագի (արարողության) հարցում:

Մասնակիցների մեծամասնությունը պաշտպանում էր այն տեսակետը, որ անհրաժեշտ է հրաժարվել մեռյալ լատիներենից, փոխել այն, պատարագի ժամանակ օգտագործել ազգային լեզուները, արարողությունները համարեցնել տեղական սովորույթներին ու սովորություններին: Մի քանի քաղվածքներ բերենք բնորոշ ելույթներից:

«Պետք է ընդառաջ գնալ ժամանակին և պատարագը ավելի մատչելի դարձնել հավատացյալների առավել լայն խավերին, որոնք ոչ միայն հանդիսատես պետք է լինեն, այլև պատարագի մասնակիցներ»:



«Լատիներենը... խոչընդոտ է: Պետք է այն փոխել ժողովրդական լեզվով, պատարագը համարեցնել աֆրիկյան, ասիական, լատինա-ամերիկյան և մյուս ժողովուրդների հասկացողությանը»:

«Ոչ բոլոր հոգևորականները գիտեն լատիներեն լեզուն, իսկ ժողովուրդն էլ ավելի քիչ գիտե: Անպատրաստ հոգևորականությունը չի կարող պայքարել մատերիալիզմի դեմ: Մյուս կողմից, առանց լեզվի իմացության մարդիկ չեն կարող մասնակցել պատարագին, իսկ առանց պատարագի մարդիկ չեն կարող դիմագրավել մարքսիզմին և աթեիզմին: Լատիներենը չէ, որ միավորում է մարդկանց: Հաճախ, մարդիկ, եկեղեցում մխիթարություն չգտնելով, գնում են թատրոններ և ռեստորաններ»:

«Մարքսիզմը ավելի ու ավելի կողմնակիցներ է գտնում այն պատճառով, որ քարոզվում է տեղական լեզուներով: Մարքսիզմին դիմակայելու համար մենք պետք է թույլատրենք ազգային լեզուների ներմուծումը և պատարագը մատուցենք ժողովրդին հասկանալի լեզուներով: Եթե ժողովուրդը չհասկանա պատարագը, ապա կգնա մարքսիստների մոտ, այնտեղ ամեն ինչ մատուցվում է ազգային լեզուներով»:

Այսպիսով, ժողովական հայրերից ոչ մեկը չի թաքցնում աստվածաբանական հարցի այդ քաղաքական նպատակամղվածությունը՝ ուժեղացնել կրոնի և եկեղեցու ազդեցությունը բնակչության վրա, ամրացնել կաթոլիկ եկեղեցու դիրքերը Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում, դիմակայել կոմունիզմի գաղափարների տարածմանը:

Պատարագի մասին ժողովը որոշում ընդունեց՝ թույլ տալ եպիսկոպոսների ազգային կոնֆերանսներում՝ տեղերում լուծելու ազգային լեզուն օգտագործելու հարցը: Առայժմ այս որոշումը «Տիեզերական ժողովի» երկու նստաշրջաններում ընդունված ընդամենը երկու որոշումներից մեկն է: Իսկ մյուսը վերաբերում է «սոցիալական հաղորդակցության միջոցներին», որով թույլատրվում է օգտագործել մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կինոն, թատրոնը և այլն: Մնացած որոշումները, որոնք շատ ավելի կարևոր փոփոխությունների առիթ կարող են տալ, հավանաբար կընդունվեն, եթե առհասարակ պետք է ընդունվեն, երրորդ նստաշրջանում, որը կայանալու է 1964 թվականի սեպտեմբերից մինչև դեկտեմբեր:

Կաթոլիկ եկեղեցին կադրերի սուր պակաս է զգում: Հարցը նրանում է, որ տրադիցիոն կուսակրոնությունը մեր օրերում անանցանելի խոչընդոտներ է ստեղծում այդ խնդրի լուծման ճանապարհին: Ուստի, Վատիկանը փորձում է վճռել այն երկու ճանապարհով: Առաջինը՝ ապահովել և բոլոր միջոցներով խրախուսել աշխարհիկ մարդկանց գործոն մասնակցությունը եկեղեցում, տրամադրելով նրանց եկեղեցականների որոշ ֆունկցիաներն ու իրավունքները, և երկրորդ՝ ստեղծել ամուսնացյալ սարկավագների խավ: Վերջինը՝ ամուսնացյալ սարկավագների հարցը, առիթ տվեց սուր վիճաբանությունների: «Տրադիցիոնիստները» ամուսնացյալ սարկավագների մեջ տեսնում են գայթակղություն մյուս եկեղեցականների համար, որը վերջին հաշվով, ըստ նրանց, կարող է հանգեցնել եկեղեցու քայքայման:

«Տիեզերական ժողովի» թե առաջին և թե երկրորդ նստաշրջաններում կատաղի բախումներ եղան Վատիկանի և եպիսկոպոսների հարաբերության հարցի շուրջը: Ներկայումս հռոմեական կուրիան (Վատիկանի կենտրոնական հիմնարկությունները) ամբողջովին գտնվում է իտալական կաթոլիկ գործիչների ձեռ-

քում, որոնց գերակշռող մասը պահպանողականներ են և իրենց գործունեության մեջ սուր կերպով հակադրվում են ուրիշ երկրներում գործող կաթոլիկ եկեղեցականների շահերին: Մամուլի որոշ օրգաններ այդ բախումը անվանեցին «ապըստամբություն Կուրիայի դեմ»: Այս երևույթի մեջ իր արտացոլումն է գտնում տեղական եպիսկոպոսների ձգտումը՝ ավելի անկախ լինել Հռոմից: Կուրիայի փոխարեն, նրանք աշխատում են ստեղծել ազգային եպիսկոպոսական ժողովների ներկայացուցիչներից բաղկացած մի մարմին, մի տեսակ կրոնական սենատ՝ պապի գլխավորությամբ: Կուրիայի կողմնակիցները, սակայն, այսպիսի հարցադրման մեջ տեսնում են պապի իշխանության սահմանափակում, կամ, ավելին՝ պապի գործունեության քննադատություն: Իշխանության համար սկսած պայքարի այս հարցը, հավանաբար, դեռ երկար բախումների առիթ կտա գալիք նստաշրջանում:

Դեռ ժողովին նախապատրաստվելու առաջին շրջանից առանձին կարևորություն էր տրվում էքյումենիկ հարցերին: Ընդգծելով էքյումենիզմի, այսինքն բոլոր քրիստոնեական եկեղեցիների միավորման անհրաժեշտությունը, Վատիկանի նպատակն է համախմբել ուժերը, համատեղ հակադրվել կոմունիզմին: «Պետք է մոռանանք անցյալը,— դիմելով մյուս քրիստոնեական եկեղեցիների դիտորդ-պատվիրակներին, ասում է Պողոս VI-ը,— պետք է նայենք ներկային, մանավանդ՝ ապագային... Մենք գերադասում ենք այժմ մեր ուշադրությունը բևեռել ոչ թե այն բանի վրա, ինչ կատարվել է, այլ այն բանի վրա, ինչ պետք է կատարվի»:

Առաջ քաշելով էքյումենիզմի հարցը, Վատիկանը այստեղ էլ ճիգեր է գործ դնում հարմարվելու ներկա պայմաններին: Եթե նախկինում, Վատիկանի պաշտոնական պրոպագանդան հերետիկոս, աղանդավոր և այլ պիտակներ էր կպցնում մյուս եկեղեցիների ճակատին, սուր, անհաշտ պայքար մղում նրանց դեմ, ապա «Այսօր.. մենք պետք է «բաց լինենք բոլորի համար»,— ասում է կարդինալ Աուգուստին Բեան՝ էքյումենիկ շարժումը գլխավորելու համար Վատիկանում ստեղծված մարմնի ղեկավարը,— փորձենք հասկանալ և ճանաչել, թե ինչն է ճշմարիտ և լավ ուրիշների դիրքորոշման մեջ»:

Նույն կարդինալ Բեան իր «Քրիստոնյաների միասնությունը» գրքում, աներկբա կերպով բացահայտում է այն նպատակները, որոնք հետապնդում է Վատիկանը էքյումենիզմի մեջ: «Քրիստոսի եկեղեցին,— գրում է նա,— կանգնած է աշխարհիկ կյանքի, տեխնիկայի և մատերիալիստական աշխարհի դիմաց: Այն երկրներում, որոնք սովորաբար կոչվում են միսիոներական, վերջին տարիները վկա եղան մի այնպիսի իրադարձության զարգացման, որը վճռական է քրիստոնեության ապագայի համար նույն երկրներում: Քրիստոնեական եկեղեցին այսօր, առավել քան երբեք, կարիք է զգում ուժեղ լինելու և նրա ուժը կախված է նրա միասնությունից»:

Ինչպե՞ս է, սակայն, Վատիկանը հասկանում քրիստոնեական եկեղեցիների միավորումը: «Անջատված եղբայրների» վերադարձը կաթոլիկ եկեղեցու գիրկը, միավորում՝ Հռոմի պապի գլխավորությամբ,— այսպիսին է Վատիկանի հայեցակետը: Հենց էքյումենիկ շարժման հաջողության նպատակով էլ, գլխավորապես, Պողոս VI-ը ս. թ. հունվարի սկզբին ճանապարհորդություն ձեռնարկեց դեպի Պաղեստին, որտեղ հանդիպում ունեցավ տիեզերական պատրիարք Աթենագորասի հետ:

Ի դեպ, Պողոս VI-ին ուղղված ողջույնի մեջ Աթենագորասը խոսում է



պանքրիստոնեական կոնֆերանս հրավիրելու մասին, որի ընթացքում քրիստոնեական եկեղեցիների ներկայացուցիչները կարողանային «սիրո և համաձայնության մեջ քննարկելու այն հարցը, թե ինչպես պաշտպանել եկեղեցին և աշխարհը, որին սպառնում է ընդհանուր թշնամին՝ աթեիզմն ու բռնակալությունը»:

Անշուշտ, Վատիկանը գտնում է, որ միավորումը հեշտ և շուտ չի կարող լինել և իր ժողովը դիտում է որպես էքյումենիկ շարժումը խրախուսող ու հետագա միավորման ազդակներ հիմնող երևույթ:

***

«Տիեզերական ժողովի», ինչպես նաև Վատիկանի քաղաքականության ամենակարևոր պրոբլեմներից մեկը նրա դիրքորոշումն է խաղաղության հարցի նկատմամբ:

Պիոս XII-ին փոխարինած Հովհաննես XXIII պապը, հակառակ նախորդի, ավելի ռեալիստական դիրք բռնեց այդ հարցում: Խաղաղության օգտին նրա ելույթները արտասահմանյան մամուլը, ոչ առանց հիմքի, մեկնաբանում էր որպես երկու հակադիր լագերների խաղաղ գոյակցության ընդունում: «Տիեզերական ժողովի առաջին նստաշրջանի բացման առիթով նրա արտասանած ճառում չկային հակակոմունիստական ուղղակի հարձակումներ և կոմունիզմի դեմ խաչակրաց արշավանքի կոչեր: Մեկնաբանելով այդ ելույթը, իտալական կոմպարտիայի «Ունիտա» թերթը գտնում էր, որ Վատիկանի երկրորդ ժողովում խոսքը գնում էր այն գծից հրաժարվելու մասին, որը մինչև Պիոս XII-ը ներառյալ, վարկաբեկում էր եկեղեցին, այն լիովին նույնացնելով արևմտյան աշխարհի հետ:

Գնահատելով Հովհաննես XXIII-ի նոր քաղաքականությունը, սովետական կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը «Պրավդայի» և «Իզվեստիայի» թղթակիցներին տրված ինտերվյուի մեջ նշեց. «Հովհաննես XXIII-ը պատշաճն է հատուցում առողջ բանականությանը, երբ նա նախազգուշացնում է կառավարություններին համընդհանուր աղետի դեմ և կոչ անում նրանց՝ գիտակցել այն հսկայական պատասխանատվությունը, որը նրանք կրում են պատմության առաջ: Այդպիսի կոչը բարի նշան է»:

Հովհաննես XXIII-ի նոր գիծը ամենադաժան դիմադրության հանդիպեց իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների և կաթոլիկ եկեղեցու պահպանողական գործիչների կողմից: Ֆլորենցիայի «Նացիոնե» թերթի տնօրեն Էնրիկո Մատեյը ուղղակի գրեց. «Ճշմարտությունն ասենք, եթե նույնիսկ բոլորը այնպիսի տեսք են ընդունում, թե իբր չեն նկատում այն: Կաթոլիկ եկեղեցին ժամանակակից աշխարհ դուրս բերելու համար Հովհաննես XXIII-ի նախանշած ուղին ընդհանուր ոչինչ չունի այն ճանապարհի հետ, որը մատնացույց էին անում նրա նախորդները: Կոմունիստները մեծ սխալ չեն գործում, երբ ուրախանում են դրա համար»:

Վատիկանի ժողովի առաջին նստաշրջանը հիմնականում ընթացավ Հովհաննես XXIII-ի ընտրած նոր գծի նշանաբանով: Ամրապնդվեցին «առաջադիմականների» դիրքերը, որոնք ընդունում են պետությունների խաղաղ գոյակցությունը, հանդես են գալիս հօգուտ հրթիռա-միջուկային պատերազմը բացառող ավելի ճկուն միջազգային քաղաքականության: Դա, անշուշտ, դուր չէր գալիս

պահպանողականներին: Պապի մահից հետո Վատիկանի աջ թևի լիդերներից մեկը՝ կարդինալ Սիրին ասաց. «30—40 տարի է պետք, որպեսզի ուղղվեն այն բոլոր չարիքները, որ Հովհաննես XXIII-ը հասցրեց եկեղեցուն»:

Հովհաննես XXIII-ին հաջորդած նոր պապը՝ Պողոս VI-ը, շատ զգուշավոր և հաշվենկատ քաղաքականություն է վարում: Նրա օրոք, ժողովի երկրորդ նստաշրջանում, շարունակվում էր պայքարը երկու թևերի միջև և, թեպետ, ոչ մի կողմը վճռական գերակշռություն չունեցավ, այնուամենայնիվ, մի բան պարզ դարձավ, որ Հովհաննես XXIII-ի ծրագիրը եկեղեցու համար անիրականալի թռիչք էր:

Պաշտոնական կաթոլիկական պրոպագանդան ամեն կերպ գովերգում էր երկրորդ նստաշրջանի արդյունքները: Մինչդեռ աշխարհիկ մամուլը, նույնիսկ բուրժուական, շատ չափավոր էր իր գնահատականների մեջ: «Հետաքրքրության անկում», «Առօրյա քաղաքական հարցերից հեռացում», «Դանդաղկոտություն», «Երկվություն», «Վիճաբանող կարևոր հարցերի մասին որոշումների հետաձգում» և այլն, այսպիսին են արտասահմանյան ձախ մամուլի տված էպիտետները երկրորդ նստաշրջանի արդյունքների անչությամբ:

Միևնույն ժամանակ երկրորդ նստաշրջանի բնութագրական կողմն այն էր, որ այստեղ ավելի ցայտուն հնչեցին Պիոս XII-ի դարաշրջանի ձայները: Վերջին շրջանում նկատելիորեն աշխուժացրել են իրենց գործունեությունը սոցիալիստական երկրների դեմ գործող Վատիկանի քայքայիչ կենտրոնները, առհասարակ ուժեղանում է հակակոմունիստական տենդենցը: Ինքը Պողոս VI-ը, ժամանակ առ ժամանակ, ակնարկներ է անում այն «վերքերի» մասին, որոնք իբր հասցվում են եկեղեցուն սոցիալիստական երկրներում: Իր ելույթներից մեկում նա ասաց. «Պետք է ձգտել ոչնչացնել անաստված մարքսիզմը ոչ միայն տեսականորեն, այլ պրակտիկապես»:

Պատերազմի և խաղաղության արմատական հարցում Պողոս VI պապը, ինչպես երևում է նրա ելույթներից, անհրաժեշտ է գտնում հետևել Հովհաննես XXIII-ի քաղաքականությանը: Նա հրապարակով հավանություն տվեց միջուկային զենքի մասնակի արգելման մասին Մոսկովյան պայմանագրին: Ամեն դեպքում, դեռևս վաղ է վերջնական կարծիք հայտնել Պողոս VI պապի քաղաքականության վերաբերյալ: Պետք է հաշվի առնել այն խոշոր ճնշումը, որ նրա վրա կատարվում է Վատիկանի պահպանողական շրջանների և իմպերիալիստական խոշոր կապիտալի ներկայացուցիչների կողմից, ինչպես նաև դրան հակադիր հոսանքը հենց եկեղեցու և հավատացյալների շրջանում, որի բովանդակությունն է՝ հարմարվել նոր պայմաններին, պաշտպանել խաղաղության գործը: Այն հարցին, թե ո՞ր ուղուն գերակշռություն կտա Պողոս VI-ը, ամենայն հավանականությամբ, կպատասխանի վատիկանյան երկրորդ ժողովի՝ աշնանը սպասվող երրորդ, և վերջին, նստաշրջանը:





Մեր ամսագրի ընթերցող Է. Մալյանը (Լենինական) ցանկանում է իմանալ, թե ինչպիսին է եղել Փարիզյան կոմունայի պետական կառուցվածքն ու օրենսդրությունը:
Ստորև նրա հարցին պատասխանում է ընկ. Վ. ՍԱՀԱԿՅԱՆԸ:

# ՓԱՐԻԶՅԱՆ ԿՈՄՈՒՆԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆ ՈՒ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Իր հիմնադրման հենց սկզբից որոշակի կերպով դրսևորվեց Փարիզյան կոմունայի՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի դասակարգային բնույթը: Կոմունայի 80 անդամներից 64-ը կամ բանվորներ էին, կամ բանվոր դասակարգի ճանաչված ներկայացուցիչներ: Նրա կազմում կային պրոլետար-սոցիալիստներ, ինտերնացիոնալիստներ (I Ինտերնացիոնալի սեկցիայի անդամներ), մանր սեփականատերեր, ծառայողներ և ինտելիգենցիայի ներկայացուցիչներ, որոնց միջև անընդհատ պայքար էր մղվում: Ի վերջո կոմունայի ներսում ձևավորվեցին երկու խմբավորումներ՝ «մեծամասնությունը» և «փոքրամասնությունը», որոնց միջև պայքար էր գնում ռևոլյուցիայի խնդիրների ու Կոմունայի կառավարության տակտիկայի տարբեր ըմբռնման հետևանքով: «Մեծամասնությունը», որը կազմված էր «նոր յակոբինյաններից» ու բլանկիստներից, չէր ընդունում ռևոլյուցիայի պրոլետարական բնույթը և պատշաճ նշանակություն չէր տալիս սոցիալական վերափոխումներին: Սակայն նրանք ավելի պարզ էին հասկանում կենտրոնացված իշխանության հաստատման և ռևոլյուցիայի թշնամիներին վճռականապես ճնշելու անհրաժեշտությունը: «Փոքրամասնությունը», որի մեջ մտնում էին պրուդոնիստներն ու մանրբուրժուական հոսանքների ներկայացուցիչները, մեծ ուշադրություն էին դարձնում սոցիալ-տնտեսական վերափոխումներին, սակայն բավականաչափ վճռական չէին: Նրանց միջև եղած տարաձայնություններն ու բախումները թուլացնում էին Կոմունայի ուժը: Սակայն կոմունան, այնուամենայնիվ, անցկացրեց տնտեսական և սոցիալական մի շարք միջոցառումներ, որոնցից ամենակարևորը Կ. Մարքսը համարել է կոմունայի գոյությունը, նրա աշխատանքը:

Կոմունան հենվում էր բանվոր դասակարգի մասսայական ռևոլյուցիոն կազմակերպությունների, մասնավորապես քաղաքական ակումբների, ինտերնացիոնալի սեկցիաների, արհմիությունների և կոոպերատիվների վրա:

Փարիզյան կոմունան չընթացավ բուրժուական ռևոլյուցիաների ուղիով, որոնք անձեռնմխելի էին թողնում ոստիկանական-բյուրոկրատական պետական հին ապարատը: Նա ձեռնամուխ եղավ բուրժուական պետական մեքենայի ջախջախմանը և այն՝ իշխանության նոր, իսկական դեմոկրատական կազմակերպությամբ փոխարինելուն: Մարտի 29-ի դեկրետով նա վերացրեց մշտական բանակը և այն փոխարինեց ազգային գվարդիայով, ժողովրդի ընդհանուր զինմամբ: Ոստիկանությունը փոխարինվեց ազգային գվարդիայի ռեզերվային գումարտակներով:

Կոմունան ստեղծեց պետական նոր ապարատ: Նրա բարձրագույն օրգանը ընտրովի Փարիզյան կոմունան էր (լրացուցիչ ընտրություններից հետո 106 անդամ ուներ): Կոմունայի ասամբլեան միաժամանակ և՛ օրենսդիր և՛ գործադիր օրգան էր: Պետական բոլոր գործերը կառավարելու համար ստեղծվել էին 10 հանձնաժողովներ՝ գործադիր, ռազմական, արտաքին կապի, արդարադատության, ֆինանսների, ներքին գործերի և հասարակական անվտանգության, աշխատանքի, լուսավորության, պարենամթերքի, հասարակական ծառայությունների (փոստ-հեռագրատուն, հաղորդակցության ճանապարհներ և այլն): Կոմունայի բարձրագույն օրգանը գործադիր հանձնաժողովն էր, որը, սկսած ապրիլի 20-ից, կազմված էր բոլոր ինը հատուկ հանձնաժողովների ղեկավարներից («պատգամավորներից»): Մայիսի 1-ին, ճակատում դրության վատթարացման կապակցությամբ, գործադիր հանձնաժողովը փոխարինվեց հասարակական փրկության կոմիտեով, որի մեջ մտնում էին արտակարգ լիազորություններով օժտված կոմունայի հինգ անդամներ: Փարիզի 20 օկրուգներից յուրաքանչյուրի գլուխ կանգնած էր մունիցիպալ հանձնաժողովը, որն աշխատում էր տվյալ օկրուգից ընտրված կոմունայի անդամների ղեկավարությամբ:

Ապրիլի 2-ի դեկրետով սահմանվեց բոլոր ծառայողների, այդ թվում նաև կոմունայի անդամների, ընտրովիության, պատասխանատվության և փոփոխելիության սկզբունքը: Նույն դեկ-

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵՂԵԳՆԻ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԸ

*Մեկ տոննա ցելյուլոզա ստանալու համար հարկավոր է երկու տոննա փայտանյութ։ Այդ նույն քանակությամբ ցելյուլոզա կարելի է ստանալ մի քիչ ավելի եղեգն ծախսելով։ Եղեգնուտները Վոլգայի դելտայում մոտ քառորդ միլիոն հեկտար են։*

*Աստրախանի ցելյուլոզա ստվարաթղթի կոմբինատը եղեգնի հումքից երկրին տվել է 40 հազար տոննա ստվարաթուղթ։ Եղեգնը դեռևս շատ «գաղտնիքներ» ունի։ Բացի ստվարաթղթից եղեգնից կարելի է ստանալ տպագրական թուղթ, հավանաբար էթիլային սպիրտ և այլն։*

## ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՄԱՇԿԸ ԲԺՇԿՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Անկանոն ծննդի հետևանքով երեխայի մարմնի մի զգալի մաս մնացել էր առանց մաշկածածկույթի։ Մարմնի առանց մաշկածածկի մնացած մասը ծածկել են մատղաշ խոճկորի մաշկով, որը արագ սերտաճել է։ Երեխան ապրել է 109 օր և մահացել է այդ վիրահատման հետ ոչ մի կապ չունեցող պատճառից։ Հետաքրքրական է, որ երեխայի արյունատար անոթները 109 օրվա ընթացքում խոր «ներաճել են» նրա վրա պատվաստված կենդանու մաշկի մեջ։ Նման փորձ մեծահասակների վրա կասկածի տեղիք է տալիս (ԱՄՆ)։*

## ՋԵՐՄՈՑՆԵՐ ԱՌԱՆՑ ՋԵՌՈՒՑՄԱՆ

*Կ. Ա. Տիմիրյազևի անվան գյուղատնտեսական ակադեմիայի բանջարաբուծության փորձակայանում կառուցվել է արտասովոր ջերմոց։ Դրա պատերը թափանցիկ ապակեբլոկներից են։ Վերևում հորիզոնական ծածկոցի վրայով շրջանառում է ջուրը։*

*Կլոր տարին ջրային ֆիլտրով ջերմոցի տաքացման համար կարելի է օգտագործել արդյունաբերական ձեռնարկությունների ցածր ջերմաստիճան ունեցող ջրերը և տաք ստորգետնյա աղբյուրները։ Նոր ջերմոցի կառուցվածքային առանձնահատկությունը բացառում է ամառային շրջանում բույսերի չափից դուրս տաքացումը։ Հորիզոնական ծածկի վրայով շրջանառող տաք ջուրը փոխարինում է ջեռուցման սիստեմին։ Արտասովոր ջերմոցում հավաքվել է բանջարանոցի առաջին բերքը։*

## ԱՆԼՈՒՍԱԹԱՓԱՆՑ ՇՇԵՐՈՒՄ

*Արևմտագերմանական ֆիրմաներից մեկը կաթը շուկա է հանել մուգ դարչնագույն անթափանց շշերով։ Մասնագետների կարծիքով նման եղանակով կաթի վաճառքը նույնիսկ արևի ճառագայթների առատության դեպքում երկար ժամանակ երաշխավորում է նրա թարմությունը։ Զգալի չափով երկարում է A և B վիտամինների ազդեցությունը։ Բացի դրանից հեշտացնում է կաթի լցումից առաջ շշերի մաքրության հսկումը։ Ենթադրվում է, որ շուտով այս եղանակը դուրս կմղի լուսաթափանց շշերով կաթի վաճառքը։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՀՐՇԵՋ

*Լեհաստանում ստեղծվել է արագ բոցնկվող նյութերի պահեստներում և նավերում հրդեհի դեմ պայքարելու նոր սարք։ Սարքը բաղկացած է ծխի էլեկտրոնային դեդեկտորից և ածխածնի օքսիդով լի անոթից։ Այն տեղադրվում է նավապետի կամրջակի վրա կամ նավահանգստի դիսպետչերանոցում և միացվում է հրդեհավտանգ տեղամասերի հետ։ Հենց որ դեդեկտորը «զգում է» ծխի հոտ, տագնապի ազդանշան է տրվում և «էլեկտրոնային քթիկով» միացված հրշեջը սկսում է աշխատել։*